ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 8
ՕԳՈՍՏՈՍ
1958 Թ.

★

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏՆՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXV
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ

ԱՌԱՋՆՈՐԴՈՂ — *Ամրապնդել պարտիական և պետական կարգապահությունը* . . . 3

*Լուրջ ուշադրություն հասարակական սննդին* . . . 12

Ա. ԱԴՈՅԱՆ — *Մեծ գործերի ու պայծառ խոհերի գիրքը* . . . 19

Գ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ — *Թող բարգավաճի մեր Երևանը* . . . 32

Հ. ԱԶԱՏՅԱՆ — *Ռումին ժողովրդի ազգային տոնը* . . . 43

Տ. ՀԱԿՈԲՅԱՆ — *Արաբական ժողովուրդների պայքարը անկախության համար* . . . 53

Վ. ՄԵԴՆԻԿՅԱՆ — *Կործանվածները անմահների դեմ* . . . 64

Վ. ԳԱԲՈՒԶՅԱՆ — *Աշխատանքի ինտենսիվության ուժեղացումը որպես պրոլետարիատի աղքատացման գործոն* . . . 80

Հ. ԲԱԲԼՈՒՄՅԱՆ — *Ավելի մոտ մասսաներին* . . . 90

Գ. ՊԵՏՐՈՍՅԱՆ — *Հաջող սկիզբը* . . . 99

ԿՈՆՍՈՒԼՏԱՑԻԱ

Հ. ԽՏՐՅԱՆ — *Ժողովրդական մասսաների և պարտիաների դերը հասարակական կյանքում* . . . 109

Պատասխան ընթերցողների հարցերին . . . 119

---

Վ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ — *Դարձյալ անփութություն* . . . 122

ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ

Ա. ԳԱՍՊԱՐՅԱՆ — *Պարտիական կյանքը շրջանային թերթերում* . . . 124

СОДЕРЖАНИЕ


Стр.

**Передовая** — Укрепить партийную и государственную дисциплину . . . . . . . 3

Серьезное внимание общественному питанию . . 12

**А. Адоян** — Книга больших дел и ярких дум . . 19

**Г. Арзуманян** — Пусть расцветает наш Ереван . . 32

**Г. Азатян** — Национальный праздник Румынского народа . . . . . . . . . 43

**Т. Акопян** — Борьба арабских народов за независимость . . . . . . . . . 53

**В. Медникян** — Поверженные против бессмертных . 64

**В. Габуджян** — Усиление интенсивности труда как фактор обнищания пролетариата . . . 80

**А. Баблумян** — Еще ближе к массам . . . . 90

**Г. Петросян** — Успешное начало . . . . . 99

**Консультация**

**Г. Хтрян** — Роль народных масс и партий в общественной жизни . . . . . . . . 109

**Ответы на вопросы читателей** . . . . . 119

---

**В. Оганесян** — Опять небрежность . . . . 122

**Обзор печати**

**А. Гаспарян** — Партийная жизнь в районных газетах 124


---

# ԱՄՐԱՊՆԴԵԼ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԵՎ ՊԵՏԱԿԱՆ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅՈՒՆԸ

*Սովետական Միության Կոմունիստական պարտիան իր գործունեության ընթացքում միշտ էլ առաջնահերթ նշանակություն է տվել պարտիական և պետական կարգապահության ամրապնդմանը։ Սովետական ժողովրդի ձեռք բերած հսկայական հաջողությունները մեր երկրի տնտեսական-կուլտուրական շինարարության բնագավառում արդյունք են նաև այն բանի, որ Կոմունիստական պարտիան կադրերին, բոլոր աշխատողներին դաստիարակել և դաստիարակում է պարտիական ու պետական կարգապահությունը խստիվ պահպանելու ոգով։*

*Պարտիան անընդհատ հոգ է տանում, որպեսզի կադրերը զինվեն մարքսլենինյան տեսությամբ, կատարելագործեն իրենց տնտեսական և տեխնիկական գիտելիքները և հմտորեն տիրապետեն տնտեսությունը վարելու բոլշևիկյան մեթոդներին։*

*Կադրերի հետ կազմակերպվող հետևողական աշխատանքի շնորհիվ պարտիան աճեցրել է և աճեցնում է այնպիսի մարդիկ, որոնք իրենց ամբողջ գործունեության մեջ ելնում են պարտիայի ու պետության շահերից, որոնք հասկանում են պարտիայի դիրեկտիվների իմաստն ու նշանակությունը, որոնք պարտիայի դիրեկտիվների և Սովետական պետության որոշումների անթերի կատարումը համարում են պատվի գործ, պարտիայի հանդեպ, ժողովրդի հանդեպ իրենց բարձրագույն պարտքի գործ։*

*Մեր պարտիայի մեջ միավորվող միլիոնավոր կոմունիստների համար չկան ավելի բարձր շահեր, քան պարտիայի, սոցիալիստական պետության շահերը։ Պարտիայի ուժը եղել և մնում է կամքի, գործողությունների միասնությունը, խստագույն կարգապահությունը։ Ելնելով պարտիայի և պետության շահերից՝ մեր կադրերն իրենց ամբողջ էներգիան տալիս են կոմունիստական շինարարության հոյակապ պլանների իրականացման գործին։ Դրա վառ ապացույցն է արդյունաբերական և շինարարական աշխատանքների պլանների կատարումն ու գերակատարումը, գյուղատնտեսության ու կուլտուրայի անկանգ վերելքը։*

*Կոմունիստական պարտիան լիահույս լինելով իր աճեցրած ու դաստիարակած կադրերի վրա, համարձակ կերպով իրականացրեց արդյունաբերության և շինարարության կառավարման վերակառուցումը, որի պայմաններում վերացան գերատեսչական պատնեշները, բարձրացավ տեղական օրգանների դերն ու պատասխանատվությունը տնտեսական շինարարության մեջ, լայն հնարավորություններ ստեղծվեցին՝ հանդես բերելու նախաձեռնություն պարտիայի ու կառավարության առաջադրած խնդիրները միշտ պատվով կատարելու համար։ Այդպիսի վերակառուցումը հնարավորություն տվեց շարժման*

մեջ գտնել նոր ռեզերվներ, զարգացնել մասսաների ստեղծագործական նախաձեռնությունը և տնտեսական շինարարության ղեկավարումը դարձնել ավելի կոնկրետ ու օպերատիվ։

Արդյունաբերության և շինարարության կառավարումը վերակառուցելուց հետո անցել է ընդամենը մեկ տարուց մի քիչ ավելի, բայց այդ ժամանակամիջոցում կատարած աշխատանքը, արդյունաբերության և շինարարության բնագավառում ամենուրեք ձեռք բերված հաջողությունները ցույց են տալիս, որ ղեկավար կադրերի հիմնական մասը տեղերում, այս նոր պայմաններում, ճիշտ է հասկացել իր խնդիրները և ապահովում է հասուն ղեկավարություն տնտեսական շինարարության հարցերին։

Արդյունաբերության և շինարարության կառավարման վերջին արմատական վերակառուցման շնորհիվ խոշոր հաջողություններ են ձեռք բերվել մեր ռեսպուբլիկայում։ Այդ է վկայում վերջերս հրապարակված ռեսպուբլիկայի Վիճակագրական վարչության հաղորդագրությունը (Հայկական ՍՍՌ-ի ժողովրդական տնտեսության զարգացման 1958 թվականի առաջին կիսամյակի պետական պլանի կատարման արդյունքների վերաբերյալ)։ Ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքի այս տարվա առաջին կիսամյակի պլանը կատարվել է 105 տոկոսով։ 1957 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ արդյունաբերական արտադրանքի արտադրությունն ավելացել է 13 տոկոսով, աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 6 տոկոսով։

Կոմունիստական շինարարության զարգացման ներկան և ապագան թելադրում են մեզ երբեք թույլ չտալ պարտիական ու պետական կարգապահության որևէ խախտում, ավելի բարձրացնել պարտիայի յուրաքանչյուր անդամի և սովետական աշխատողի պատասխանատվությունն իրեն հանձնարարված գործում։ Պարտիական, պետական և հասարակական կազմակերպական ամենօրյա աշխատանքով ապահովել պարտիական որոշումների ու պետական օրենքների անթերի կատարումը։ Այս նպատակին պետք է ուղղված լինի մեր ամբողջ գործունեությունը։

Կարգապահության հարցն արծարծելիս ամենից առաջ պետք է չափանիշ ունենալ այն հանգամանքը, թե տվյալ կազմակերպությունը, ձեռնարկությունը կամ աշխատողն ինչպես և ինչ չափով են կատարել պարտիայի որոշումները, պետական պլաններն ու առաջադրանքները։ Պլանների կոմպլեքսային կատարումը՝ սահմանված օրինականությունը պահպանելով հանդերձ, լավագույն ապացույցն է այս կամ այն կազմակերպության, ձեռնարկության մեջ տիրող պատշաճ կարգապահության։ Բայց հարցի էությունն այն է, որ դեռ մի շարք ձեռնարկություններում և կազմակերպություններում թույլ են տրվում սահմանված օրենքների, կարգ ու կանոնի կոպիտ խախտումներ։ Քիչ չէ պարտիական ու կառավարական որոշումներին անտարբեր վերաբերմունք ցուցաբերողների թիվը։ Քիչ չէ այն աշխատողների թիվը, որոնք խոսքով կողմ են պարտիական որոշումներին ու կառավարական առաջադրանքներին, բայց պրակտիկայում խեղաթյուրում ու տապալում են դրանց իրագործումը։

Դրանով կարելի է բացատրել այն փաստը, որ մի շարք ձեռնարկությունների ղեկավարներ չապահովեցին 1958 թվականի առաջին կիսամյակի պետական պլանների կատարումը։ Ռեսպուբլիկայի ԺՏԽ-ի 211 ձեռնարկություններից 25-ը չեն կատարել կիսամյա պլանը և ժողովրդական տնտեսությանը



պակաս են տվել 15452 հազար ռուբլու արդյունաբերական արտադրանք։ 1958 թվականի առաջին կիսամյակում համախառն արտադրանքի և առարկաների կարևորագույն տեսակների պլանը (բնական արտահայտությամբ) չեն կատարել Երևանի Ավտոպահեստամասերի, Էլեկտրատեխնիկական, Կաբելի, Սարքաշինական, Լենինականի Հեծանվի և այլ գործարաններ։ Իսկ մի շարք ձեռնարկություններ կատարելով համախառն արտադրանքի արտադրության պլանը, չեն կատարել բնական արտահայտությամբ առարկաների առանձին կարևորագույն տեսակների արտադրության պլանը, ինչպես, օրինակ, Երևանի Կոմպրեսորների, Մետաղյա առարկաների, Էլեկտրալամպերի, Հախճապակու, Կիրովականի Մեքենաշինական գործարանները, Լենինականի Գուլպայի ֆաբրիկան և այլն։ Վերոհիշյալ ձեռնարկությունների ղեկավարները չապահովելով պետական պլանների կատարումը, դրանով իսկ խախտում են պետական կարգապահությունը։

Դեռևս կան աշխատողներ, որոնք նեղ, գերատեսչական, տեղայնական շահերը վեր են դասում համապետական շահերից և ենթակա ձեռնարկությունների «հոգատարության» անվան տակ պետությունից թաքցնում են իրենց տրամադրության տակ եղած նյութական ռեսուրսները, կամ շռայլում դրանք։ Նրանք ներկայացնում են հումքի և նյութերի վերաբերյալ անստույգ հայտեր, թույլ են տալիս հավելագրումներ, և այդպիսով խախտում են պետական կարգապահությունը։ Պետությանը միլիոնների վնաս հասցնող աղաղակող փաստեր կան Սպիտակի Շաքարի գործարանում։ Բավական է ասել, որ շաքարի կորուստը 1957—1958 թթ. ճակնդեղի վերամշակման սեզոնում օրեկան կազմել է երեք տոննա։ Գործարանի շաքարի ճակնդեղի ընդունման կետերում թույլ են տրված բազմաթիվ ապօրինի հավելագրումներ։ Շաքարի ճակնդեղի մեծ կորուստներ են տեղի ունենում նրա պահպանման և վերամշակման ընթացքում։ Իսկ գործարանի պարտիական կազմակերպությունը և պարտիայի Սպիտակի շրջանային կոմիտեն անտեսել են այդ ամենը, հանդես բերելով թողտվություն, լիբերալ վերաբերմունք են ցուցաբերել օրինազանցների նկատմամբ։

Պետական կարգապահության կոպիտ խախտումներ է թույլ տվել նաև Երևանի աթոռների պատրաստման ֆաբրիկայի դիրեկտոր Պողեևը։ Այստեղ 1958 թվականի մարտ ամսվա արտադրական պլանը կատարվել է ընդամենը 37,9 տոկոսով, մինչդեռ հաշվետվություններում ներկայացվել է 53,3 տոկոս, որի հետևանքով էլ հավելագրվել է 101 000 ռուբլի։ Այդպիսի հավելագրումների փաստեր կան նաև Արաբկիրի Կահույքի ֆաբրիկայում (դիրեկտոր Սարվազյան)։ Նյութերի շռայլման, հավելագրումների, աչքակապության փաստեր կան նաև այլ ձեռնարկություններում։

Պարտիային և կառավարությանը որևէ ձևով խաբելու ամեն դեպք, ճշմարտությունը թաքցնելու, կամ այն խեղաթյուրելու ամեն մի փորձ չի կարելի դիտել այլ կերպ, քան որպես ծանրագույն հանցագործություն պարտիայի հանդեպ։

Մեր երկրում տնտեսվարի կոչումը բարձր կոչում է։ Լինել տնտեսական ղեկավար, այդ նշանակում է արժանանալ բարձր պատվի, արժանանալ պարտիայի, ժողովրդի, աշխատավորության մեծ վստահությանը։ Իսկ յուրաքանչյուր տնտեսվար, իր բոլոր ջանքերը պետք է գործադրի արդարացնելու համար այդ վստահությունը։ Պարտիական կազմակերպությունները պետք է

անողոք լինեն և պատասխանատվության ենթարկեն այն ղեկավարներին, որոնք չարաշահում են այդ բարձր վստահությունը, ճշմարտացի և ազնիվ չեն պարտիայի և պետության նկատմամբ։ Պետք է հասնել նրան, որ բոլոր կոմունիստներն առանց որևէ բացառության պատվով կատարեն պարտիայի Կանոնադրության պահանջը այդ մասին։ Պարտիայի Կանոնադրության մեջ ասված է. «Պարտիայի հանդեպ լինել ճշմարտացի և ազնիվ, թույլ չտալ, որ թաքցվի և խեղաթյուրվի ճշմարտությունը։ Պարտիայի հանդեպ կոմունիստի անճշմարտացիությունը և պարտիային խաբելը ծանրագույն չարիք է և անհամատեղելի է պարտիայի շարքերում գտնվելու հետ»։

Պարտիական-պետական կարգապահության ամենակոպիտ խախտում է այն, երբ առանձին ձեռնարկությունների ղեկավարներ հոգ չեն տանում, որպեսզի ժամանակին կատարվեն ձեռարկությանը տրված պատվերները։

Արդյունաբերության և շինարարության կառավարման նոր կարգը հատկապես այդ հարցում է՛լ ավելի է բարձրացնում մեր աշխատողների պատասխանատվությունը, որոնք պարտավոր են ձեռնարկությունների համաչափ և բարձր աշխատանքն ապահովելու հետ միասին ժամանակին կատարել մյուս ձեռնարկությունների պատվերները։

Մեր սոցիալիստական տնտեսությունը միասնական տնտեսություն է, մի ամբողջություն. անկախ նրա տերիտորիալ տեղաբաշխումից յուրաքանչյուր ձեռնարկություն սերտորեն կապված է մյուսի հետ՝ միասնական պետական պլանով, ամուր տնտեսական կապերով, փոխադարձ կոոպերացված մատակարարումներով։ Մի ձեռնարկության աշխատանքի խափանումը անխուսափելիորեն անդրադառնում է մի շարք այլ ձեռնարկությունների աշխատանքի վրա։ Յուրաքանչյուր ձեռնարկություն ո՛չ միայն սպառող է, այլև միաժամանակ մյուս ձեռնարկություններին մատակարարող. եթե նա այս կամ այն ձեռնարկությունից չի ստանում պլանով նախատեսված հումքը, նյութը, սարքավորումները և այլն, ապա ինքն էլ չի կարող տալ մյուսներին։ Այստեղից պարզ է դառնում, թե ինչպիսի խառնաշփոթություն կարող է ստեղծվել ժողովրդական տնտեսության մեջ, եթե մեկ կամ մի խումբ ձեռնարկություններ թերակատարեն իրենց պլանները և ժամանակին չկատարեն պլանով նախատեսված կոոպերացված մատակարարումները։ Պետք է ասել, որ դեռ մեր ոչ բոլոր ձեռարկությունների և գերատեսչությունների ղեկավարներն են պատկերացնում այս հարցի լրջությունը, անպատասխանատու վերաբերմունք են հանդես բերում այդ գործում։ Հայաստանի Կոմունիստական պարտիայի Կենտկոմի Հունիսյան պլենումում բերվեցին մի շարք փաստեր այն մասին, թե ինչպես առանձին աշխատողներ, օգտվելով հսկողության և պահանջկոտության բացակայությունից, հանդես են բերում տեղայնական տենդենցներ, անթույլատրելի կերպով չեն կատարում կոոպերացված մատակարարումների պլանը և դրանով իսկ, ըստ էության, կազմալուծում են մյուս ձեռնարկությունների աշխատանքը, խոշոր վնասներ հասցնելով պետությանը։

Կարելի է բերել մի շարք փաստեր այն մասին, թե ինչպես Հայկական ՍՍՌ Ժողտնտխորհին ենթակա մի քանի ձեռնարկություններ սիստեմատիկաբար թերակատարում են այլ տնտեսական շրջանների ժողտնտխորհներին ենթակա արդյունաբերական ձեռնարկություններին կոոպերացված կարգով նյութեր մատակարարելու պլանը։ Այսպես, օրինակ, Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանի դիրեկցիան (դիրեկտոր Մինասյան), խախտելով իր իսկ



կնքած պայմանագիրը, այս տարվա առաջին եռամսյակի ֆոնդի հաշվին մինչև մայիսը Սախալինի ԺՏԽ-ին չի ուղարկել ոչ մի տրանսֆորմատոր։

Երևանի Կաշվի գործարանը 1958 թվականի առաջին եռամսյակում փափուկ կաշվի մշակման պլանը կատարել է 103 տոկոսով, մինչդեռ ձեռնարկությունների կաշվի մատակարարման պլանը թերակատարել է։ Նույն գործարանը մեր ռեսպուբլիկայի ներսում գտնվող ձեռնարկություններին մատակարարման պլանը կատարել է 102,8 տոկոսով, ռեսպուբլիկայից դուրս գտնըվող ձեռնարկություններին փափուկ կաշի առաքելու պլանները թերակատարել է։ Նույն վիճակն է Լենինականի Տեքստիլ կոմբինատում։

Լենինականի Տեքստիլ կոմբինատը բամբակյա գործվածքեղենի մատակարարման 1958 թվականի առաջին եռամսյակի պլանը կատարել է 100,1 տոկոսով, մինչդեռ Ուկրաինական ՍՍՌ-ի ձեռնարկություններին գործվածքներ ուղարկելու պլանը չի կատարված։ Երևանի Մահուդի ֆաբրիկան Բաքվի Կարի ֆաբրիկային 1958 թվականի առաջին եռամսյակին պետք է ուղարկեր մեկ միլիոն ռուբլու արժողությամբ գործվածքներ, բայց ուղարկել է 484 հազար ռուբլու։ Այդպես են վարվում նաև էլեկտրատեխնիկական և մի շարք այլ ձեռնարկությունների ղեկավարները։ Անհրաժեշտ է վերջ տալ պետական կարգապահության այդ կարգի խախտումներին, ամենայն խստությամբ պատասխանատվության ենթարկել այն ղեկավարներին և պաշտոնատար անձանց, որոնք ժամանակին չեն կատարում կոոպերացված մատակարարման պլանները։

Պետական կարգապահության խախտումների բազմաթիվ փաստեր են նկատվել նաև շինարարության մեջ։ Այստեղ չի ապահովվում ժողովրդական տնտեսության զարգացման պլանով նախատեսված կապիտալ ներդրումների պլանների կատարումը, ձգձգվում է բնակելի շենքերի, արդյունաբերական, կոմունալ-կենցաղային օբյեկտները շահագործման հանձնելը։ 1958 թվականի առաջին կիսամյակի համար սահմանված կապիտալ ներդրումների պետական պլանը ռեսպուբլիկայում, ամբողջությամբ վերցրած, կատարվել է 92 տոկոսով, այդ թվում շինարարական-մոնտաժային աշխատանքների պլանը՝ 96 տոկոսով։ Ինչպես 1957 թվականին, այնպես էլ այս տարի խիստ անբավարար են կատարված արդյունաբերական օբյեկտների, բնակելի շենքերի շահագործման հանձնելու պլանները, իսկ դա նշանակում է, որ պետական միջոցները ծախսվում են ոչ արդյունավետ, որը բացասաբար է անդրադառնում պլանների կատարման վրա, հնարավորություն չի ստեղծում ժամանակին տեղադրելու ձեռք բերված սարքավորումները և այլն։

Պետական կարգապահության կոպիտ խախտում է այն, երբ առանձին տնտեսական գերատեսչությունների, մինիստրությունների ու ռեսպուբլիկական այլ կազմակերպությունների աշխատողները պետական պլանով կապիտալ ներդրումների համար նախատեսված միջոցները ինքնագլուխ կերպով ծախսում են ոչ նպատակին։ Իսկ երբեմն էլ հաստատված պետական պլանները տարվա ընթացքում նրանք վերափոխում են, սկսում են պլանով չնախատեսված երկրորդական օբյեկտների շինարարություն։ Իրենց այդ ապօրինի գործողություններով նրանք թույլ են տալիս պետական միջոցների փոշիացում, մեծացնում են անավարտ շինարարության ծավալը։

Ռեսպուբլիկայի Շինարարության մինիստրության ղեկավարները (մինիստր ընկ. Սարուխանյան, մինիստրի առաջին տեղակալ ընկ. Շահնազարյան), օգտվելով անհրաժեշտ հսկողության և պահանջկոտության բացակա-

յությունից, քանիցս խախտել են պետական կարգապահությունը։ Շինարարության մինիստրության սիստեմում թույլ է տրված աշխատավարձի ֆոնդի մեծ գերածախս։ Միայն անցյալ տարի մինիստրը և նրա տեղակալները արել են 46 կարգադրություն աշխատավարձի ֆոնդի ճեղքվածքը փակելու համար։ Միայն աշխատանքի արտադրողականության պլանը չկատարելու պատճառով աշխատավարձի ֆոնդի գերածախսը կազմել է 7,5 միլիոն ռուբլի։ Մինիստրության ղեկավարները միջոցներ ձեռք չեն առել վերոհիշյալ երևույթի բացասական պատճառները լիկվիդացնելու համար։

Մինիստրության ղեկավարները թույլ են տվել պարգևատրման գումարների սխալ վճարումներ։ Շնորհիվ այն բանի, որ խախտվել է պարգևատրման համար սահմանված կարգը, 300 000 ռուբլու սահմաններում պարգևատրման գումարներ են ստացել այնպիսի աշխատողներ, որոնք իրավունք չունեին ստանալու։ Բազմաթիվ շինարարական կազմակերպություններում նկատվում են կատարված աշխատանքների հավելագրումներ, կատարված աշխատանքների ծավալը արհեստականորեն մեծացնելու բազմաթիվ փաստեր։ Հարյուր հազարներ են ծախսված անորակ աշխատանքները ուղղելու վրա։

Շինարարության մինիստրության սիստեմում մեծ չափերի են հասնում շինանյութերի գերածախսը, հափշտակումները. դրան նպաստում է նյութերի հաշվառման անբավարար դրվածքը։ Հաշվետվությունների ժամանակ հայտնաբերված պակասորդները վերագրվում են օբյեկտներին, որով թանկանում է շինարարության արժեքը։ Միայն 10-րդ շինտրեստը 1957 թվականին և 1958 թվականի առաջին եռամսյակում թույլ է տվել նյութերի 894 հազ. ռուբլու գերածախս։ Դեռ 1957 թվականի նոյեմբերին մինիստրության կոլեգիան ընդունել է որոշում, որ շինարարական օբյեկտներում ստեղծվեն լիմիտային քարտեր շինանյութերի բացթողման համար, բայց որովհետև մինիստրությունը չի հետևել այդ որոշման կատարմանը, այն չի կիրառված բոլոր շինարարական կազմակերպություններում։

Պետական կարգապահության խախտման փաստեր կան նաև Հայկական ՍՍՌ Ժողտնտխորհի սիստեմում։ 1958 թվականին նախատեսված էր ունենալ 700 հաստիքային միավոր, բայց փաստորեն պահվում է 726 հաստիքային միավոր՝ նշանակալի գերածախսով։ Այս տարի ռեսպուբլիկայի տարբեր կազմակերպություններում արձանագրված է հաստիքների ապօրինի ավելացման 220 դեպք, իսկ 254 դեպքում բարձրացված են աշխատավարձերը, որից միայն 40 դեպք Կուլտուրայի մինիստրության սիստեմում։

Դժբախտաբար մեզ մոտ որոշ ընկերներ թույլ են տալիս այնպիսի բարքեր, որոնք միայն զայրույթ կարող են շարժել։ Ինչ խոսք կարող է լինել պարտիական ու պետական կարգապահության վերաբերյալ, երբ Աշխատավորների դեպուտատների Երևանի քաղաքային Սովետի գործկոմը և Հայհիդրոէներգոշինի դիրեկցիան երկու տարի ձգձգեցին Հայկ. ՍՍՌ Մինիստրների Սովետի որոշումը՝ Երգորտոպի պահեստների և Հայհիդրոէներգոշինի տերիտորիան Կոնսերվի գործարանին տրամադրելու վերաբերյալ։

Մինչև այսօր էլ պետական կարգապահության խախտման լուրջ դեպքեր կան Առևտրի մինիստրության ցանցում։ Այդ է ապացուցում թեկուզ այն, որ մասսայական սպառման համար հատկացված մանրածախ ապրանքների ֆոնդերը իրացվում են ոչ թե շուկայում, այլ մեծածախ ապրանքների իրացման կարգով՝ փոխանցման ձևով։



Պետական կարգապահության խախտման մի շարք փաստեր են նկատվել նաև ռեսպուբլիկայի այլ կազմակերպություններում։ Պարտիական օրգանների և կազմակերպությունների խնդիրն է՝ ձեռք առնել բոլոր միջոցները նկատվող թերությունները չկրկնելու, բոլոր աշխատողների պատասխանատվությունը բարձրացնելու համար։ Պարտիական կազմակերպությունները չպետք է անտարբեր լինեն այն գործի նկատմամբ, երբ խոսքը վերաբերում է պետության շահերին։ Այն պարտիական կազմակերպությունները, որոնք թողտվություն են հանդես բերում պետական կարգապահությունը խախտողների նկատմամբ, մոռանում են իրենց պարտիական պարտքի մասին, վնաս են բերում պարտիայի գործին։

ՍՄԿՊ Կանոնադրությունը պահանջում է, որ կոմունիստը պետք է լինի պարտիական ու պետական որոշումների կատարման ակտիվ մարտիկը։ Այն կոմունիստը, որն իր գործնական աշխատանքով չի ապահովում պարտիական ու պետական որոշումների կատարումը, նա թույլ է տալիս պարտիական կարգապահության կոպիտ խախտում։ Մեզ մոտ դեռ կան ոչ քիչ կոմունիստներ, որոնք կարծում են, թե պարտիայի որոշումները, սովետական օրենքները իրենց համար պարտադիր չեն, ենթադրում են, որ իրենց ամեն ինչ թույլատրված է կատարելու։ Այդ կարգի կոմունիստները և աշխատողները հաշվի չառնելով պարտիայի ցուցումները, կառավարության որոշումները, իրենց «կարգերը», իրենց «կարգապահությունն» են սահմանում նրանց վստահված ձեռնարկություններում, գործում են ինքնագլուխ կերպով, աշխատանքում թույլ են տալիս կոպիտ խախտումներ և խեղաթյուրումներ։ Բազմաթիվ օրինակներ կարելի է բերել, թե ինչպես ռեսպուբլիկայի մի շարք շրջաններում առանձին կոլտնտեսությունների նախագահներ հօգուտ իրենց անձնական շահերի խախտում են գյուղատնտեսական արտելի Կանոնադրությունը, զարտուղի ճանապարհներով կոլտնտեսության եկամուտներից անարդարացի բաժին են ստանում։ Այդպիսի ղեկավարները փոխանակ գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ընդլայնելու ճանապարհով բարձրացնեն կոլտնտեսությունների եկամուտները, բռնում են արտադրված գյուղատնտեսական մթերքների սպեկուլյացիայի ճանապարհը, որի պատճառով սահմանված ժամկետում և պահանջված քանակությամբ պետությանը չեն վաճառում գյուղատնտեսական մթերքներ։ Այդպիսի փաստեր են նկատվել Շահումյանի, Էջմիածնի, Իջևանի, Արտաշատի, Մարտունու և մի շարք կոլտնտեսությունների նախագահների կողմից։ Վերոհիշյալ շրջանների պարտիական կոմիտեները շատ հաճախ լռությամբ են անցել այդ փաստերի կողքով և կարգի չեն հրավիրել առանձին կոմունիստ ղեկավարներին, որոնք խախտել են հանրային տնտեսության շահերը, պետության շահերը և չեն ապահովել այդ մասին պարտիայի և կառավարության հայտնի որոշումների կատարումը։ Մի շարք կոլտնտեսությունների նախագահներ հոգ չեն տանում ընդարձակելու կոլտնտեսության անբաժանելի ֆոնդերը, ընդլայնելու կոլտնտեսության արտադրական, կուլտուր-կենցաղային բազան։

Այդպիսի կոմունիստները ձևականորեն են ընդունում պարտիայի ու կառավարության որոշումները, հանդես չեն բերում ակտիվություն և հաստատակամություն կյանքում դրանք գործի վերածելու համար։ Պարտիայի անդամի համար դեռ բավական չէ համաձայնել պարտիայի և կառավարության

որոշումների հետ. նա ակտիվ կերպով պետք է պայքարի այդ որոշումները կատարելու՛ համար։

Պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ հետևողական և համատարած աշխատանք տանել բոլոր կոմունիստներին, բոլոր աշխատողներին դաստիարակելու պարտիայի և կառավարության որոշումների անթերի և ժամանակին կատարելու բարձր պատասխանատվության ոգով։ Յուրաքանչյուր կոմունիստի, պարտիական կազմակերպության, պարտիական շրջանային և քաղաքային կոմիտեի գործունեությունը պետք է չափվի աշխատանքի կոնկրետ արդյունքներով։ Նրանց լավ աշխատանքի չափանիշը պարտիայի ու կառավարության որոշումների անթերի կատարումն է։

Կյանքը ցույց է տալիս, որ պարտիական ու պետական կարգապահության խախտման փաստեր ավելի շատ կան այնտեղ, որտեղ պարտիական կազմակերպությունները լրիվ կերպով չեն իրականացնում իրենց վերահսկողության իրավունքները՝ արտադրական, շինարարական, տնտեսական կազմակերպությունների նկատմամբ։ Նրանք չեն խորանում արտադրության էկոնոմիկայի մեջ, կոմունիստներին չեն դաստիարակում կարգապահությունն անխախտ պահպանելու ոգով, ժամանակին չեն բացահայտում այս կամ այն ղեկավար աշխատողի թերությունները, հաշտվում են թույլ տրված սխալների հետ։

Շատ հաճախ պարտիական կոմիտեները այս կամ այն ընկերոջը առաջ քաշելով ղեկավար աշխատանքի, հետագայում մոռանում են նրան, չեն օգնում աշխատանքում կատարելագործվելու, ժամանակին չեն ուղղում նկատված սխալները, նրան չեն դաստիարակում իր և ենթակաների նկատմամբ պահանջկոտություն հանդես բերելու և հանձնարարված գործի նկատմամբ բարձր պատասխանատվության ոգով։ Դաստիարակել բարձր պատասխանատվության ոգով, այդ դեռ չի նշանակում, որ ամենափոքր սխալի կամ զանցանքի համար պետք է պատժել աշխատողին, նրան տույժի ենթարկել ամեն մի առիթով։

Կադրերի ճիշտ դաստիարակության, պարտիական ու պետական կարգապահության ամրապնդման, աշխատանքում նկատվող թերությունների վերացման փորձված մեթոդը հանդիսանում է ինքնաքննադատությունը և ներքևից եկող քննադատությունը։ Քննադատությունը և ինքնաքննադատությունը լավագույն միջոցներ են՝ բացահայտելու և կանխելու պարտիական և պետական կարգապահության խախտման դեպքերը։ Այդ ձևով ավելի է բարձրացվում պարտիական կազմակերպությունների մարտունակությունը, ղեկավար կադրերն ավելի ուշադիր են դառնում մասսաների պահանջների նկատմամբ, ամրապնդվում է գիտակցական կարգապահությունը։ Ուստի պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ ամեն կերպ ապահովել ինքնաքննադատության և ներքևից եկող քննադատության ծավալումը։

Յուրաքանչյուր ղեկավարի ձեռք առած միջոցառումները, որոնք ուղղված են պետական պլանները և պարտիայի որոշումները կատարելուն, պարտիական և պետական կարգապահության ամրապնդմանը, մեր երկրում արժանանում են պարտիական կազմակերպությունների, կառավարության, աշխատավորների կոլեկտիվների և ամբողջ ժողովրդի ջերմ հավանությանը։ Առաջիկայում էլ մեր պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ բոլոր միջոցներով խրախուսել և աջակցել մեր աշխատողներին նրանց ստեղծագործ և բեղմնավոր աշխատանքում։ Ղեկավար ընկերոջ հեղինակությունը բարձր կլինի այն դեպքում, երբ նա անշեղորեն կկատարի պետական օրենքներն ու պարտիայի առաջադրանքը։



Կոմունիստի համար, մեր բոլոր աշխատավորների համար չկա ավելի բարձր պատիվ, քան պարտիայի, պետության շահերի համար անձնազոհությամբ և նվիրվածությամբ աշխատելը։ Պարտիական կազմակերպությունների կողմից տարվող պարտիական-կազմակերպական, պարտիական-քաղաքական աշխատանքներն է՛լ ավելի բարելավելու միջոցով մենք մեր բոլոր կադրերին պետք է դաստիարակենք պարտիական, պետական կարգապահությունը բարձր պահելու, գործի նկատմամբ կոմունիստական վերաբերմունք ցույց տալու ոգով։

---

# ԼՈՒՐՋ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՍՆՆԴԻՆ

*Կոմունիստական պարտիայի ու Սովետական կառավարության բոլոր միջոցառումների մեջ արժանի, կենտրոնական տեղ են գրավում ժողովուրդը, սովետական մարդը, նրա բարեկեցության բարելավումը։ Սովետական մարդկանց նյութական-կենցաղային սպասարկման կարևոր տեղամասը հասարակական սննդի գործն է, որը կենցաղի վերակառուցման, մարդկանց առողջության և աշխատունակության բարձրացման լծակն է հանդիսանում։ «Հասարակական սննդի ձեռնարկությունների աշխատանքները բարելավելու մասին» ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1956 թվականի մարտի մեկի որոշման կենսագործման համար ՀԿՊ Կենտրոնական Կոմիտեի և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի ընդունած միջոցառումներից հետո, վերոհիշյալ օբյեկտների աշխատանքները ռեսպուբլիկայում նկատելիորեն բարելավվել են։*

*Վերջին երկու տարիներում ռեսպուբլիկայի քաղաքներում, արդյունաբերական ձեռնարկություններում, բարձրագույն ուսումնական հաստատություններում և դպրոցներում կառուցվել ու շահագործման են հանձնվել ավելի քան 40 ճաշարան, 66 բուֆետ, 24 խորտկարան։ Ավարտվում է 24 օբյեկտի շինարարությունը։ Միայն ռեսպուբլիկայի մայրաքաղաք Երևանում այդ ժամանակաընթացքում կահավորվել, նոր տեխնիկայով հագեցվել և շահագործման են հանձնվել 11 ճաշարան, 5 ավտոմատ խորտկարան, շատ բուֆետներ։ Վերջերս գործել սկսեցին Երևանի Պոլիվինիլացետատ գործարանի և Աթարբեկյան գծփի շինարարության կուլտուրական ձևով կահավորված մեծ ճաշարանները, Մասիս, Սանահին երկաթուղային կայարանների ճաշարանները և այլն։*

*Բանվորներն ու ծառայողներն ընդմիջումների ժամանակ կարող են այդ նոր ճաշարաններում համեղ ու սննդարար ճաշեր ստանալ, կուլտուրական պայմաններում լավ ճաշել։*

*Սակայն, ինչպես վերջերս նշեց ՀԿՊ Կենտկոմի բյուրոն, հասարակական սննդի ցանցի ընդարձակումը դեռևս ետ է մնում բնակչության աճող պահանջմունքներից։ Մի շարք ձեռնարկություններում և ուսումնական հաստատություններում գոյություն ունեցող ճաշարանները, բուֆետները չեն ապահովում բոլոր բանվորների, ծառայողների, սովորողների կանոնավոր սպասարկումը։ Օրինակ, այդպիսի վիճակում են՝ Լենինականի Խուլ և համրերի կոմբինատը, Երևանի Ավտոդողերի գործարանը, որտեղ աշխատում են 2000-ից ավելի բանվոր ու ծառայող, սակայն գործարանային ճաշարանն ունի միայն 70 տեղ։ Իսկ Արաբկիրի կահույքի ֆաբրիկայի ճաշարանը կարող է բավարարել աշխատողների միայն 20 տոկոսին։*

*Պարտիական կազմակերպությունների պարտականությունն է՝ անշեղորեն կիրառել ՀԿՊ Կենտկոմի վերջին որոշումը հասարակական սննդի բարելավման և նրա ցանցի արմատական ընդարձակման մասին։ Հասարակական*



*սննդի նոր կառուցվող բազմաթիվ օբյեկտների շինարարության պլանների կատարումը պարտիական ու պետական օրգանների կարևորագույն պարտականությունն է։*

*Փաստերը ցույց են տալիս, որ այնտեղ, որտեղ ղեկավարը պատասխանատվություն է զգում աշխատավորության կենցաղի նկատմամբ, որտեղ նրան այդ գործում ակտիվորեն օգնում են պարտիական ու արհմիութենական կազմակերպությունները, այնտեղ ակնառու են լուրջ հաջողությունները։ Մարդկանց նկատմամբ լուրջ հոգատարություն է ցուցաբերում Ալյումինի գործարանի դիրեկտոր ընկ. Հ. Դովլաթյանը։ Նա իր հարազատ գործն է համարում ոչ միայն արտադրական պլանների կատարումը, այլև մարդկանց նկատմամբ ցուցաբերվող հոգատարությունը, մարդիկ, որոնք վճռում են պլանների կատարման հաջողությունը։*

*Ալյումինի գործարանի ճաշարանն օրինակելի է։ Այստեղ մաքրություն է տիրում, բարձր է սպասարկման կուլտուրան։ Գեղեցիկ կահավորված ճաշարահն ունի 84 տեղ։ Գործարանի կոլեկտիվը ճաշում է հերթականությամբ։ Ճաշարանում հերթեր ու կուտակումներ չեն լինում։ Յուրաքանչյուրը կարող է իր ճաշակին համապատասխան ուտելիքի, կերակրի ընտրություն կատարել։ Այստեղ ճաշացանկը շատ բազմազան է։ Խոհանոցն ունի իր ցեխերը, որոնք պատրաստում են տարբեր տեսակի համեղ ճաշեր և հրուշակեղեն։ Այն լիովին ապահովված է սառեցնող և այլ տեխնոլոգիական սարքավորումներով, աշխատանքի և մթերքների մշակման պրոցեսները մեքենայացված են։ Այստեղ լավ է դրված հասարակական հսկողությունը։ Հսկող աչքից չեն վրիպում հնացած, ոչ պիտանի մթերքները, սպասարկման ցածր կուլտուրան և այլն։ Գործարանի պարտիական կազմակերպությունը (քարտուղար՝ Կ. Հունանյան) ակտիվորեն արձագանքում է հասարակական հսկիչների ահազանգներին, պարբերաբար քննության է առնում ճաշարանի աշխատանքները բարելավելու հարցերը, օգնում է գործարանի դիրեկտոր Հ. Դովլաթյանին՝ վերացնելու հասարակական սննդի կազմակերպման գործում նկատված թերությունները։ Վերջին ժամանակներս գործարանի երկու ցեխերում կազմակերպված են բուֆետներ, որոնք բաց են թողնում տաք նախաճաշ։ Դա մեծ օգնություն է այն բանվորներին, որոնք այս կամ այն պատճառով հնարավորություն չունեն ճաշելու ճաշարանում։*

*Հասարակական սննդի գործը լավ վիճակում է նաև Երևանի էլեկտրալամպերի գործարանի և մի շարք այլ ձեռնարկությունների ճաշարաններում, որոնք ունեն նստելու համար բավարար թվով տեղեր, ապահովված են ճաշատեսակներով։ Այստեղ նույնպես լավ է կազմակերպված սպասարկումը։ Այս գործին մեծ ծառայություն են մատուցել պարտիական կազմակերպությունները, որոնք օգնում են տնտեսական ղեկավարներին ճիշտ կազմակերպելու աշխատավորության կենցաղը։*

*Ի տարբերություն անցյալ տարիների, այս տարի կիրառվում են հասարակական սննդի կազմակերպման նոր ձևեր։ Ինքնասպասարկում, տան համար ճաշեր բաց թողնել, կիսաֆաբրիկատների վաճառք, սեփական խոհարարական արտադրության արտադրանքի և հրուշակեղենի բացթողում. ահա այն ձևերը, որոնք հաստատուն կերպով մտել են մեր սպառողի կենցաղում։*

*Բայց, ցավոք սրտի, պետք է նշել, որ ոչ բոլոր տեղերում են տնտեսական ղեկավարները, ինչպես նաև պարտիական ու արհմիութենական կազմա-*

կերպությունները, հոգատարություն ցուցաբերում հասարակական սննդի ասպարեզում առաջավոր ձևերի կիրառման համար անհրաժեշտ պայմաններ ստեղծելու մասին։ Երևանի Ավտոդողերի գործարանի ճաշարանում (գործարանի դիրեկտոր՝ Ս. Բոյախչև, պարտկազմակերպության քարտուղար՝ Օ. Կալաչյան) միշտ մարդկանց կուտակումներ են նկատվում, այդտեղ տիրում է հակասանիտարական դրություն, չկան պահեստի համար շենքեր, ինչպես նաև սառեցման սարքավորումներ, փոքր է սպասարկման շրջանակը, խոհանոցը չունի բազմատեսակ կերակուրներ պատրաստելու պրակտիկա։

Արաբկիրի կահույքի ֆաբրիկայում աշխատում են 500-ից ավելի բանվոր ու ծառայող։ Սակայն ճաշարանը ունի միայն քսան տեղ, խոհանոցը բարեկարգված չէ։ Պարզ է, որ նա այս վիճակում չի կարող բավարարել կոլեկտիվի պահանջները։ Սակայն զարմանալի է, որ այս վիճակը հանդուրժում են ֆաբրիկայի ղեկավարները։

Նույնանման դրություն՝ հակասանիտարական վիճակ, սպասարկման նեղ շրջանակ, ճաշերի միանմանություն ու ցածր որակ գոյություն ունի նաև Մյասնիկյանի անվան Կահույքի, Կոշիկի № 3 ֆաբրիկաներում և այլ ձեռնարկություններում։ Լենինականի Գործվածքեղենի ֆաբրիկայում ինքնասպասարկումը լիովին չի կիրառվում ճաշերի բաշխման համար անհրաժեշտ հարմարություններ չունենալու պատճառով։ Բանվորները ճաշ ստանալու համար հարկադրված են լինում երկար սպասել։ Կիրովականի Քիմիական կոմբինատի, Կորդի ֆաբրիկայի խոհանոցները նույնպես հակասանիտարական վիճակում են՝ տաք, իսկ երբեմն էլ սառը ջուր չլինելու պատճառով։

Հասարակական սննդի գործը դեռևս վատ վիճակում է նաև մի շարք ուսումնական հաստատություններում և դպրոցներում։ Բժշկական ինստիտուտի նոր ճաշարանը մինչև օրս անհրաժեշտ չափով չի սարքավորված։ Հայկական մանկավարժական ինստիտուտի ճաշարանի արտադրական ցեխերը կեղտի մեջ կորած են։ Մայրաքաղաքի մի շարք դպրոցներում աշակերտները տաք նախաճաշ չեն ստանում բուֆետների համար շենքեր և համապատասխան էլեկտրասարքավորում չունենալու պատճառով։ Միանգամայն թույլ է ընթանում ճաշարանների աբոնեմենտների տարածումը բուհերում և դպրոցներում։

Այս բոլորը մանրուք չեն, այլ հետևանք այն բանի, որ մեր տնտեսական աշխատողները ճաշարանների, բուֆետների և հասարակական սննդի մյուս ձեռնարկությունների կանոնավոր աշխատանքին խանգարող թերությունների վերացմանը ցույց են տալիս անտարբեր վերաբերմունք, իսկ պարտիական ու արհմիութենական կազմակերպությունները թույլ են օգնում նրանց։

Ինչպես ցույց տվեց վերջերս տեղի ունեցած ստուգումը, ճաշարաններում և բուֆետներում ճաշատեսակների պակասը հետևանք է այն բանի, որ ճաշարանների տրեստը ժամանակին չի մատակարարում անհրաժեշտ մթերքներ։ Հաճախ կաթը, սերուցքը և այլ մթերքներ ժամանակին չբերելու պատճառով ճաշարաններն ու բուֆետները զուրկ են լինում կաթնամթերքներից։ Երբեմն ճաշատրանսպորտային կազմակերպությունները միսը ձեռնարկությունների ճաշարաններն են բերում ժամը 3-ին, մոռանալով, որ շատ տեղերում կեսօրվա ընդմիջումը տեղի է ունենում ժամը 1—2-ին, և որ արտադրության մեջ աշխատող բանվորն ու ծառայողը ճաշել կարող են միայն այդ ժամին։



Հայկական ՍՍՌ Առևտրի մինիստրությունը (մինիստր՝ Ա. Փիրուզյան), ինչպես նաև Հայկոոպի վարչությունը (նախագահ՝ Վ. Նալոյան) տեղական կազմակերպությունների հետ միասին պետք է կոնկրետ միջոցների դիմեն և հասարակական սննդի ձեռնարկությունները լիովին ապահովեն սառեցման և այլ տեխնոլոգիական անհրաժեշտ սարքավորումներով, ամեն կերպ բարձրացնեն ճաշերի որակը, իջեցնեն ինքնարժեքը, ճաշարաններն ու բուֆետները մշտապես ապահովեն կենսամթերքներով և ճաշարաններում, բուֆետներում, խորտկարաններում ստեղծեն շաբաթվա բոլոր օրերի համար սահմանված ճաշատեսակների մթերքների անհրաժեշտ պաշար։ Հարկավոր է առանձնակի ուշադրություն նվիրել տուն ճաշ բաց թողնելու, ինչպես նաև աբոնեմենտներ վաճառելու գործին, վերջինս ոչ միայն կարագացնի սպասարկումը, երբ անհրաժեշտ չի լինի դրամը մուծել դրամարկղ, այլև աշխատողներին, հատկապես երիտասարդ բանվորներին, ծառայողներին, ուսանողներին հնարավորություն կտա ճիշտ և խնայողաբար օգտագործել իրենց սեփական բյուջեն։

Ավելի ու ավելի մեծ նշանակություն է ստանում սննդի որակի բարձրացման հարցը։ Ախորժակով և կուշտ ճաշելու համար հարկավոր են բարձրորակ կերակուրներ, իսկ այդպիսիք պատրաստելու համար՝ որակյալ խոհարարներ։ Ռեսպուբլիկայի հասարակական սննդի ցանցում ոչ միշտ է անհրաժեշտ ուշադրություն նվիրվում խոհարարներ պատրաստելու գործին։ Խոհարարների պատրաստման և վերապատրաստման դասընթացները յուրաքանչյուր տարի տալիս են մեծ թվով շրջանավարտներ։ Սակայն նրանց հետագա աճի նկատմամբ հսկողություն չի սահմանվում։ Հասարակական սննդի ոչ բոլոր ձեռնարկություններում կան ճաշատեսակների ու խոհարարական արտադրանքի նկատմամբ եղած պահանջարկները քննարկող, խոտանորոշող հանձնաժողովներ։ Իսկ այդպիսի հանձնաժողովներ ստեղծելն անհրաժեշտ է։

Սննդի որակի բարելավման գործում մեծ դեր է պատկանում բազմատեսակ խոհարարական ձեռնարկներին։ Վերջին տարիներին Պետական առևտրական հրատարակչությունը լույս է ընծայել բազմաթիվ ուսումնական և պրակտիկ ձեռնարկներ։ Սակայն հայերեն լեզվով այդպիսի ձեռնարկներ չկան, սկսած 1937—1938 թվականներից մայրենի լեզվով սեփական դասագրքեր և ձեռնարկներ ընդհանրապես չեն հրատարակվել։ Ռեսպուբլիկայի Առևտրի մինիստրությունը պետք է կազմակերպի այդ գործը։ Հարկավոր է թարգմանել և լույս ընծայել խոհարարական գործի վերաբերյալ եղած դասագրքերն ու ձեռնարկները, հրատարակել ազգային ճաշերի գործնական ուղեցույցներ։

Հասարակական սննդի ձեռնարկությունների գործունեությունը լավացնելու համար մեծ դեր ունեն կատարելու արհմիութենական կազմակերպությունները։ Կիրովի անվան, Կաբելի գործարանների և մի շարք այլ ձեռնարկությունների արհմիութենական կազմակերպությունները մշտապես օգնում են տնտեսական աշխատողներին՝ բացահայտելու և վերացնելու հասարակական սննդի գործում եղած թերությունները, իսկ պարտիական կազմակերպությունները ակտիվորեն արձագանքում են նրանց ահազանգներին։ Երևանի Ծխախոտի ֆաբրիկայի տեղկոմը (նախագահ՝ Ա. Անտոնյան) մշտապես բարեխղճորեն զբաղվում է ֆաբրիկայի ճաշարանի և բուֆետի աշխատանքների բարելավման հարցերով։ Արհմիութենական կազմակերպության ժողովներում, տեղկոմի նիստերում հաճախակի լսելով ճաշարանների և բուֆետների ղեկավարների զեկուցումները, վեր են հանվել նկատված թերությունները և նշվել

դրանց վերացման միջոցները։ Պարտկազմակերպությունն ու տեղկոմը կարողացան հասնել այն բանին, որ ընդարձակեցին ճաշարանի դահլիճը, ավելի լավ կազմակերպեցին ինքնասպասարկումը և այլն։ Ճիշտ է, այստեղ դեռևս լիովին լուծված չեն խոհանոցի կահավորման հարցերը, բայց շատ բան է արված մյուս խնդիրների կատարման ուղղությամբ։ Ֆաբրիկայում ակտիվ աշխատանք են տանում հասարակական հսկիչները, նրանք ամեն օր ստուգում են ճաշատեսակների ցանկը, գները, ճաշերի որակը և այլն։

Ճաշարանների և մյուս օբյեկտների աշխատանքների նկատմամբ հսկողություն սահմանելու բնագավառում հասարակական հսկիչների ակտիվ գործունեության փորձը պետք է լայնորեն մասսայականացնել բոլոր արհմիութենական կազմակերպություններում։ Արտադրության առաջավորների շարքերից ընտրված հասարակական հսկիչների աշխատանքը պետք է ուղղված լինի հասարակական սննդի բարձր կուլտուրայի, աշխատավորության սպասարկման գործի թերությունների վերացման, սննդի որակի բարձրացման և գների իջեցման համար մղվող պայքարին։ Արհմիութենական տեղական կազմակերպությունները տեղկոմների նիստերում և բանվորների ու ծառայողների ընդհանուր ժողովներում պետք է սիստեմատիկաբար լսեն հասարակական սննդի ձեռնարկությունների ղեկավարների հաշվետվությունները՝ աշխատավորության սպասարկման վիճակի մասին և ժամանակին ձեռք առնեն համապատասխան միջոցներ այդ գործը արմատապես բարելավելու համար։ Արհմիութենական տեղական օրգանները պետք է ադմինիստրացիաների միջոցով, պարտկազմակերպությունների օգնությամբ, ամենամոտիկ ժամանակում ճաշարաններն ու բուֆետները ապահովեն սեղաններով, հիգիենիկ, հաստ ծածկոցով, որը կփոխարինի սփռոցին, ճաշարաններում կազմակերպելով նախաճաշի, ճաշի և ընթրիքի չեկերի նախնական վաճառքը, բանվորներին ու ծառայողներին, ինչպես նաև ճաշերի նախնական պատվերների ընդունումը և 2—3 տեսակի ճաշերի վաճառքը անփոփոխ գներով։

Ռեսպուբլիկայի Առևտրի մինիստրությունը, պարտիական կազմակերպությունները ոչ միշտ են հարկ եղած ուշադրություն դարձնում սննդի կադրերի պատրաստմանը, տեղաբաշխմանը և դաստիարակությանը։ Երբեմն ճաշարանների, բուֆետների ու կաֆեների վարիչներ են նշանակվում այնպիսի մարդիկ, որոնք վստահություն չեն վայելում, քիչ բան գիտեն սպառողների ճաշակին համապատասխան ճաշաբաժիններ պատրաստելու մասին։ Սննդի օբյեկտների կադրերի մեծ հոսունություն է նկատվում, որպիսի երևույթը կանոնավոր համարել չի կարելի։ Ձերժինսկու անվան գործարանի ճաշարանում կադրերը մշտապես փոխվում են, այստեղ երբեմն պատահում են այնպիսի մարդիկ, որոնք ոչինչ չգիտեն սննդի կազմակերպման, սպառողների պահանջմունքների բավարարման խնդիրների մասին։ Ճաշարանները գործուղելով մարդկանց, Երևանի Ճաշարանների տրեստը ժամանակին հանգամանորեն չի ստուգում նրանց անցյալը, ինչպես նաև գործարար տվյալները։ Կադրերի հոսունության պատճառով գործարանի ճաշարանը աշխատում է միանգամայն անկանոն կերպով։ Միայն 1956 և 1957 թվականների ընթացքում Երևան քաղաքի Ճաշարանների տրեստի սիստեմից 55 հոգի ազատվել են սովետական առևտրի կանոնները խախտելու համար, այդ թվում 19 հոգի՝ պետական ունեցվածքի յուրացման ու կողոպուտի համար։

Մեր կանայք տղամարդկանց հետ համահավասար աշխատում են կոմունիստական շինարարության բոլոր բնագավառներում։ Միլիոնավոր բանվորուհիներ և կոլտնտեսուհիներ ակտիվորեն մասնակցում են նյութական արժեքներ ստեղծելու գործին, հանդես են բերում աշխատանքի բարձր արտադրողականության հիանալի օրինակներ։ Արդյունաբերության մեջ աշխատող բանվորների ու ծառայողների 45,5 տոկոսը կազմում են կանայք։ Գիտության բնագավառի կադրերի 36, բժիշկների՝ 76, ուսուցիչների՝ 70 տոկոսը նույնպես կազմում են՝ կանայք։



Պարտիան ու կառավարությունը մեծ հոգատարություն են ցուցաբերում սովետական կանանց նկատմամբ։ Մոր ու մանկան պահպանության համար մեզ մոտ ստեղծված են բոլոր պայմանները։ Նախածննդյան և ծննդաբերությունից հետո արձակուրդների տևողության ավելացումը, մանկապարտեզների ու մանկամսուրների ցանցի ընդարձակումը, առևտրական լայն ցանցի ստեղծումը և մի շարք այլ միջոցառումներ ուղղված են կանանց աշխատանքների թեթևացման նպատակին։ Այս միջոցառումներում հատուկ տեղ է պատկանում հասարակական սննդի օբյեկտներին, որոնք պետք է տուն ճաշ բաց թողնեն։

Հայկական ՍՍՌ Առևտրի մինիստրությունը պետք է լուրջ ուշադրություն նվիրի ճաշարանների ու ռեստորանների կարգ ու կանոնին և հարմարավետությանը, որտեղ աշխատավորները կարողանան ամբողջ ընտանիքներով ախորժակով ու կուշտ ճաշել։ Հաճախ բարեկամներն իրենց մոտ հյուրեր են հրավիրում։ Բայց ոչ միշտ է հնարավոր լինում նրանց հյուրասիրել սեփական տանը։ Աշխատավորներին պետք է հնարավորություն տալ ընտանեկան հանդիպումներն ու երեկոները անցկացնել հասարակական սննդի ցանցի օբյեկտներում։ Դրա համար ճաշարաններում և ռեստորաններում հարկավոր է ստեղծել հարմարավետ պայմաններ և, որ գլխավորն է, համեղ կերակրատեսակներ։

Վերջին տարիներին ռեսպուբլիկայի մայրաքաղաքում բացվել է հինգ ավտոմատ խորտկարան, որտեղ միշտ մեծ թվով հաճախորդներ են լինում։ Օրվա ընթացքում նրանք սպասարկում են ավելի քան հինգ հազար մարդու։ Բայց հարկավոր է Ճաշարանների տրեստին հիշեցնել, որ անհրաժեշտ է հատուկ ուշադրություն նվիրել այդ ավտոմատ խորտկարանների մաքրությանը և բազմատեսակ կերակուրներ պատրաստելուն։ Չէ՞ որ այստեղ են գալիս ծնողներն իրենց երեխաների հետ, հարկավոր է մտածել ճաշարաններում ցածր սեղաններ ունենալու մասին, որպեսզի երեխաները կարողանան հանգիստ ճաշել։

Ռեստորաններում, ճաշարաններում, ավտոմատ խորտկարաններում անհրաժեշտ հարմարությունների ստեղծումը կօգնի մեր կանանց ավելի քիչ ժամանակ հատկացնելու տնային աշխատանքներին, ավելի շատ ժամանակ նվիրելու մեր Հայրենիքի բարօրության համար կատարվող ստեղծարար մեծ աշխատանքին։

Պարտիական կազմակերպությունները պետք է մշտապես օգնեն առևտրական կազմակերպություններին՝ ճշտորեն կատարելու կադրերի ընտրությունն ու դասավորումը, հասարակական սննդի ցանցը ամրապնդելով ժողովրդի վստահությունը վայելող որակյալ կադրերով։

Հայկական ՍՍՌ Առողջապահության մինիստրությունը (մինիստր՝ Ա. Խրիմլյան) նույնպես պետք է անհրաժեշտ վերահսկողություն սահմանի հա-

սարակական սննդի օբյեկտների սանիտարական դրության վրա, խիստ պատասխանատվության ենթարկի այն անձանց, ովքեր թույլ կտան սանիտարական և հիգիենիկ կանոնների ու մթերքների ծախսման նորմաների խախտումներ։

ՍՄԿԿ XX համագումարի դիրեկտիվներում նախատեսված է վեցերորդ հնգամյակում ճաշարանների ցանցն ավելացնել ոչ պակաս քան 50 տոկոսով, իսկ հասարակական սննդի ձեռնարկությունների արտադրանքի թողարկումը՝ 75 տոկոսով։ Պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ տնտեսական ղեկավարներից պահանջել և նրանց օգնել հոգատար, զգայուն վերաբերմունք ցուցաբերելու մարդկանց նկատմամբ, լիովին կենսագործելու ժողովրդի բարեկեցությունը բարձրացնելու մասին պարտիայի դիրեկտիվները։ Մեր երկրում բոլոր հնարավորությունները կան հասարակական սննդի գործը սիստեմատիկաբար բարելավելու համար։ Մեր բոլոր պարտիական և արհմիութենական կազմակերպությունների ու տնտեսական աշխատողների խնդիրն է՝ ճշտորեն, նպատակին օգտագործել այդ հնարավորությունները, ապահովել ճաշարանների, ռեստորանների, բուֆետների, խորտկարանների, թեյարանների օրինակելի աշխատանքը, ավելի լավ կազմակերպել սովետական մարդկանց սպասարկումը։

---

# ՄԵԾ ԳՈՐԾԵՐԻ ՈՒ ՊԱՅԾԱՌ ԽՈՀԵՐԻ ԳԻՐՔԸ

## Ա. ԱԴՈՅԱՆ

(Վ. Ի. Լենինի Երկերի 36-րդ հատորի հայերեն հրատարակության առթիվ)

Բուռն ու անկեղծ հույզերի, խորագույն մտքերի և ստեղծարար խոյանքների, գաղափարական-քաղաքական գոռ մարտերի, հեղինակի կազմակերպական անզուգական տաղանդի և մեծ վերապրումների մասին վկայող մի գիրք է սա։ Մի անսովոր գիրք, որում ընթերցողը զգում է նրա հեղինակի՝ մեծ Լենինի ջերմ սրտի տրոփը, աշխարհը վերափոխող նրա հանճարի փայլատակումները։

Այդ գիրքը, որի վերաբերյալ խոսվելու է այստեղ, բովանդակում է իմաստալի, լակոնական ոճով գրված բազմաթիվ նամակներ, գաղտնապահության խստագույն կանոններով շարադրված հրահանգներ ու գործնական խորհուրդներ, պարտիայի փոթորկալի ուղին լուսավորող ծրագրային նշանակություն ունեցող վավերագրեր, թեորետիկական և քաղաքական ուղենիշ դրույթներով հագեցած հոդվածներ ու կառավարական գրություններ։

Այդ գիրքը Վ. Ի. Լենինի երկերի 36-րդ հատորն է։ Այն ամենը, ինչ զետեղված է այստեղ, ընդգրկում է շուրջ քսաներեք տարվա ռևոլյուցիոն իրադարձություններով լի մի շրջան (1900—1923 թթ.)։ Ինքնին հասկանալի է, որ հատորում հրապարակված նյութերը Լենինի բախումնալի կյանքի մի աննշան մասն են լոկ արտացոլում։

Ցանկանո՞ւմ եք տեսնել Կոմունիստական պարտիայի ու Սովետական պետության կերտողին բուռն իր տարերքի մեջ։ Կամենո՞ւմ եք վերստին հիշել լենինյան գվարդիայի պայքարի փառավոր ուղին։ Տենչո՞ւմ եք դիտել ռևոլյուցիայի մեծ նավավարին փոթորիկների պահին կռթնած իր կայմին։ Ուզո՞ւմ եք մոտիկից շոշափել Լենին ժուռնալիստի շիտակ և պայծառ ոճը։ Ձեզ հետաքրքրո՞ւմ է Լենին մարդու կյանքի հարուստ լաբորատորիան։ Կարդացեք նրա Երկերի նոր լույս տեսած 36-րդ հատորը։ Շա՜տ, անչափ շա՜տ ուսանելի ու հուզիչ բան կա այս գրքում։

Այս գրքից առատ նյութեր կքաղեն պատմաբանները, ռևոլյուցիայի հանգուցային առեղծվածները բազմակողմանիորեն լուսաբանելու համար։ Սոցիալիզմի էկոնոմիկայի կատեգորիաները ճիշտ ըմբռնելու տեսակետից տնտեսագետները շատ բան ունեն վերցնելու այս հատորից։ Փիլիսոփաները բազմաթիվ օրինակներ ու էջեր կընկալեն ստեղծագործական մարքսիզմի զարգացման պատմությունից։ Պարտիական ու սովետական գործիչները կհամակվեն անչափ խոր այն մտքերով, որոնցով լի է գիրքը և որոնք զորավիգ կլինեն նրանց՝ կոմունիստական շինարարության գործում։ Եվ վերջապես այս հատորի էջերից ընթերցողներին է հառնում սոցիալիստական ռևոլյուցիայի առաջնորդի վեհ կերպարը, կերպարն այն մարդու, որի զրկանքներով ու խիդախումներով լի կյանքը միշտ էլ հանդիսացել է խոսքի ու գործի երջանիկ մի զուգակցում։

Մեր դարի սկիզբը պարտիայի կազմավորման ծանր տարիներն է նշանավորում։ Լենինը վիթխարի կազմակերպական ու գաղափարական պայքար ծավալեց պրոլետարական ռևոլյուցիոն պարտիա ստեղծելու համար։ Այդ նպատակի իրագործման ճանապարհին նա հանդիպեց անասելի խոչընդոտնե-

Վերին աստիճանի արժեքավոր են և թարմ նրա նկատառումներն ու դրույթ-
ները պոլիտեխնիկական կրթության վերաբերյալ։ Լենինը խորհուրդ է տալիս
պրոֆտեխդպրոցները չվերածել արհեստավորականության։ Պետք է խույս տալ
վաղաժամ մասնագիտացումից, բոլոր պրոֆտեխդպրոցներում ընդլայնել
հանրակրթական առարկաները և անհապաղ կիրառել պոլիտեխնիկական
ուսուցում։ Այնուհետև Լենինը մեկ առ մեկ թվում է պոլիտեխնիկական կրր-
թության տարրերը ու եզրակացնում. դա գերկարևոր է։ Մեզ պետք են ատաղ-
ձագործներ, փականագործներ, հյուսներ, որոնք ընդհանուր գիտելիքներով
հանդերձ ունենան և պոլիտեխնիկական մինիմում։ Միջնակարգ դպրոցը պետք
է տա «իրենց գործը լավ իմացող և վարպետներ դառնալու ունակ» երիտա-
սարդներ, բայց մի պայմանով՝ նրանք պետք է ունենան հիմնավոր ընդհանուր
կրթություն, գաղափարով լինեն կոմունիստներ, ունենան պոլիտեխնիկական
մտահորիզոն։ Այսօր էլ Լենինի այս դրույթները մնում են իբրև սովետական
կրթական սիստեմի անսասան հիմքեր, որոնց լիակատար իրագործման հա-
մար շատ աշխատանք է պահանջվում։

Ընթերցողներն այս հատորում ի թիվս մի շարք ամբողջական, ավարտված,
խիստ արժեքավոր հոդվածների, կկարդան և Լենինի ֆրագմենտը դիալեկտի-
կայի վերաբերյալ։ Զարմանալի հակիրճ ու խոր բնորոշումները զուգորդված
բազմակողմանի վերլուծության հետ՝ ֆրագմենտը դարձնում են մատչելի և
ամբողջական։ «Միասնականի երկատումն ու նրա հակասական մասերի իմա-
ցությունը... դիալեկտիկայի էությունն է»,— գրում է Լենինը։— Դիալեկտիկ
մտածողի համար որևէ երևույթի մեջ գլխավորը իրար բացառող հակադրու-
թյուններն են, որոնք և ինքնաշարժման աղբյուր են, զարգացման ու շարժման
հիմքը։ Յուրաքանչյուր ոք, եթե կամենում է դիալեկտիկային չդավաճանել,
պետք է հետևի Մարքսի օրինակին, և իր ուսումնասիրությունը սկսի «ամենա-
պարզից, սովորականից, մասսայակերպից»։ Մարքսիզմի իմացաբանությունը
հենց դիալեկտիկան է, որը կենդանի է, բազմակողմանի և բովանդակությամբ
հարուստ, քան մետաֆիզիկական մատերիալիզմը, նշում է Լենինը։

Դիալեկտիկայի կիրառումն ու զարգացումը Լենինի տվյալ հատորում
մարմնացած է շատ ու շատ էջերում, որն ավելի ուսանելի և հետաքրքրական
է դարձնում նրա ուսումնասիրությունը։

***

Լենինի Երկերի 36-րդ հատորը ուշագրավ է և այն տեսակետից, որ հրա-
պարակված նյութերում ամենայն հստակությամբ երևում է հեղինակի համեստ,
զգայուն, հոգատար և բարի կերպարը։ Ուշադիր ընթերցողի աչքից չեն վրիպի
այն սակավաթիվ տողերը, որոնք փութանցիկ կերպով գծում են մեր առջև ռև-
վոլյուցիայի հանճարի կրած դառն զրկանքները։

Այսպես, օրինակ, նա Խարիտոնովին խնդրում է Ցյուրիխում մի սենյակ
վարձել, բայց բանվորի բնտանիքում, որը լինի էժան, օրական մի ֆրանկից
ոչ ավելի, թեկուզ մեկ մահճակալով։ Չնայած իր ծայրահեղ նյութական կարի-
քին, Լենինը բազմիցս հրապարակային ռեֆերատներ էր կարդում արտասահ-
մանում եղած ժամանակ և մուտքի գումարը հատկացնում պարտիական դանձ-
արկղին։ Մի անգամ նա Կոլոնտային գրում է. «Հրատարակչական կապեր
չունե՞ք։ Ես չունեմ։ Վաստակի համար կուզենայի կամ թարգմանել, կամ ման-
կավարժական գրական աշխատանք Նադյայի համար (որովհետև նրա հիվան-
դությունը պահանջում է երկար ապրել լեռներում, իսկ դա թանկ արժե)»։

Լռությամբ տանելով անձնական զրկանքները, Լենինը շատ մեծ հոգա-
տարություն էր հանդես բերում հարազատների, ընկերների և մարդկանց
նկատմամբ։ Շկլովսկուն համոզում է, որպեսզի նա անհապաղ կազմակերպի
պետական 4-րդ դումայի բոլշևիկ դեպուտատ Սամոյլովի բուժումը շվեյցա-
րական որևէ սանատորիայում, պայմանով, որ ծախսերը կհոգա ինքը։ Երբ
իմանում է, որ թարգմանիչ Օխրիմենկոն տիկ-տկլոր է, կարգադրում է նրան
տալ բնակարան, հագուստ և պարեն։

Տպագրված նամակներից մեկում Լենինը գրում է Պլեխանովի մասին.



«Ափսոս է ծերուկը, անտեղի է բարկանում, բայց թե լավ գլուխ է»։ Նա Պլե-
խանովի բացասական գծերն էր համարում՝ մանր ինքնասիրությունը, փառա-
մոլությունը և ոչ անկեղծությունը։

Հատորը վերջանում է 1922—1923 թթ. Լենինի թելադրած փաստաթղթե-
րով՝ «Նամակ համագումարին», որը հայտնի է «Կտակ» անունով, «Պետպլանին
օրենսդրական ֆունկցիաներ տալու մասին» և «Ազգությունների կամ «ավտո-
նոմիզացիա»-ի հարցի շուրջը» նամակները։ Վերոհիշյալ երկերը, որոնք առա-
ջին անգամ հրապարակվեցին ՍՄԿՊ Կենտկոմի որոշմամբ, ունեն խոշոր ծրա-
գրային և պատմական նշանակություն։ Լենինը պարտիայի միասնությունը
համարելով մեր հաղթանակների գլխավոր առհավատչյան, խորհուրդ էր տա-
լիս ընդլայնել Կենտկոմի կազմը և բարելավել պետական ապարատը։ Առաջին
նամակում Լենինը տալիս է Կենտկոմի մի քանի անդամների բնութագիրը և
նշում է Ստալինի բնավորության բացասական գծերը, առաջարկում է «քննել
գլխավոր քարտուղարի պոստում նրան մեկ ուրիշ ընկերոջով փոխարինելու
հարցը»։

Երկրորդ նամակում Լենինն առաջարկում է ընդլայնել Պետպլանի իրավա-
սության շրջանակները և նշում է Պետպլանի ղեկավարների անհրաժեշտ
հատկանիշները։

«Կարևորագույն նշանակություն ունի Վ. Ի. Լենինի «Ազգությունների կամ
«ավտոնոմիզացիա»-ի հարցի շուրջը» նամակը, որը գրված է ՍՍՌՄ Սովետ-
ների I համագումարի անմիջական նախապատրաստման ու անցկացման օրե-
րին։ Այդ փաստաթուղթը վառ կերպով բնութագրում է Վ. Ի. Լենինին որպես
Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության իսկական ոգե-
շնչողի և ստեղծողի, նրա հոգատարությունը ազգային ճիշտ քաղաքականու-
թյուն վարելու, ՍՍՌՄ-ն ամրապնդելու մասին։ Նամակում Վ. Ի. Լենինը պա-
հանջում է կենսագործել պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները,
ամրապնդել Սովետական Միության մեծ ու փոքր ժողովուրդների բարեկամու-
թյունը» (էջ 15)։

Լենինի Երկերի 36-րդ հատորը անպայման կդառնա ընթերցողների սի-
րած գիրքը։

Չնայած նրան, որ հատորը դժվար թարգմանելի է, թարգմանիչներն ու
խմբագիրները գործին վերաբերվել են պատասխանատվության պատշաճ գի-
տակցությամբ։ Ընթերցողները գոհ կլինեն Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի
Հայկական ֆիլիալի կոլեկտիվի այս շնորհակալ աշխատանքից։

# ԹՈՂ ԲԱՐԳԱՎԱՃԻ ՄԵՐ ԵՐԵՎԱՆԸ

Գ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ

*Սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի գլխավորությամբ
մեծագույն ստեղծագործական եռանդով պայքարում է իր Հայրենիքի հետա-
գա ծաղկման, աշխատավորության բարեկեցության և կուլտուրայի արագ
բարձրացման համար:*

*Սովետական ողջ ժողովրդի հետ միասին Երևանի աշխատավորները որոշ
հաջողությունների են հասել արդյունաբերության, տրանսպորտի և քաղաքա-
յին տնտեսության զարգացման ասպարեզում: Սովետական իշխանության
տարիներին անճանաչելիորեն փոխվել է Երևանը: Երբեմնի գավառային հե-
տամնաց, արդյունաբերությունից զուրկ, կեղտի և խավարի մեջ թաղված
քաղաքից այն դարձել է Սովետական Միության արդյունաբերական, կուլտու-
րական և գիտական խոշոր կենտրոններից մեկը՝ իր ծաղկապատված, բարե-
կարգված լայն պողոտաներով և փողոցներով, ընդարձակ հրապարակներով,
զբոսայգիներով, հարուստ ճարտարապետությամբ ձևավորված հասարակա-
կան և բնակելի շենքերով: Երևանի քաղաքային տնտեսությունը հատկապես
բուռն կերպով զարգացավ Հայրենական Մեծ պատերազմից հետո: Հետպա-
տերազմյան տարիներին Երևանում շարք են մտել մի քանի տասնյակ խոշոր,
տեխնիկայի նորագույն խոսքով կառուցված և սարքավորված արդյունաբե-
րական ձեռնարկություններ: Արագ տեմպով զարգանում է հատկապես քի-
միական, էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը, մեքենաշինությունը,
սարքաշինությունը, թեթև և սննդի արդյունաբերությունը: Քաղաքի արդյու-
նաբերության համախառն արտադրանքի ծավալը 1958 թվականին, 1940 թվա-
կանի համեմատությամբ, աճել է ավելի քան 6 անգամ:*

*Արդյունաբերության աճի տեմպերը, արտադրական պլանների հաջող
կատարումը մեծ հնարավորություններ ստեղծեցին քաղաքային տնտեսության
հետագա զարգացման համար:*

*Վերջին 10 տարիների ընթացքում (1948—1957 թթ.) քաղաքային շինա-
րարության մեջ լիմիտային ներդրումների ծավալը կազմեց 2,5 միլիարդ
ռուբլի, այդ թվում բնակարանային շինարարության գծով՝ 625 միլիոն ռուբլի:
Կապիտալ ներդրումները հատկապես մեծ են վերջին երկու տարիներին: Եթե
1950 թվականի կապիտալ ներդրումները կազմում էին 125 միլիոն, 1955 թվա-
կանին՝ 257 միլիոն, ապա 1957 թվականին այն հասավ ավելի քան 380 մի-
լիոն ռուբլու. այս տարի կապիտալ ներդրումները կազմում են 490 միլիոն
ռուբլի: Այդ տարիների ընթացքում մեծ մասշտաբի աշխատանքներ են կա-
տարված բնակարանային, դպրոցական, հիվանդանոցային շինարարության,
բնակելի շենքերի վերանորոգման, տրամվայի և տրոլեյբուսի նոր գծերի կա-
ռուցման, ճանապարհաշինարարության և քաղաքի կանաչապատման բնա-*



*գավառներում: Զգալիորեն ծավալվել է կոմունալ-կենցաղային ձեռնարկու-
թյունների ցանցը: Նախաձեռնվում է քաղաքի գազիֆիկացումը:*

*Չնայած կատարված զգալի աշխատանքներին, քաղաքային տնտեսության
բնագավառում դեռևս լուրջ թերություններ կան: Քաղաքային տնտեսության
զարգացման տեմպը չի համապատասխանում բնակչության աճող պահանջ-
ներին:*

*Քաղաքային տնտեսության աշխատանքների մեջ տեղ գտած թերություն-
ների վերացման և նրա պլանային ու նպատակահարմար զարգացման նպա-
տակով վերջերս պարտիայի Երևանի քաղաքային կոմիտեի պլենումը քննար-
կեց քաղաքային տնտեսության զարգացման հարցերը և միջոցառումներ նշեց
դրանց հաջող լուծման համար: Այդ միջոցառումների իրականացումը հնարա-
վորություն կտա է՛լ ավելի բարձրացնելու մեր քաղաքի ազգաբնակչության
բարեկեցությունը, բարելավելու նրանց բնակարանային պայմանները:*

*1958 թվականին նախատեսված 490 միլիոն ռուբլու կապիտալ ներ-
դրումներից 180 միլիոնը հատկացվում է Երևանի արդյունաբերության զար-
գացմանը, 180 միլիոնը՝ բնակարանային շինարարությանը, 130 միլիոնը՝ կո-
մունալ և կուլտուր-կենցաղային օբյեկտների շինարարության համար: Բացի
այդ, քաղաքային Սովետի բյուջեով բարեկարգման, բնակելի, դպրոցական,
հիվանդանոցային ֆոնդի վերանորոգման, տեղական արդյունաբերության,
կոմունալ տնտեսության և առևտրական ցանցի ընդլայնման համար հատկաց-
ված է մոտ 120 միլիոն ռուբլի: Շահագործման են հանձնվելու Ռելեի, Ցրեղե-
րային հաստոցների գործարանների առաջին հերթը, Էլեկտրալամպերի, Ավ-
տողողերի, Կիրովի անվան, Պոլիվինիլացետատ գործարանների կառուցվող
ցեխերը, երկու երկաթ-բետոնի, № 5 հացի գործարանները, Ջեռոցների
ֆաբրիկան և այլն: Այս տարի քաղաքի ազգաբնակչությունը կստանա 120
հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, 1957 թվականի 69 հազար
քառակուսի մետրի փոխարեն:*

*Ինչպես տեսնում ենք, միջոցները բավարար են, աշխատանքի բնագա-
վառներն ու ծավալը լայն: Սակայն մի շարք ձեռնարկությունների և հատ-
կապես շինարարական կազմակերպությունների ներկա աշխատանքի տեմպը
չի ապահովում նրանց առջև դրված խնդիրների հաջող լուծումը: Ինչպես ար-
դյունաբերական ձեռնարկությունների, այնպես էլ բնակարանային և կուլ-
տուր-կենցաղային օբյեկտների շինարարությունը անցած կես տարում ըն-
թացել է անբավարար: Կապիտալ ներդրումների տարեկան պլանը 6 ամսում
կատարված է 47,2 տոկոս, բնակարանային շինարարության գծով՝ 45,3
տոկոս:*

*Ռեսպուբլիկայի Շինարարության մինիստրության № 2 տրեստի (կառա-
վարիչ Հ. Կարապետյան, պարտկազմակերպության քարտուղար Ա. Մելիք-
սեթյան) և № 11 տրեստի ղեկավարների (կառավարիչ Վ. Խորենյան, պարտ-
կազմակերպության քարտուղար Գ. Հովհաննիսյան) մեղքով ձախողվել է Եր-
կաթ-բետոնյա կոնստրուկցիաների, Հաստոցային նորմալների և Ավտոպահես-
տամասերի, Խրոմպիկի գործարանների, Մսի կոմբինատի և առանձին ցե-
խերի ժամանակին շահագործման հանձնումը: Ավելին, նրանց մոտ չի կեն-
սագործվում ՍՄԿԿ XX համագումարի պահանջը՝ կառուցումների ժամկետ-
ները կրճատելու, շինարարության ինքնարժեքն իջեցնելու վերաբերյալ: Ընդ-
հակառակը, այդ տրեստների ղեկավարների և պարտիական կազմակերպու-*

թյունների անբավարար աշխատանքի ու թողտվության հետևանքով առանձին դեպքերում թանկացել է շինարարությունը, կատարվել է աշխատավարձի ֆոնդի գերածախս, և հաճախ էլ անորակ շինարարություն։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը մեծ հոգատարություն են ցուցաբերում մեր երկրի աշխատավորության նյութական բարեկեցությունը անընդհատ բարձրացնելու նկատմամբ։ Այդ հոգատարության լավագույն վկայությունն է նաև ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի անցյալ տարվա՝ ՍՍՌՄ-ում բնակարանային շինարարությունը զարգացնելու մասին որոշումը։ Հարց է դրված կարճ ժամանակամիջոցում հասնել բնակելի ֆոնդի այնպիսի աճի, որպեսզի առաջիկա 10—12 տարվա ընթացքում յուրաքանչյուր ընտանիք ապահովվի բնակարանով։

Պարտիայի և կառավարության այդ կարևոր որոշումից արդեն անցել է մեկ տարի, սակայն բազմաթիվ շինարարական կազմակերպություններ դեռևս չեն վերակառուցել իրենց աշխատանքը և չեն կարողանում ապահովել շինարարական պլանների անթերի կատարումը։ Այսպես, օրինակ, Հայկական ՍՍՌ Շինարարության մինիստրության № 1 տրեստի (կառավարիչ Ա. Հարությունյան, պարտկազմակերպության քարտուղար Ա. Սեդրակյան) և № 3 տրեստի ղեկավարները (կառավարիչ Գ. Ղարագյոզյան, պարտկազմակերպության քարտուղար Վ. Գրիգորյան) ձախողել են բնակարանային ֆոնդի շահագործման հանձնման պլանը։ Նրանք մյուս տրեստների հետ միասին 1956 թվականին պլանից պակաս են հանձնել 30 հազ. քառ. մետր բնակելի տարածություն, 1957 թվականին՝ 25 հազար քառ. մետր։ Այս տարվա 120 հազար քառակուսի մետրի դիմաց 6 ամսվա ընթացքում շահագործման է հանձնված միայն 32 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։

Շինարարության կազմակերպման թերություններից է կապիտալ ներդրումների և կառուցվող օբյեկտների մեծ ցրվածությունը և մանրացումը։ Այսպես, օրինակ, 1957 թվականին Հայկական ՍՍՌ Առողջապահության մինիստրության համար նախատեսված 16 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումները բաշխված են 14 օբյեկտի վրա, որոնցից միայն երեքն են այս տարի շահագործման հանձնվելու։ Կուլտուրայի մինիստրությունը ունի 17 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումների պլան, որը բաշխված է 10 օբյեկտի վրա և նրանցից միայն երկուսն են, որ շահագործման պետք է հանձնվեն։ Շինարարության մինիստրության այս տարվա 14,3 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումները (բնակարանային շինարարության համար) բաշխված են 29 օբյեկտի, որոնցից շահագործման պետք է հանձնվեն 6 օբյեկտ։ Միջոցների այսպիսի մանրացումն ու սխալ պլանավորումը առաջացնում են շինարարական աշխատանքների խառնաշփոթություն, շինարարության թանկացում, պետական միջոցների շռայլում և կապիտալ միջոցների սառեցում։ Մեր կարծիքով գործը շատ բանով կշահի, եթե ռեսպուբլիկայի Մինիստրների Սովետը և Պետպլանը կանխեն պլանավորման այսպիսի սխալ դրվածքը։

Ինչ խոսք, որ վերը նշված փաստերը հետևանք են նաև նրա, որ շինարարությունում դեռևս ցածր է մեխանիզացիայի մակարդակը, իսկ եղած մեխանիզմներն օգտագործվում են ոչ բավարար, կարգ ու կանոն չկա շինանյութերի հաշվառման գործում, որի հետևանքով էլ այն շռայլվում ու անապնիվ մարդկանց կողմից հափշտակվում է։ Շինարարությունը ապահովված չէ մշտական բանվորական ուժով։ Կառուցող բանվորների զգալի մասը քաղա-



քամերձ շրջաններից են, որոնք գյուղատնտեսական աշխատանքի եռուն շրջանում թողնում են շինարարությունը և վերադառնում իրենց գյուղերը։ Իսկ այդ կատարվում է շինարարության համար վճռական նշանակություն ունեցող ամիսներին։ Ստեղծված դրությունից դուրս գալու նպատակով պարտիայի քաղաքային ու շրջանային կոմիտեները վերջին ամիսները գործնական միջոցներ ձեռնարկեցին և նորակառույցներում աշխատանքի ուղարկեցին 1000-ից ավելի մարդ։

Շինարարության բնագավառում եղած թերությունների հիմնական պատճառներից մեկն էլ այն է, որ սկզբնական պարտիական կազմակերպությունները, շրջանային կոմիտեները, քաղաքային և շրջանային Սովետները շարունակում են հանդուրժել արդյունաբերական և բնակարանային շինարարության ետ մնալը և անհրաժեշտ պահանջկոտություն չեն ցուցաբերում շինարարությունների ղեկավարների նկատմամբ։ Նրանք ոչ բոլոր դեպքերում է, որ կոնկրետ և օպերատիվ միջոցառումների են դիմում շինարարական աշխատանքներն արագացնելու և նրանց որակը բարձրացնելու համար։

Քաղաքի պարտիական կազմակերպությունների, աշխատավորների դեպուտատների քաղաքային և շրջանային Սովետների առաջնահերթ խնդիրն է՝ ձեռնարկել բոլոր միջոցները ապահովելու 1958 թվականին նախատեսված արդյունաբերական ձեռնարկությունների և 120 հազար քառ. մետր բնակելի տարածության շահագործման հանձնումը։ Այս ուղղությամբ հատկապես լուրջ անելիքներ ունեն շինարարությունների սկզբնական պարտիական կազմակերպությունները, որոնք պետք է լավ գիտենան, որ ձեռնարկությունների և բնակելի շենքերի կառուցումների ձգձգումը կարող է մեծ վնաս հասցնել քաղաքի արդյունաբերության պլանների կատարողականին և դժվարություններ ստեղծել քաղաքային տնտեսության հետագա ֆինանսավորման համար։ Հետևապես նրանց և շինարարական տրեստների ու վարչությունների վրա մեծ պատասխանատվություն է դրվում արտադրական և բնակելի օբյեկտների շինարարական-մոնտաժային աշխատանքները ժամանակին ավարտելու և արտադրական կարողությունները լրիվ գործարկելու համար։

Սկզբնական պարտիական կազմակերպությունները պարտավոր են ստեղծել այնպիսի կարգ ու կանոն, որպեսզի ամեն մի տոննա ցեմենտ, խորանարդ մետր քար և ավազ, ամեն մի տախտակ և կիլոգրամ մեխ գտնվեն ուժեղ վերահսկողության տակ և ծախսվեն խնայողաբար։

Քաղաքի պարտիական և սովետական կազմակերպությունների գլխավոր խնդիրներից մեկն էլ բնակարանային պրոբլեմի լուծումն է։ Ահա թե ինչու ՀԿՊ Երևանի քաղաքային կոմիտեի պլենումը պարտիայի քաղաքային կոմիտեի բյուրոյից, շրջկոմներից, աշխատավորների դեպուտատների քաղաքային և շրջանային Սովետներից պահանջեց ձեռնարկել բոլոր միջոցները՝ 1959—1965 թթ. նախագծվող յոթամյա պլանով նախատեսված քաղաքի բնակելի ֆոնդը հասցնելու մոտ 4 միլիոն քառակուսի մետրի, ներկայումս եղած 1800 հազար քառակուսի մետրի փոխարեն, այն հաշվով, որ մեկ շնչին ընկնող բնակելի տարածությունը 1965 թվականին հասնի 7,5 քառակուսի մետրի։ Յոթամյակի ընթացքում նախատեսվում է կենտրոնացած կարգով կառուցել մեկ միլիոն 700 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, հիմնարկ ձեռնարկությունների խնայողությունների հաշվին՝ 215 հազար քառակուսի մետր, նոր ստեղծվող կոոպերատիվ և անհատական շինարարության գծով՝

210 հազար քառակուսի մետր։ Պլենումը քաղաքային Սովետից, նախագծող և
կառուցող կազմակերպություններից պահանջեց՝ կառուցել արագ, որակով,
էժան և պահպանել գոյություն ունեցող բնակելի ֆոնդը. բնակարանային շի-
նարարությունը հիմնականում կենտրոնացնել քաղաքի ազատ տարածություն-
ների վրա, կառուցել ամբողջական մասսիվով, կիրառելով տիպային նախա-
գծերը։ Այդ բնագավառում մեզ մոտ գոյություն ունեն սխալներ և թերություն-
ներ։

Ամեն տարի քաղաքային Սովետի և գերատեսչությունների կողմից բնա-
կելի ֆոնդի վերանորոգման և պահպանման համար նախատեսվում են զգալի
գումարներ, բայց այդ գումարները լրիվ իրենց նպատակին չեն ծառայում,
փոշիացվում են, շենքերի վերանորոգումները կատարվում են մասնակի և ան-
որակ։ Այսպես, օրինակ. Կիրովյան շրջանային Սովետին 1957 թ. բնակարան-
ների վերանորոգման համար հատկացված էր 724 հազար ռուբլի, որը պետք է
ծախսվեր 61 շենք վերանորոգելու համար։ Փաստորեն շրջանային Սովետը այդ
գումարը ծախսել է 87 շենքի վերանորոգման համար, միջին հաշվով մեկ շեն-
քի վրա ծախսելով 8,5 հազար ռուբլի։ Պարզ է, որ այդպիսի վերանորոգումը
ոչ մի արդյունք չէր կարող տալ։ Նույն դրությունն է գրեթե քաղաքի մյուս
շրջաններում, ինչպես և գերատեսչություններին պատկանող շենքերի վերա-
նորոգման և պահպանման գործում։ Շատ վատ են բարեկարգվում բնակելի
շենքերի բակերը։ Շրջանային Սովետներին պատկանող 145 շենքից 76-ի բա-
կերն անբարեկարգ են։ Հիմնարկ-ձեռնարկություններին պատկանող 200 շեն-
քից 121-ն անբարեկարգ վիճակում են գտնվում։ Ներքին գործերի մինիստրու-
թյան, Շինարարության մինիստրության, Հայէներգոյի և 26 Կոմիսարների շրջ-
սովետի Բարեկամության փողոցի վրա գտնվող բնակելի շենքերի բակերը նեղ
գերատեսչական պատնեշների առկայության հետևանքով արդեն 4 տարի է,
ինչ չեն բարեկարգվում։ Իսկ պարտիայի շրջկոմը և աշխատավորների դեպու-
տատների շրջանային Սովետը հանդուրժում են այդ վիճակը։ Կիրովի փողոցի
վրա գտնվող Պետապի բնակելի շենքը ոչ միայն անբարեկարգ է, այլ գտնվում
է անհանդուրժելի հակասանիտարական վիճակում։ Այսպիսի դրությունը հե-
տագայում հանդուրժել չի կարելի։ Բնակելի շենքը շահագործման հանձնելու
հետ միասին պետք է կարգի բերել նրա բակը, երեխաների զբաղմունքի հա-
մար ստեղծել հարմարություններ։ Անհրաժեշտ է միաժամանակ խիստ պա-
տասխանատվության կանչել այն բոլոր ղեկավարներին, որոնք անհոգի վերա-
բերմունք են ցուցաբերում բնակարանային ֆոնդի պահպանման և վերանո-
րոգման գործում։

Կենսական խնդիր է այսօր, որպեսզի քաղաքային Սովետի գործադիր կո-
միտեն հիմնովին վերացնի քաղաքաշինության պլանավորման գործում եղած
թերությունները, թույլ չտա քաղաքի գլխավոր հատակագծի խախտումներ,
վերջ տա ապօրինի շինարարությանը և քաղաքային պետական հողերի շռայ-
լումներին։ Վաղուց ժամանակն է խիստ պատժի ենթարկել այն ղեկավարներին
և քաղաքացիներին, որոնք խախտում են պետական կարգապահությունը։

Քաղաքային տնտեսության զարգացման համար մեծ նշանակություն ունի
ջրամատակարարումը։ Հայաստանում սովետական կարգեր հաստատվելուց
հետո մեծ աշխատանքներ են տարված Երևան քաղաքի ջրամատակարարման
գործը բարելավելու համար։ Եթե մինչև 1920 թվականը քաղաքը ստանում էր
միայն 15 լիտր ջուր մեկ վայրկյանում, ապա այժմ ստանում է 2120 լիտր



ջուր. կառուցված են քաղաքի առաջին և երկրորդ ջրատարը և Կիրովի անվան
գործարանի ջրմուղը։ Սակայն ջրի այդ քանակը ներկայումս չի բավարարում
ազգաբնակչության և արդյունաբերության կարիքները։ ՀԿՊ Կենտկոմի բյուրո-
յի և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի 1958 թվականի որոշման համա-
ձայն, ձեռնարկվել է 2 խոշոր ջրատարների կառուցումը, առաջինը՝ Կաթնաղ-
բյուր—Երևան՝ մեկ վայրկյանում 850 լիտր և երկրորդը՝ Արզնի—Երևան՝ մեկ
վայրկյանում 900 լիտր խմելու ջրի տարողությամբ։ Պլանով նախատեսված է
այս երկու ջրատարները շահագործման հանձնել 1960 թվականին, որոնց
ավարտումով քաղաքը լիովին կապահովվի ջրով։

Քաղաքի բնակչության ջրի պահանջը ներկայումս որոշ չափով բավարա-
րելու համար ձեռնարկված են մի շարք միջոցներ։ Շուտով շահագործման
կհանձնվի Հրազդան գետի նոր կամուրջի մոտ կառուցվող ջրհան կայանը, որը
Հրազդան գետի աջափնյա թաղամասերին և Շահումյանի անվան ավանին մեկ
վայրկյանում կտա 100 լիտր խմելու ջուր։ Կառուցվել է 800 խորանարդ մետր
տարողությամբ նոր ջրամբար և շինարարության պրոցեսում է 4000 խորա-
նարդ մետր տարողությամբ ջրամբարը։ Քաղաքի այգիները, կանաչապատ
տարածությունները, ծառերը, փողոցները և հրապարակներն այժմ ջրվում են
գետի ջրով։ Պահածոների, Հայէլեկտրո, Ավտոպահեստամասերի գործարան-
ները տեխնոլոգիական նպատակների համար օգտագործում են ջրանցքների և
ստորերկրյա ջրեր։ Մի շարք գործարաններում անց է կացվում նույն ջրի կըրկ-
նակի և եռակի օգտագործումը։

Սակայն քաղաքի գործարանների մեծ մասը տեխնոլոգիական նպատա-
կով օգտագործում է խմելու մաքուր ջուր, որը զգալի չափով դժվարացնում է
բնակչության ջրամատակարարումը։

Քաղաքային Սովետի միջոցառումների շնորհիվ այժմ մի շարք գործա-
րաններ նախաձեռնել են տեխնոլոգիական նպատակով օգտագործել ոչ խմելու
ջուրը, որով մեկ վայրկյանում կխնայվի 120 լիտր խմելու ջուր։ Շրջանային
կոմիտեները, տվյալ գործարանների և ձեռնարկությունների սկզբնական պար-
տիական կազմակերպությունները պետք է հետևեն, որպեսզի մինչև վերջ կեն-
սագործվեն այդ միջոցառումները։

Քաղաքի ջրամատակարարումը լիովին ապահովելու համար Երևանի պար-
տիական կազմակերպությունների խնդիրն է մոբիլիզացնել քաղաքի ողջ աշ-
խատավորությանը՝ ակտիվորեն մասնակցելու Կաթնաղբյուր—Երևան ջրմուղի
շինարարությանը, այն ժամանակից շուտ ավարտելու համար։ Միաժամանակ
պետք է իրականացնել քաղաքի յոթամյա պլանով նախատեսված ջրմուղի
ցանցի լայնացումը 258 կիլոմետրով, որի շնորհիվ բոլոր թաղամասերը ան-
խափան կերպով կմատակարարվեն ջրով։

Ներկայումս անբավարար է նաև քաղաքի կոյուղու ցանցի ծավալը. կո-
յուղուց հոսող ջրերը առանց համապատասխան մաքրման և ախտահանման
թափվում են Հրազդան և մասամբ Գետառ գետերը։ Հայաստանի Մինիստրնե-
րի Սովետն արդեն հաստատել է քաղաքի լրիվ կոյուղացման և կոյուղու ջրերի
մաքրման կառուցվածքների նախագիծը և նախահաշիվը։ Առաջիկա յոթ տա-
րում նախատեսված է քաղաքի կոյուղին հասցնել 310 կիլոմետրի, այժմվա 78
կիլոմետրի դիմաց։ Ավելի լուրջ աշխատանք է տարվելու հեղեղաջրերի և անձ-
րևաջրերի հեռացման գծով։ Կառուցվելու է քաղաքի հեղեղատար ցանցը, որը
վերջնականապես կլուծի Գետառի, Ջրվեժի, Ողջաբերդի, Օրդաձորի վտակ-

նոր հուների բարեկարգման և ամրացման գործը, որպեսզի հեղեղների ժա-
մանակ վնաս չպատճառի քաղաքի տնտեսությանը և բնակչությանը։

Վերջին տարիների ընթացքում զգալի աշխատանք է կատարված քաղաքի
բարեկարգման ուղղությամբ։ Այդ արդյունք է նրա, որ մի կողմից տարեց-
տարի ավելանում է կապիտալ ներդրումների ծավալը, իսկ մյուս կողմից՝ լայն
ծավալ է ստանում տեղական նախաձեռնությունը և քաղաքի ձեռնարկություն-
ների և ազգաբնակչության մասնակցությունը բարեկարգման աշխատանք-
ներին։

Ստալինյան շրջանի աշխատավորությունը պարտիայի շրջկոմի և աշխա-
տավորների դեպուտատների շրջսովետի նախաձեռնությամբ վերջին տարինե-
րում կառուցել է մի քանի խոշոր մագիստրալային փողոցներ՝ իրենց էլեկ-
տրատրանսպորտային ուղիներով։ Այդ օրինակին հետևեցին 26 Կոմիսարների
շրջանի պարտիական կազմակերպությունները և աշխատավորները։ Կարճ ժա-
մանակամիջոցում շրջանում կառուցվեց տրամվայի գիծը՝ մինչև Շահումյանի
անվան շրջկենտրոնը։ Կառուցվեց Շիրվանզադեի անվան և վերակառուցվեցին
Կրասնոգվարդեյսկայայի փողոցները և անցկացվեց 6 կիլոմետրից ավելի տրո-
լեյբուսի նոր գիծ՝ մինչև Կանաչ գործարանը։ Այդ նույն օրինակով զգալի աշ-
խատանք կատարեցին Կիրովյան, Սպանդարյան և Լենինյան շրջանների աշ-
խատավորները։

Այս տարի ավարտվելու է Գետառի և Զրվեժի վրա երկաթ-բետոնյա երկու-
ական և Ողջաբերդի ու Ստալինի անվան ջրանցքների վրա կառուցվող կա-
մուրջների շինարարությունը, որոնց կառուցումով հնարավորություն կստեղծվի
բացելու Լերմոնտովի անվան փողոցը, սկսած Մոսկովյան փողոցից մինչև Զա-
րենցի անվան փողոցը, Օրջոնիկիձեի և Հոկտեմբերյան պողոտայի միացումը
Ձերժինսկու անվան գործարանի և Ալրաղաց կոմբինատի հատվածում։
Ավարտվելու է տրամվայի գծի անցկացումը կայարանի հրապարակից Նոր-
Արեշի 13-րդ փողոցով մինչև Սովետաշեն տանող ճանապարհի հատումը։ Մո-
տակա տարիներին կավարտվի Մոսկովյան փողոցի և Գետառի աջափնյա ճա-
նապարհի կառուցումը, որոնք հնարավորություն կստեղծեն քաղաքային
տրանսպորտային ուղիների ճիշտ դասավորման և տրանսպորտի նպատակա-
հարմար օգտագործման համար։

Երևանի քաղաքային տնտեսության զարգացման յոթամյա պլանով նա-
խատեսված է ծածկապատված փողոցների և հրապարակների տարածությունը
1965 թվականին հասցնել 5 միլիոն քառակուսի մետրի (ներկայումս գոյություն
ունեցող 2,5 միլիոն քառակուսի մետրի դիմաց)։ Այդ պահանջում է գործնա-
կանորեն լուծել Երևանի պայմաններում ծածկի ամենալավ և էժան կոնստրուկ-
ցիաների ընտրությունը, որը մեծ նշանակություն ունի փողոցները ավելի եր-
կար ժամանակով շահագործելու համար։ Մեզ մոտ մինչև այժմ, փողոցների
ծածկապատման համար հիմնական նյութերն են՝ ասֆալտաբետոնը և գե-
տաքարերը։ Անհրաժեշտ է նշել, որ տարիներ առաջ քաղաքի մի շարք փո-
ղոցներ կառուցվել են տեխնիկական կանոնների մեծ խախտումներով։ Աս-
ֆալտաբետոնը կատարվել է ոչ ամուր հիմքերի վրա, իսկ շատ դեպքերում աս-
ֆալտաբետոնի համար չի ընտրվել կլիմայական պայմաններից ելնելով անհրա-
ժեշտ որակի բիտում, որի պատճառով կառուցված մի շարք փողոցներ ժամա-
նակից շուտ քանդվում են։ Բնական է, որ այդպիսի փողոցները չեն ապահո-
վում ծանր տիպի տրանսպորտային միջոցների շարժումը, ինչպես, օրինակ,



տրոլեյբուսը։ Առաջիկայում անհրաժեշտ է կատարել այդ փողոցների վերակա-
ռուցումը։ Հարկավոր է մեծ չափով սկսել և կիրառել գրանիտի ու բազալտի
կատարելագործված ծածկի տեսակները, որոնց պաշարները ռեսպուբլիկայում
անչափ մեծ են։ Քարածածկ փողոցները անհամեմատ երկարատև են դիմա-
նում, քան ասֆալտապատը, իսկ շահագործումը ավելի էժան է և հուսալի։

Քաղաքի և նրա շրջակայքի տարածությունները բնական քայքայումից
պահպանելու, կլիմայական պայմանները բարելավելու և քաղաքը գեղեցիկ
ձևավորելու համար կարևոր նշանակություն ունի նրա կանաչապատումը։ Երե-
վանի պարտիական ու սովետական կազմակերպությունները, նրա բնակիչները
վերջին տարիների ընթացքում զգալի աշխատանք են կատարել կանաչապատ-
ված տարածությունների ավելացնելու ուղղությամբ։ Եթե 1920 թվականին
քաղաքի հասարակական նպատակների համար կանաչ տարածությունները
կազմում էին 14 հեկտար, ապա այժմ այն հասել է 351 հեկտարի, իսկ եթե
հաշվելու լինենք քաղաքի շուրջը ստեղծված կանաչապատ գոտու մակերեսն
էլ, ապա այժմ քաղաքում կանաչապատ տարածությունները կազմում են 2310
հեկտար։

Վերջին 2—3 տարվա ընթացքում մեծ աշխատանք է կատարված կանա-
չապատման տարածությունների ընդլայնելու համար կայուն բազաներ և տըն-
կարաններ ստեղծելու ուղղությամբ։ Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետը
ընդառաջեց քաղաքային Սովետին և նոր հողամասեր հատկացրեց տնկարա-
նային և ծաղկի տնտեսություններ հիմնելու համար։ Կոտայքի շրջանի Կաթնա-
ղբյուր գյուղի 205 հեկտար տարածության վրա կազմակերպվում է քաղաքի
տնկարանային տնտեսությունը։ Քաղաքի կանաչապատման տրեստին հատ-
կացված է 60 հեկտար տարածություն Հրազդանի ափի հողերից, որտեղ
ստեղծվում է քաղաքի երկրորդ խոշոր ծաղկային տնտեսությունը։

Այս տարի ձեռնարկվեց Աբովյան փողոցի, Ստալինյան պողոտայի, Ազիզ-
բեկովի ու ՍԿ բանավանի հրապարակների և մի շարք փողոցների հատումների
ծաղկապատումը։ Նախատեսվում է հետագա տարիներին այդ աշխատանք-
ներն ավելի ծավալել և քաղաքի մի շարք մագիստրալային փողոցներում,
Ստալինյան պողոտայում տրամվայի գիծը հանելուց հետո, Հոկտեմբերյան
պողոտայում և այլն ստեղծել ծաղկապատված գազոններ (սիզամարգ)։

Չնայած այս ամենին, քաղաքի կանաչապատման գործում դեռևս գոյու-
թյուն ունեն լուրջ թերություններ։ Քաղաքը մինչև այժմ չունի կանաչապատման
և ծառաբուծման գլխավոր հատակագիծ, որը խիստ կերպով ազդում է ծա-
ռատեսակների ընտրության և կանաչապատվող տարածությունների ճիշտ
պլանավորման վրա։ Դեռևս անբավարար է կազմակերպված ծառերի խնամքը
և հիվանդությունների բուժումը։ Շինարարական կազմակերպություններն ան-
խնա վերաբերմունք են ցուցաբերում շինարարական հրապարակներին կից
ծառաստանների նկատմամբ։ Ծառերի փչացման դեպքեր տեղի են ունենում
նաև առանձին քաղաքացիների կողմից, որոնք ոչ բոլոր դեպքերում է, որ հարկ
եղած պատիժն են կրում։

Հաշվի առնելով քաղաքի կանաչապատման և ծաղկապատման աշխա-
տանքների կարևորագույն նշանակությունը, այս տարի պարտիայի քաղաքա-
յին կոմիտեի բյուրոն և աշխատավորների դեպուտատների քաղաքային Սովե-
տը մշակեցին մի շարք միջոցառումներ այդ աշխատանքները բարելավելու և
կանաչապատ տարածություններն ավելացնելու համար այն հաշվով, որպես-

վի հասարակական նպատակների համար կանաչ տարածությունների մակերեսը 351 հեկտարից հասցվի մինչև 900 հեկտարի, այսինքն՝ ապահովվի սոցիալիստական քաղաքի համար նորմաներով նախատեսված մեկ շնչին պահանջվող 20 քառակուսի մետր կանաչապատ տարածություն: Պարտիական կազմակերպությունները պետք է լայն բացատրական և պրակտիկ աշխատանք կազմակերպեն աշխատավորության մեջ ծառի և ծաղկի կուլտուրա պրոպագանդելու, ազգաբնակչությանը լայն մասնակից դարձնելու կանաչ մասիվներ ստեղծելու և նրա խնամքը ուժեղացնելու գործին:

Չնայած նրան, որ խոշոր քայլեր են կատարված Երևանի սանիտարական և մաքրության գործը բարելավելու ուղղությամբ, այնուամենայնիվ այս բնագավառում դեռևս թերություններ կան: Աշխատավորների դեպուտատների շրջանային Սովետների ենթակայության առկա տեխնիկական միջոցները հնարավորություն են տալիս, որպեսզի քաղաքի սանիտարական դրությունը պահվի բարվոք վիճակում: Մինչդեռ այդ հնարավորություններն էլ լրիվ չեն օգտագործվում: Դեռևս ցածր է փողոցները մաքրողների աշխատանքի կուլտուրան, վատ են աշխատում բնակվարչությունների դռնապանները, հիմնարկ-ձեռնարկությունների, շուկաների և խանութների մաքրողները: Քաղաքի սանիտարական վիճակի բարելավումը ամբողջ ազգաբնակչության գործն է, որը ավելի լավ հիմքերի վրա դնելու համար անհրաժեշտ է գործի դնել դեպուտատական ակտիվը և ավելի ուժեղացնել քաղաքի սանիտարական սեկտորների աշխատանքը:

Քաղաքի տնտեսության համար պահանջվող էլեկտրաէներգիան ստացվում է բավարար կերպով, սակայն էլեկտրաէներգիայի էֆեկտիվ օգտագործման տեսակետից շատ թերություններ կան: Թույլ է պայքարը էլեկտրաէներգիայի շռայլումների և կորուստների դեմ: Քաղաքում օգտագործվող էլեկտրալուսավորման սիստեմն էֆեկտիվ չէ, որի հետևանքով էլ լույսի մեծ մասը ցրվում է, քան թե օգտագործվում փողոցների լուսավորման համար: Դեռևս քիչ են օգտագործվում ցերեկային լույսի լամպերը, աղքատիկ է լուսավոր ռեկլամը, քաղաքի հրապարակների լուսավորումը անբավարար է և այլն: Նախատեսվում է մոտակա տարիներին վերացնել այս բոլոր թերությունները և լուսավորման գործում օգտագործել առավել էֆեկտիվ և կատարելագործված ձևեր և միջոցներ:

Երևանի կյանքում խոշոր իրադարձություն է քաղաքի գազիֆիկացիայի հարցը: Կառավարության որոշմամբ Երևանը գազ պետք է ստանա 1960 թվականին: Արդեն սկսված են Ղարադաղ—Աղստաֆա—Երևան գազամուղի շինարարական աշխատանքները: Որպեսզի քաղաքը ստանա գազ, անհրաժեշտ է նախօրոք կատարել խոշոր նախապատրաստական աշխատանք: Ներկայումս Կիև քաղաքում կատարվում են Երևանի գազիֆիկացիայի նախագծային աշխատանքները, որոնք կավարտվեն այս տարվա հոկտեմբեր ամսին: Այդ նախագծի հաստատումից հետո անմիջապես սկսվելու է շինարարությունը: Արդեն կազմակերպվել է «Գազիֆիկացիա» շինարարական տրեստը, որը մոտ ժամանակներս ձեռնամուխ կլինի շինարարության նախապատրաստական աշխատանքներին:

Մինչև բնական գազի ներմուծումը աշխատանքներ են տարվում այս տարվանից բնակչության որոշ մասին հեղուկ գազով սպասարկելու ուղղությամբ: Հեղուկ գազը փոխադրվելու է Բաքվից, հատուկ սարքավորումներով:



Միաժամանակ Երևանում այս տարի սկսվում է հեղուկ գազի կայանի շինարարությունը, որտեղ պետք է լցման ենթարկվեն հեղուկ գազի բալոնները: Պլանավորված է մինչև այս տարվա վերջը 500 բնակարաններում տեղադրել գազի սարքավորումներ, նրանց քանակը մինչև 1960 թվականը հասցնելով 6000-ի:

Պարտիական կազմակերպություններն իրենց ամենօրյա հսկողության տակ պետք է վերցնեն քաղաքի գազիֆիկացիայի աշխատանքները, բոլոր միջոցները ձեռնարկեն, որպեսզի քաղաքի տնտեսությունը լավ նախապատրաստվի բնական գազի ընդունմանը:

Վերջին մի քանի տարիների ընթացքում կառուցվել և շահագործման են հանձնվել տասնյակ կիլոմետրեր տրամվայի և տրոլեյբուսի գծեր, բացվել են տրամվայի, տրոլեյբուսի և ավտոբուսի բազմաթիվ երթուղիներ, քաղաքի տրանսպորտը համալրվել է նոր շարժական կազմով: Մոտակա տարիներում կկառուցվեն Նոր Արեշի, Արտաշատի խճուղու, Կոմիտասից մինչև Նոր Զեյթունի տրամվայի գծերը: Այս տարի ձեռնարկվելու է տրոլեյբուսի գծի շինարարությունը Կիրովի, Չարենցի և Նար-Դոսի փողոցներում:

Տրանսպորտային պարտիական կազմակերպությունները դեռևս չեն կարողացել վերացնել տրանսպորտի աշխատանքի թերությունները, չկա տրանսպորտի տարբեր տեսակների համաձայնեցված շարժման գրաֆիկ: Ցածր է սպասարկման կուլտուրան, հաճախ են լինում խափանումների դեպքեր, չի վերացված անտոմս երթևեկությունը: Անհրաժեշտ է, որ պարտիական կազմակերպությունները վերացնեն այս թերությունները և ապահովեն քաղաքային տրանսպորտի կանոնավոր աշխատանքը:

Յուրաքանչյուր տարի խոշոր գումարներ են տրամադրվում կուլտուր-լուսավորական օբյեկտների շինարարության համար: Այժմ քաղաքում գործում են 86 հանրակրթական, 29 բանվորա դպրոցներ, 2 գիշերօթիկ, 100-ից ավելի մանկապարտեզներ և մանկամսուրներ: Սակայն դպրոցական շենքերի պակասության պատճառով մի շարք դպրոցներում ստիպված են երկհերթի պարապել: Այս տարի քաղաքում շահագործման կհանձնվեն 3 դպրոցական, 2 հիվանդանոցային, 20 նախադպրոցական հաստատությունների շենքեր: Այժմ կուլտուր-լուսավորության օբյեկտների շինարարության գծով ձեռնարկվում են այնպիսի միջոցներ, որպեսզի առաջիկա տարիների ընթացքում բոլոր դպրոցներում ապահովվեն մեկ հերթի պարապմունքները: Նախատեսվում է մինչև 1965 թվականը կրկնապատկել նախադպրոցական հաստատությունների ցանցը, ավելացնել բուժ. հիմնարկների կառուցումը, որպեսզի ապահովվի բնակչության քանակին համապատասխան նորմաներով պահանջվող մահճակալների քանակը:

Միջոցներ են ձեռնարկվում քաղաքի կուլտուրական հիմնարկների ցանցի ընդլայնման և նպատակահարմար տեղադրման ուղղությամբ: Մոտակա տարիներում Երևանում կառուցվելու են 10 կինոթատրոն, այդ թվում 1600 տեղանոց պանորամային կինոթատրոնը, 10 գրադարան, 2 կուլտուրայի տուն: Մոտ ժամանակներս սկսվելու է Սունդուկյանի անվան Հայկական պետական դրամատիկական թատրոնի նոր շենքի կառուցումը: Լուրջ ուշադրություն է հատկացվելու սպորտ հրապարակների, սպորտային բազաների, լողարանների ցանցի ընդարձակմանը: Վերջապես լուծվելու է Կոմերիտմիության պարկի բարեկարգման հարցը: Մինչև 1965 թվականը կավարտվեն Ռեսպուբլիկայի

կան և «Սպարտակ» ստադիոնների վերակառուցման աշխատանքները, կավարտվեն նաև 35 հազար տեղանոց նոր ստադիոնի շինարարական աշխատանքները (Հրազդան գետի աջ ափին), ինչպես նաև մանկական ստադիոնը՝ Ստալինյան շրջանում և սպորտային պարկի շինարարական աշխատանքները՝ 26 Կոմիսարների անվան շրջանում։

Չնայած նրան, որ վերջին ժամանակներս լրացուցիչ շահագործման են հանձնվել նոր բաղնիքներ, վարսավիրանոցներ, կենցաղային սպասարկման արհեստանոցներ, կոլտնտեսականների հյուրանոցը, մոտ ժամանակներս շարք մտավ Լենինի հրապարակի վրա կառուցված «Արմենիա» հյուրանոցը, բայց այդ բոլորը դեռևս չեն կարողանում լիովին ապահովել քաղաքի ազգաբնակչության և դրսից հյուր եկած մարդկանց պահանջը։

Քաղաքի բնակչության սպասարկման համար նախատեսված է կառուցել 4 նոր բաղնիք-լվացքատուն՝ Ստալինյան, Կիրովյան և Լենինյան շրջաններում, լայնացնել բնակչության կենցաղային սպասարկման արհեստանոցների ցանցը. դրան զուգընթաց բարելավել գործող բաղնիքների, լվացքատների, վարսավիրանոցների, կենցաղային սպասարկման արհեստանոցների աշխատանքը։

Անցյալ տարիներում բավականին հարստացել են քաղաքի կապի միջոցները՝ 26 Կոմիսարների անվան և Ստալինյան շրջանների հեռախոսային նոր ենթակայանների կառուցմամբ։ Այս տարվա վերջին քաղաքի հեռախոսային ցանցը կունենա 14 հազար հեռախոսային կետ։ Երևանը լրիվ ռադիոֆիկացված է, կառուցվել է հեռուստատեսության կայանը։ Այժմ միջոցներ են ձեռնարկվում՝ մինչև 1960 թվականը հեռախոսային կետերի թիվը հասցնել 20 հազարի։ Նախատեսվում է 1959 թվականին սկսել հեռուստատեսության ստուդիայի շինարարական աշխատանքը և հետագայում անցկացնել միջանկյալ մի քանի ռադիոռելեի գծեր, որոնք հնարավորություն կտան ընդունելու ոչ միայն Երևան քաղաքի հեռուստատեսության կայանի հաղորդումները, այլ սկզբում Բաքվի, Թբիլիսիի, իսկ հետագայում Մոսկվայի և Մոսկվայի միջոցով երկրի մյուս քաղաքների հաղորդումները։

Երբեք չբավարարվելով նվաճումներով՝ պարտիական կազմակերպությունները պետք է պայքարեն է՛լ ավելի բարձրացնելու պետական և պարտիական կարգապահությունը։ Լայն մասսայական, քաղաքական բացատրական աշխատանք ծավալեն աշխատավորության շրջանում, նրանց ակտիվ մասնակից դարձնելու քաղաքի բարեկարգման աշխատանքներին։

Երևան քաղաքի բարգավաճման մեծ գործի հաջողության գլխավոր նախապայմանը պարտիական և սովետական կազմակերպությունների համառ ու սիստեմատիկ պայքարն է՝ վերադաս պարտիական օրգանների որոշումների ճիշտ կենսագործման համար։

Ամեն կասկածից վեր է, որ երևանցիները մեծ եռանդով և սիրով կկատարեն պարտիայի ու կառավարության առաջադրանքները՝ մոտակա տարիներին մեր ռեսպուբլիկայի մայրաքաղաքը ավելի ծաղկուն, ավելի բարգավաճ դարձնելու համար։

---

# ՌՈՒՄԻՆ ԺՈՂՈՎՐԴԻ ԱԶԳԱՅԻՆ ՏՈՆԸ

Հ. ԱԶԱՏՅԱՆ

Այս տարվա օգոստոսի 23-ին ռումին ժողովուրդը տոնում է իր ազգային տոնը՝ հիտլերյան զավթիչների արյունոտ տիրապետությունից Ռումինիայի ազատագրման 14-րդ տարեդարձը։ Ֆաշիստական Գերմանիայի դեմ Սովետական Բանակի տարած պատմական հաղթանակի շնորհիվ ստեղծվեց Ռումինական Ժողովրդական Ռեսպուբլիկան։ Ռումին ժողովուրդը հնարավորություն ստացավ կառուցելու իր կյանքը սեփական ցանկությամբ և այնպիսի խոր դեմոկրատական վերափոխումներ կատարեց, որոնք իրենց նշանակությամբ հավասար են ռևոլյուցիոն հեղաշրջման։ Կարճ ժամանակում լուծվեցին բուրժուադեմոկրատական ռևոլյուցիայի խնդիրները և անհրաժեշտ պայմաններ ստեղծվեցին սոցիալիզմի կառուցման համար։

Աշխատավորության լարված գործունեության շնորհիվ անցյալի գիրկն անցավ հին բոյարական Ռումինիան՝ օտարերկրյա մոնոպոլիաների կողոպուտի և ճնշման օբյեկտը, ագրարային-հումքային կցորդը և իմպերիալիստական պետությունների կիսագաղութը։ Պայքարում փորձված իր ավանգարդի՝ Ռումինիայի Բանվորական պարտիայի ղեկավարությամբ աշխատավորները քաղաքական, տնտեսական և սոցիալիստական խոր բարեփոխություններ իրականացրին, որոնք արմատապես փոխեցին երկրի տեսքը։ Այն վերածվեց ինդուստրիալ-ագրարային պետության՝ առաջավոր արդյունաբերական տեխնիկայով։ Ռումինիան դարձավ սուվերեն, անկախ ժողովրդա-դեմոկրատական պետություն, սոցիալիզմի և խաղաղության հզոր լագերի բաղկացուցիչ մասը։

Հենվելով Սովետական Միության և սոցիալիստական լագերի մյուս երկրների աջակցության և անշահախնդիր օգնության վրա, այժմ Ռումինիան վստահորեն ընթանում է դեպի սոցիալիզմ։

***

1944 թվականի օգոստոսի 23-ին Ռումինիայում տապալվեց Անտոնեսկուի ֆաշիստական դիկտատուրան։ Սովետական Բանակի կողմից Ռումինիան ֆաշիզմի տիրապետությունից ազատագրելը նոր դարագլուխ բաց արեց երկրի պատմության մեջ։ Դա անհրաժեշտ պայմաններ ստեղծեց դեմոկրատական շարժման զարգացման համար։ 1945 թվականի մարտի 6-ին, ժողովրդական մասսաների քաղաքական ակտիվության հետագա աճի պայմաններում, Ազգային-դեմոկրատական ճակատի մեջ միավորված դեմոկրատական պարտիաներն ու կազմակերպությունները, մի ճակատ, որի ոգին կոմունիստական պարտիան էր, կազմեցին առաջին դեմոկրատական կառավարությունը՝ Պետրու Գրոզայի գլխավորությամբ, որը հետագայում ընտրվեց Ազգային մեծ ժողովի նախագա-

հության նախագահ։ Ժողովրդական մասսաները լիովին պաշտպանեցին կառավարության միջոցառումները։ Այդ պաշտպանության վառ արտահայտությունը պառլամենտի առաջին ազատ ընտրություններն էին (1946 թվականի նոյեմբեր), որոնց ժամանակ դեմոկրատական պարտիաների բլոկն ստացավ բոլոր ընտրողների ձայների 80 տոկոսը։

Երկրում խոշոր վերափոխությունների իրականացումը հնարավոր դարձավ այն առաջատար դերի շնորհիվ, որ նվաճել էր բանվոր դասակարգը նոր Ռումինիայի քաղաքական կյանքում։ Բանվոր դասակարգի առաջատար դերն է՛լ ավելի աճեց, երբ լիկվիդացվեց բանվորական շարժման մեջ եղած պառակտումը։ 1948 թվականի փետրվարին կոմունիստական և սոցիալ-դեմոկրատական պարտիաների միացյալ համագումարում ստեղծվեց բանվոր դասակարգի միասնական պարտիան՝ Ռումինիայի Բանվորական պարտիան։

1948 թվականի մարտի 28-ին ռումինական ժողովուրդն ընտրեց Ազգային մեծ ժողովի իր ներկայացուցիչներին։ Ռումինիայի Բանվորական պարտիայի նախաձեռնությամբ ընտրությունների նախօրեին ստեղծված ժողովրդական դեմոկրատիայի ճակատը միավորեց երկրի բոլոր դեմոկրատական կազմակերպություններին։ Ընտրությունների ժամանակ աշխատավորական մասսաները միահամուռ կերպով պաշտպանեցին ժողովրդական դեմոկրատիայի ճակատի թեկնածուներին, որոնք ստացան բոլոր ձայների 92,3 տոկոսը։

Ռումինիան ժողովրդա-դեմոկրատական ռեսպուբլիկա է։ Նրա կոնստիտուցիան սոցիալիզմ կառուցող երկրի հիմնական օրենքն է։ Կոնստիտուցիայի առաջին և երկրորդ կետերը նշում են, որ Ռումինական ժողովրդական Ռեսպուբլիկան միասնական, անկախ պետություն է, որը ծնվել է ֆաշիզմի և ռեակցիայի դեմ բանվոր դասակարգի ղեկավարությամբ աշխատավոր մասսաների մղած պայքարի հետևանքով։ Կոնստիտուցիայում սոցիալ-տնտեսական կառուցվածքի վերաբերյալ արձանագրված է, որ Ռումինական ժողովրդական Ռեսպուբլիկայում արտադրության միջոցները պատկանում են կամ պետությանը, որպես համաժողովրդական ունեցվածք, կամ կոոպերատիվ կազմակերպություններին, կամ առանձին մասնավոր անձանց։

«Հողի ընդերքը,— ասված է կոնստիտուցիայում,— հանքավայրերը, բնական էներգիայի աղբյուրները, երկաթուղային, ջրային և օդային տրանսպորտը, կապի միջոցները պատկանում են պետությանը, կազմելով հանրային սեփականություն»։ Աշխատանքը հռչակվում է պետության տնտեսական կյանքի հիմնական գործոնը, Ռեսպուբլիկայի յուրաքանչյուր քաղաքացու պատվավոր պարտականությունը։ Կոնստիտուցիան երաշխավորում է քաղաքացիների հիմնական իրավունքները՝ աշխատանքի, հանգստի, կրթության, նյութական ապահովության իրավունքը ծերության ժամանակ և աշխատունակությունը կորցնելու դեպքում։ Նա ժողովրդի համար ապահովում է խոսքի, մամուլի, ժողովների, կազմակերպությունների ազատություն, խղճի ազատություն։ Կոնստիտուցիան սահմանում է պետական իշխանության մարմինների կառուցվածքը։

Ռումինական ժողովրդական Ռեսպուբլիկայի պետական իշխանության բարձրագույն մարմինը Ազգային մեծ ժողովն է, որն ընտրվում է 4 տարի ժամանակով։ Պետական իշխանության բոլոր մարմինների ընտրության իրավունքից օգտվում են բոլոր այն քաղաքացիները, որոնց 18 տարին լրացել է, անկախ նրանց սեռից, ազգությունից, ցեղից, դավանանքից կամ կրթությունից։



Ընտրվելու իրավունք ունեն այն քաղաքացիները, որոնք հասել են 23 տարեկանի։ Օրենքն ընտրական իրավունքներից զրկում է այն անձանց, որոնք դատական օրգանների որոշմամբ չեն օգտվում քաղաքացիական իրավունքից։

Ազգային մեծ ժողովը միակ օրենսդրական մարմինն է։ Ազգային մեծ ժողովը ընտրում է Ազգային մեծ ժողովի նախագահություն, կազմում է կառավարություն։ Նա վերահսկում է կառավարության գործունեությունը, լսում է նրա հաշվետվությունը, վճռում է պատերազմի և խաղաղության հարցերը, ում ներում շնորհելու իրավունք։ Ազգային մեծ ժողովի նախագահությունը հրավիրում է Ազգային մեծ ժողովի հերթական և արտահերթ սեսիաները, օրենքներ է սահմանում, Ռումինիան ներկայացնում է միջազգային հարաբերություններում, կառավարության առաջադրմամբ միջազգային պայմանագրերը ռատիֆիկացիայի և դենոնսացիայի է ենթարկում, երկրի վրա հարձակվելու դեպքում հայտարարում է պատերազմական վիճակ, ընդհանուր կամ մասնակի մոբիլիզացիա։ Երկրի բարձրագույն գործադիր կարգադրիչ մարմինը կառավարությունն է։ Այն կազմված է մինիստրների խորհրդի նախագահից, նախագահի տեղակալներից և մինիստրներից։ Մինիստրների խորհուրդն իր գործունեությունների համար պատասխանատու և հաշվետու է Ազգային մեծ ժողովի առաջ, իսկ Ազգային մեծ ժողովի սեսիաների միջև ընկած ժամանակամիջոցում՝ նրա նախագահության առաջ։

Պետական իշխանության բոլոր տեղական մարմինները կոչվում են տեղական ժողովրդական խորհուրդներ։ Սրանք իրականացնում են սոցիալիստական կարգերի սկզբունքը, ապահովում ժողովրդական մասսաների լայն մասնակցությունը պետական կառավարման գործին։ Ժողովրդական խորհուրդները կառուցված են դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքով։ Նրանք որպես իշխանության ամենադեմոկրատական մարմիններ, ընտրվում են ժողովրդի կողմից, հաշվետու են ժողովրդի առաջ և կարող են ամեն ժամանակ փոխվել ժողովրդի կամքով։ Ժողովրդական խորհուրդները պրոլետարիատի դիկտատուրայի ֆունկցիաներ կատարող ժողովրդական դեմոկրատիայի կարգերի քաղաքական հիմքն են, պրոլետարիատի դիկտատուրայի մարմինները։

Ռումինիայի բնակչության ընդհանուր թիվը (1956 թվականի տվյալներով) կազմում է 17,5 միլիոն մարդ։ Բնակչության ճնշող մեծամասնությունը կազմում են ռումինները։ Ռումիններից հետո ամենաբազմաքանակը հունգարներն են. կան նաև գերմանացիներ, ուկրաինացիներ, հայեր, հրեաներ և ազգային այլ փոքրամասնություններ։

Ռումինական ժողովրդական Ռեսպուբլիկայի կոնստիտուցիան վերացնելով նախկին բոլոր սահմանափակումները, իրավունքների լիակատար հավասարություն է երաշխավորում երկրում բնակվող բոլոր ազգությունների համար։ Սոցիալիզմի ուղիով երկրի հաջող զարգացումը ուղեկցվում է բնակչության սոցիալական կազմի արագ փոփոխմամբ։ Լիովին վերացված է կալվածատերերի դասակարգը, չկա այլևս կապիտալիստների դասակարգն արդյունաբերության և ֆինանսների բնագավառում։ Արդյունաբերության զարգացմանը զուգընթաց արագորեն աճում են տեխնիկական ինտելիգենցիան և բանվոր դասակարգը։ Գյուղի սոցիալիստական վերափոխության շնորհիվ լուրջ տեղաշարժեր են կատարվում նաև գյուղական բնակչության կազմում։

Կուլտուրական զարգացման տեսակետից Ռումինիան անցյալում հետա-

մնաց երկիր էր, անգրագետ և կիսագրագետ բնակչության հսկայական թվով։ Ռումինական շատ գյուղերի բնակչությունը համատարած կերպով անգրագետ էր։

Լուսավորության ասպարեզում Ռումինական Բանվորական պարտիայի և կառավարության ձեռնարկած միջոցառումները խիկույն ևեթ տվեցին իրենց արդյունքները։ Բանվորական կենտրոններում և օկրուգների գլխավոր քաղաքներում մտցված է 7-ամյա ընդհանուր պարտադիր ուսուցում։ Հանրակրթական 10-ամյա միջնակարգ դպրոցներում (8—10 դասարան) սովորում են մոտավորապես 100 հազար աշակերտ։ 7-ամյա դպրոցի բազայի վրա ստեղծված ավելի քան 400 տեխնիկական դպրոցներ պատրաստում են բարձրորակ բանվորներ։ 1955—1956 ուսումնական տարում 42 բուհերում սովորում էին 60347 ուսանող։

***

Մինչև ժողովրդա-դեմոկրատական կարգերի հաստատումը Ռումինիայի ամբողջ էկոնոմիկայի կախյալ վիճակը օտարերկրյա կապիտալից և ֆեոդալական ուժեղ մնացուկների առկայությունը անհաղթահարելի խոչընդոտ էին երկրի տնտեսական զարգացման համար։ Ռումինական ազգային արդյունաբերությունը դատապարտված էր լճացման և հետամնացության։ Հսկայական շահույթներ դուրս կորզելով երկրից, օտարերկրյա կապիտալիստները ձգտում էին այն պահպանել որպես իրենց հումքային և գյուղատնտեսական կցորդը։ Գյուղատնտեսության մեջ գերակշռում էր կալվածատիրական խոշոր հողատիրությունը, որ հիմնված էր գյուղացիական աշխատանքի դաժան շահագործման վրա։ Ռումինական գյուղի համար տիպիկ էին արտադրության պրիմիտիվ գործիքները, հողի ցածր բերքատվությունը։ Ժողովրդական տնտեսությունը վերջնական անկման հասավ Ռումինիայում հիտլերականների տիրապետության և հակասովետական պատերազմում երկրի մասնակցության հետևանքով։

Արդեն 1947 թվականին կառավարությունն իրականացրեց մի շարք կարևոր միջոցառումներ, որոնք լուրջ փոփոխություններ մտցրին երկրի տնտեսական դրության մեջ։ Դրանցից կարևորագույններն էին՝ ազգային բանկի պետականացումը, դրամական ռեֆորմը, արդյունաբերական 14 վարչությունների ստեղծումը, որոնք ըստ ճյուղերի միավորեցին հիմնական արդյունաբերական ձեռնարկությունները և պետությանը հնարավորություն տվին ղեկավարելու և վերահսկելու մասնավոր ձեռնարկությունների արդյունաբերական և առևտրական գործունեությունը։

Տնտեսական դրության մեջ վճռական բեկում ձեռք բերվեց 1948 թվականին, երբ ռումինական ժողովուրդն իր ճանապարհից վերացրեց միապետությունը և Ռումինիան հռչակվեց Ժողովրդական Ռեսպուբլիկա։ Կառավարությունից վտարվեցին շահագործող դասակարգերի վերջին ներկայացուցիչները, ջախջախվեցին բուրժուական, պրոիմպերիալիստական պարտիաները։ 1948 թվականի ամառը ազգայնացվեցին արդյունաբերությունը, տրանսպորտը, բանկերը և ապահովագրական ընկերությունները։ Դա ոչնչացրեց ազգային բուրժուազիայի տնտեսական հիմքը և վերացրեց օտարերկրյա կապիտալի ազդեցությունը։ Այս բոլոր բարեփոխումները անհրաժեշտ պայմաններ ստեղծեցին պլանային տնտեսություն վարելու համար։



Արտադրության հիմնական միջոցներն ազգայնացվելուց հետո, պետական սեկտորը գերիշխող դարձավ արդյունաբերության մեջ և պետական գյուղատնտեսական ֆերմաների, կոլեկտիվ տնտեսությունների, կոոպերացիայի և երկրում զարգացող պետական առևտրի հետ միասին վերածվեց հզոր սոցիալիստական սեկտորի։ Պետական սեկտորի հետ մեկտեղ Ռումինիայի էկոնոմիկայում կա նաև մանր ապրանքային սեկտոր, որն առաջին հերթին ներկայացնում է գյուղացիության հիմնական մասսան ու տնայնագործներին, և կապիտալիստական սեկտոր՝ հանձինս կուլակության և առևտրական բուրժուազիայի։

Ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման, այն սոցիալիստական հիմունքներով վերակառուցելու համար մղած իրենց պայքարում Ռումինիայի աշխատավոր մասսաները հենց սկզբից հենվեցին Սովետական Միության անշահախնդիր օգնության վրա, որի բարենպաստ ազդեցության շնորհիվ Ռումինիայի արդյունաբերական արտադրանքի ծավալը արդեն 1948 թվականի սկզբներին հասավ մինչպատերազմյան մակարդակին, իսկ արտադրանքի առանձին տեսակների՝ չուգունի, պողպատի, երկաթահանքի, բնական այրվող գազի բնագավառում այդ մակարդակը գերազանցվեց։ Արդյունաբերության ազգայնացումից հետո մշակված 1949 թվականի առաջին պետական պլանը խնդիր դրեց ամրապնդել արդյունաբերության վերականգնման ասպարեզում ձեռք բերված առաջին հաջողությունները և ապահովել նրա հետագա աճը։ Պլանում հատուկ ուշադրություն էր դարձվում արդյունաբերության վճռական ճյուղի՝ ծանր և մետաղամշակման արդյունաբերության զարգացմանը։ Այդ խնդիրները հաջողությամբ իրագործվեցին և 1949 թվականի պլանը կատարվեց 108 տոկոսով։ Դա պայմաններ ստեղծեց արդյունաբերության հետագա վերելքի համար, որն արտացոլվեց 1950 թվականի պլանում, որը դրեց էներգետիկ և արդյունահանող արդյունաբերության, նավթի և ածխի արդյունահանման ամրապնդման և ընդլայնման, ծանր և հատկապես մեքենաշինական արդյունաբերության հետագա զարգացման կարևորագույն խնդիրները։ Պլանը նախատեսում էր արդյունաբերական զարգացման տեսակետից հետամնաց մարզերի տնտեսության վերելք՝ ընդերքի հետախուզման ու շահագործման, նոր ձեռնարկությունների ստեղծման և համապետական նշանակություն ունեցող մի շարք հասարակական աշխատանքների կատարման միջոցով։

1950 թվականի պետական պլանի կատարումը պայմաններ նախապատրաստեց 1951—1955 թթ. առաջին հնգամյա պլանի մշակման համար, ըստ որի պետք է ստեղծվեր զանազան ճյուղերի արտադրության համար արդյունաբերական հզոր բազա, զարգացվեր սև մետալուրգիան, զգալի չափով ընդլայնվեր էներգետիկ բազան։ Այնուհետև պլանը նախատեսում էր գյուղատնտեսական մեքենաների արտադրության զարգացում և արդյունահանող ու մշակող ամբողջ արդյունաբերության արագ աճ։ Այդ պլանի իրականացման վերջին տարում նախատեսվում էր արդյունաբերական արտադրանքի ավելացում 2 անգամ՝ 1950 թվականի համեմատությամբ։

Արդյունաբերական արտադրանքի տեսակարար կշիռը 1950 թվականի սկզբներին արդեն կազմում էր ժողովրդական տնտեսության ընդհանուր արտադրանքի 63 տոկոսը։ 1955 թվականին արդյունաբերական արտադրանքը նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ արդեն կազմում էր 290

տոկոս: 1956 թվականին արդյունաբերության համախառն արտադրանքը 1955 թվականի համեմատությամբ աճեց 11 տոկոսով, այդ թվում արտադրության միջոցների արտադրությունը՝ 14 տոկոսով: 1956 թվականին քարածխի հանույթը 1955 թվականի համեմատությամբ աճեց 6 տոկոսով, նավթինը՝ 3 տոկոսով, չուգունի և պողպատի ձուլումը՝ 2 տոկոսով, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 13 տոկոսով, ցեմենտի արտադրությունը՝ 10 տոկոսով, կոշիկեղենինը՝ 14 տոկոսով, շաքարինը՝ 16 տոկոսով:

1956 թվականին էներգիայի ընդհանուր արտադրության մեջ նավթը կազմում էր 30 տոկոս, բնական գազը՝ 40 տոկոս, քարածուխը՝ 20 տոկոս, հիդրոէներգիան՝ 8 տոկոս: 1956 թվականին գործադրության մեջ դրվեցին Պարոշենի ջերմաէլեկտրակայանը՝ 150 հազար կիլովատ կարողությամբ և Վեյսուպի հիդրոէլեկտրակայանը: Զարգանում է Վալյաժիալուի քարածխային ավազանը, որը տալիս է արդյունահանվող ածխի մեծ մասը և Բանատյան ավազանը: Պրախովի շրջանը տալիս է նավթի հանույթի հիմնական մասը: 1956 թվականին Մոլդովի շրջանում կառուցվել է երկրի խոշորագույն նավթաթորման գործարանը: Տրանսիլվանիայում սկսել են շահագործվել բնական գազի խոշոր հանքավայրեր, ընդարձակվել է Խունեդոարի մետալուրգիական կոմբինատը: 1956 թվականին շարք մտավ երկրի խոշորագույն հրահալոցը 700 խորանարդ մետր ծավալով, կառուցվում է մարտենյան ցեխ՝ տարեկան 700 հազար տոննա արտադրողականությամբ: Ռոմանում և Գալացում կառուցված են գլանման գործարաններ: 1951—1955 թթ. մեքենաշինական արտադրանքի ծավալն ավելացավ 4 անգամ: Ստալինում տրակտորի գործարանը բաց է թողնում անիվային և թրթուրային տրակտորներ: Ռումինիան (քաղաք Ստալին) սկսել է արտադրել բեռնատար ավտոմեքենաներ: Շարունակվում է Յասիի պենիցիլինի գործարանի նոր ցեխերի կառուցումը: Ժելավե քաղաքում կառուցվում է սինթետիկ կաուչուկի և ռետինե գործվածքեղենի կոմբինատ: Կոնստանցայում կառուցվում է սուպերֆոսֆատի և ծծմբաթթվի արտադրության գործարան: Բուխարեստում և այլ քաղաքներում զարգանում է բամբակի գործվածքեղենի արդյունաբերությունը:

Ռումինիայի գյուղատնտեսության առաջատար ճյուղը հողագործությունն է, որը երկրորդ համաշխարհային պատերազմի նախօրյակին տալիս էր ազգային եկամտի մոտ 37 տոկոսը, իսկ անասնապահությունը տալիս էր միայն մոտ 21 տոկոսը: Եգիպտացորենը և ցորենը ռումինական հողագործության հիմնական կուլտուրաներն են: Լավ բերքի դեպքում Ռումինիան արտահանում է զգալի քանակությամբ ցորեն և եգիպտացորեն: Երկրորդ համաշխարհային պատերազմի նախօրյակին՝ 1938 թվականին, Ռումինիան ուներ 1600 հազար ձի, 3600 հազար գլուխ խոշոր եղջերավոր անասուն, 10200 հազար ոչխար և այծ, 2700 հազար գլուխ խոզ և այլն: Երկրորդ համաշխարհային պատերազմի հետևանքով անասունների գլխաքանակը խիստ կրճատվեց, սակայն այն այժմ արագորեն աճում է և արդեն զգալիորեն գերազանցել է նախապատերազմյան մակարդակը: 1955 թվականին երկրում կար 4,8 միլիոն գլուխ խոշոր եղջերավոր անասուն, 11,1 միլիոն ոչխար-այծ և 2 միլիոն գլուխ խոզ:

Մինչև ժողովրդական կարգերի հաստատումը Ռումինիայի գյուղացիական տնտեսությունների կեսը չուներ գութան, իսկ 37 տոկոսը՝ քաշող անասուն: Գյուղացիական տնտեսությունների հիմնական մասը սակավահող էր կամ հողազուրկ: Ժողովրդա-դեմոկրատական կառավարությունը իշխանության գլուխ



անցնելուց հետո կատարված առաջին և կարևորագույն սոցիալ-տնտեսական ձեռնարկումներից մեկը հողային ռեֆորմի անցկացումն էր: Ռեֆորմի հետևանքով 1141 կալվածատերերից խլվեց 1434 հազար հեկտար հող, որը բաշխվեց մոտ 800000 հողազուրկ և սակավահող գյուղացիների միջև: 1947—1948 թթ. երկրում կար 3067 հազար ինքնուրույն գյուղացիական տնտեսություն: Նրանց մեծամասնությունը՝ 57 տոկոսը, ուներ 3 հեկտարից չգերազանցող հողամասեր: Գյուղացիների 33 տոկոսը միջակներն էին, որոնք ունեին մինչև 10 հեկտար հողամասեր, 100 հազարից ավելի տնտեսություններ ունեին 10-ից մինչև 50 հեկտար հող: Բացի այդ, հողի որոշ մասը շարունակում էր մնալ կալվածատերերի ձեռքում: 1949 թվականի մարտի 1-ին կառավարությունը դեկրետ ընդունեց կալվածատիրական հողերի մնացորդների բռնագրավման մասին: Այդ օրենքի համաձայն էքսպրոպրիացիայի ենթարկվեցին 5525 կալվածատիրական տնտեսություն, որոնք ունեին 253 հազար հեկտար վարելահող, ինչպես նաև պտղատու ծառեր, խաղողի շատ այգիներ և անտառներ:

Կուսակցության նկատմամբ ժողովրդա-դեմոկրատական կառավարությունը վարում է սահմանափակման քաղաքականություն, որն արտահայտվում է հացամթերումների պրակտիկայում, դիֆերենցացված հարկային քաղաքականություն վարելու մեջ և Ռումինական Բանվորական պարտիայի և կառավարության բոլոր կարևորագույն քաղաքական և տնտեսական միջոցառումների մեջ: Չքավոր և միջակ գյուղացիությանը ամեն կերպ օգնություն է ցույց տրրվում հողի համատեղ, կոլեկտիվ մշակման ուղու վրա անցնելու գործում:

Ռումինիայի Բանվորական պարտիայի Կենտկոմի 1949 թվականի մարտին տեղի ունեցած պլենումը ծավալուն որոշում ընդունեց բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության դաշինքի ամրապնդման, գյուղատնտեսության սոցիալիստական վերափոխման համար մղվող պայքարում պարտիայի ունեցած խնդիրների մասին: Գյուղատնտեսության սոցիալիստական վերափոխությունը, այն տրակտորներով, գյուղատնտեսական այլ մեքենաներով և քիմիական պարարտանյութերով ավելի ու ավելի մեծ ծավալով հագեցնելը և Սովետական Միության սոցիալիստական գյուղատնտեսության կազմակերպման և զարգացման փորձի լայն օգտագործումը մեծ հեռանկարներ բացեցին դաշտերի բերքատվության բարձրացման, անասունների գլխաքանակի աճի և Ռումինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի ամբողջ գյուղատնտեսության արագ զարգացման համար:

Այժմ աշխատավոր գյուղացիների ավելի քան 1300 հազար ընտանիքներ միավորված են 13650 կոլեկտիվ տնտեսությունների, ընկերությունների և արտադրական կոոպերատիվների մեջ: Գյուղատնտեսության սոցիալիստական սեկտորը ներկայումս զբաղեցնում է երկրի հողամշակման տարածությունների կեսը:

Կոոպերացման հետ միաժամանակ անընդհատ զարգանում է գյուղատնտեսական արտադրության մեքենայացումը: Եթե 1938 թվականին երկրում կար 4,8 հազար տրակտոր, ապա այժմ կա 37 հազար տրակտոր: Գյուղատնտեսական մեքենաների կիրառման ընդլայնումը և հողի մշակման բարելավումը նպաստեցին գյուղատնտեսության համախառն արտադրանքի ավելացմանը: Ռումինիայի գյուղատնտեսությունը 1957 թվականին, 1938 թվականի համեմատությամբ, երկրին ավելի տվեց 339540 տոննա ցորեն և 2322165

տոննա եգիպտացորեն։ Չորս անգամ ավելացավ շաքարի ճակնդեղի ու արևածաղկի և երկու անգամ՝ կարտոֆիլի արտադրությունը։

Ռումինիայի Բանվորական պարտիան հանդիսանում է բանվոր դասակարգի առաջավոր ջոկատը՝ ամբողջ աշխատավորության ղեկավարը ժողովրդադեմոկրատական կարգերի ամրապնդման, զարգացման ու սոցիալիստական հասարակարգի կառուցման համար մղվող պայքարում։

Ռումինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի կոնստիտուցիան օրենսդրորեն ամրացնում է Ռումինիայի Բանվորական պարտիայի ղեկավար դերը երկրի քաղաքական և տնտեսական կյանքում։ Ռեսպուբլիկայի կոնստիտուցիայի 86-րդ հոդվածը հայտարարում է. «Ռումինական Բանվորական պարտիան հանդիսանում է ղեկավարող ուժը, ինչպես աշխատավորների կազմակերպման, այնպես էլ պետական օրգանների և հիմնարկների կազմակերպման գործում։ Նրա շուրջը համախմբվում են Ռումինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի աշխատավորության բոլոր կազմակերպությունները»։ Բանվորական պարտիայի ստեղծումը (1948 թ.) Ռումինիայի Կոմունիստական պարտիայի խոշոր հաղթանակն էր, որը պայքարում էր բանվորական շարժման մեջ սոցիալ-դեմոկրատական պարտիայի դավաճանական քաղաքականության հետևանքով առաջացած պառակտումը վերացնելու համար։ Նրա միասնության ամրապնդման համար խոշոր նշանակություն ունեցավ աջ թեքման մերկացումը։ Կառավարության և պարտիայի մեջ աջ թեքման կողմնակիցները գրավելով կարևոր դիրքեր, ձգտում էին թուլացնել պարտիական հսկողությունը պետական ապարատի կարևոր օղակներում, վիժեցնում էին կուլակությանը սահմանափակելու քաղաքականության հիմքերը, գյուղացիության կամավոր ներգրավումը կոոպերացիայում և խախտում էին պարտիայի մեջ մտնելու անհատական սկզբունքը։ 1952 թվականին Ռումինիայի Բանվորական պարտիան Կենտկոմի ղեկավարությամբ վերջնականապես ջախջախեց աջ թեքման խմբի ֆրակցիոն հակապարտիական ու հակապետական գործունեությունը, հեռացնելով նրա ներկայացուցիչներին ղեկավար պոստերից։ Աջ թեքման կողմնակիցների ջախջախման մասին Կենտկոմի որոշումը հավանություն գտավ ողջ պարտիայի կողմից և արդյունքը եղավ այն, որ բարձրացավ պարտիայի մարտունակությունը, հեղինակությունը և ղեկավար դերը մասսաների մեջ։ Պարտիայի ուժի աղբյուրը պարտիական ղեկավարության մեջ և կյանքում լենինյան սկզբունքների կիրառումն է, կոմունիստների ակտիվության բարձրացումը՝ պարտիայի որոշումները կատարելու համար ներպարտիական դեմոկրատիայի է՛լ ավելի ամրապնդումը։

Ռումինիայի Բանվորական պարտիան հենվելով մարքս-լենինյան ուսմունքի, ՍՍՌՄ-ի և մյուս երկրների սոցիալիստական շինարարության փորձի վրա, ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացումը տանում է սոցիալիզմի կառուցման ուղիով։ Երկրի կյանքում մեծ նշանակություն ունեցավ Ռումինիայի Բանվորական պարտիայի երկրորդ համագումարը, որը կայացավ 1955 թվականի դեկտեմբերին։ Համագումարը հանրագումարի բերեց պարտիայի ութ տարվա աշխատանքները և հաստատեց երկրորդ հնգամյա պլանի դիրեկտիվները։ Երկրորդ հնգամյա պլանի իրականացման և աշխատավորության կյանքի բարելավման համար մեծ նշանակություն ունեցան Ռումինիայի Բանվորական պարտիայի Կենտկոմի 1956 թվականի Դեկտեմբերյան պլենումի որոշումները, որոնք ուղղված են ժողտնտեսության ղեկա-





վարման բարելավման նպատակին։ Պարտիան հատուկ ուշադրություն է դարձնում կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության վրա, պահանջում է, որպեսզի բոլոր պարտիական ու պետական տեղամասերում կանգնած լինեն որակյալ ղեկավարներ, որոնք ընդունակ են կատարելու կազմակերպական և տնտեսական բարդ խնդիրներն ու որոշումները։

Ռումինիայի Բանվորական պարտիան գլխավորում է ժողովրդական դեմոկրատիայի հզոր ճակատը, որի կազմի մեջ են մտնում միլիոնավոր աշխատավորներ միավորող մասսայական դեմոկրատական կազմակերպություններ։ Այդպիսի կազմակերպություններ են հանդիսանում, բացի Բանվորական պարտիայից, արհմիությունները, «Հողագործների ճակատ» մասսայական գյուղացիական կազմակերպությունը, հունգարական ժողովրդական «Մադոս» միությունը, որը ներկայացնում է Տրանսիլվանիայի հունգարական աշխատավոր բնակչությունը, Դեմոկրատական կանանց միությունը, Խաղաղության պաշտպանության ազգային կոմիտեն, ՍՍՌՄ-ի և այլ երկրների հետ եղբայրական կապերի ընկերությունները։

Ռումինիայի Բանվորական պարտիան իրականացնում է այդ բոլոր մասսայական կազմակերպությունների ղեկավարությունը և միջոցներ է ձեռք առնում իր անդամների միջոցով նրանց աշխատանքի բարելավման համար։ Պարտիայի երկրորդ համագումարը պրոֆմիության աշխատողներին պարտավորեցրեց պայքարել պրոֆմիությունների գործունեության մեջ բյուրոկրատական մեթոդները արմատախիլ անելու համար, բարձրացնել արտադրական խորհրդակցությունների դերը և բարելավել աշխատավորների նյութական և կուլտուրական սպասարկումը։ Պարտիական կազմակերպությունները անշեղորեն իրականացնում են համագումարի որոշումները։ Ռումինիայի Բանվորական պարտիան վճռականորեն հանդես եկավ ժամանակակից ռևիզիոնիզմը մերկացնելու և գաղափարապես ջախջախելու համար։

Ռումինիայի ժողովրդա-դեմոկրատական կարգի քաղաքական և տնտեսական հիմքերի ամրապնդման, երկրի միջազգային դիրքերի և հեղինակության ուժեղացման գործում կարևորագույն դեր է խաղում Ռումինիայի կառավարության խաղաղասիրական արտաքին քաղաքականությունը։ Ռումինական Ժողովրդական Ռեսպուբլիկան սոցիալիստական հզոր ճամբարի ակտիվ և լիիրավ անդամն է։ Ռումինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի մշտապես աճող դաշինքն ու բարեկամությունը Սովետական Միության, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի և սոցիալիստական ճամբարի մյուս երկրների հետ ամեն կերպ նպաստում են ժողովրդա-դեմոկրատական պետության ամրապնդման գործին։ Ռումինական Ժողովրդական Ռեսպուբլիկան ակտիվ մասնակցություն է ցուցաբերում այն բոլոր միջազգային միջոցառումներին, որոնք ուղղված են խաղաղության և ժողովուրդների անվտանգության ամրապնդման նպատակին։ Այդ բանի ակնառու օրինակ է Ռումինիայի մասնակցությունը Վարշավայի բանակցություններին և եվրոպական ութ պետությունների միջև բարեկամության համագործակցության և փոխադարձ օգնության պայմանագրի կնքումը։

Ռումինական պատվիրակության ղեկավար ընկ. Գեորգիու Դեժը Վարշավայի խորհրդակցությունում ելույթ ունենալով հայտարարեց, որ Ռումինական Ժողովրդական Ռեսպուբլիկան պատրաստ է պաշտպանելու միջազգային ամեն մի միջոցառում, որն ուղղված է միջազգային լարվածության թուլացմանը։

*1955 թվականի մայիսի 30-ին Ազգային մեծ ժողովի սեսիան միաձայն ռատիֆիկացիայի ենթարկեց Վարշավայի պայմանագիրը, դրանով իսկ ցույց տալով, որ ռումին ժողովուրդը և նրա կառավարությունը լի են վճռականությամբ՝ մասնակցելու այն բոլոր միջոցառումներին, որոնց նպատակն է ապահովել խաղաղությունն ամբողջ աշխարհում։*

*Ռումինական ժողովրդական Ռեսպուբլիկան ակտիվ կերպով մասնակցում է բարեկամության, համագործակցության և փոխադարձ օգնության Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների Քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի և Տնտեսական փոխօգնության խորհրդի աշխատանքներին։*

*Սովետական Միության և Ռումինական ժողովրդական Ռեսպուբլիկայի միջև, ինչպես նաև սոցիալիզմի լագերի բոլոր երկրների միջև փոխհարաբերությունները կառուցված են լիակատար իրավահավասարության, եղբայրական համագործակցության, միմյանց ազգային անկախությունը հարգելու սկզբունքների վրա։ Բարեկամության, համագործակցության և փոխադարձ օգնության մասին 1948 թվականի փետրվարի 4-ին Մոսկվայում կնքված սովետա-ռումինական պայմանագիրը դրա վառ ապացույցն է։*

*Սովետա-ռումինական բազմակողմանի համագործակցությունը, որը խարսխված է լիակատար իրավահավասարության, ազգային շահերի փոխադարձ հարգման և սոցիալիստական փոխօգնության սկզբունքների վրա, հաջողությամբ ծառայում է սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման գործին, թույլ է տալիս տնտեսության համաշխարհային սոցիալիստական սիստեմի առավելությունները մեծագույն չափով օգտագործել սոցիալիստական երկրներից յուրաքանչյուրի արտադրողական ուժերի զարգացման և ամբողջությամբ վերցրած սոցիալիստական լագերի տնտեսական հզորության ամրապնդման համար։*

*Ռումին ժողովուրդը հենվելով Սովետական Միության և մյուս սոցիալիստական երկրների հետ եղբայրական համագործակցության վրա, հաջողությամբ ընթանում է սոցիալիզմի կառուցման ուղիով։*

---

# ԱՐԱԲԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՊԱՅՔԱՐԸ ԱՆԿԱԽՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

## Տ. ՀԱԿՈԲՅԱՆ

*Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, իմպերիալիզմի գաղութային սիստեմի քայքայման հետևանքով նշանակալից փոփոխություններ տեղի ունեցան աշխարհի քաղաքական քարտեզի վրա։ Այդ փոփոխություններն առանձնապես ակնառու են Ասիայում և Աֆրիկայում, ուր աչքի ընկնող տեղ են գրավում արաբական երկրները [1]։*

*Արաբ ժողովուրդը կարևոր պատմական դեր է խաղացել. նա նշանակալից կուլտուրական արժեքներ և հնության պատկառելի հուշարձաններ է ստեղծել։ Միջին դարերում Մերձավոր և Միջին Արևելքի երկրների զարգացումը ընթացել է գերազանցապես արաբական լեզվի և կուլտուրայի ազդեցության տակ։ Սակայն, սկսած 16-րդ դարից, արաբական երկրների մեծ մասն ընկավ Օսմանյան կայսրության տիրապետության տակ, որն իր հետամնաց ֆեոդալական բռնապետական կարգերով երկար դարեր ճնշեց ու արգելակեց արաբական ժողովուրդների զարգացումը։*

*Օգտվելով Օսմանյան կայսրության և նրան ենթակա արաբական երկրների թուլությունից և հետամնացությունից, 19-րդ դարում իմպերիալիստական պետություններն սկսեցին իրենց ազդեցության տակ գցել արաբական երկրների մեծ մասը և, ճնշելով այդ երկրների դիմադրությունը, այնտեղ հաստատել գաղութային կամ կիսագաղութային ռեժիմ։ 19-րդ դարի երկրորդ կեսին պայքարն իմպերիալիստական Անգլիայի և Ֆրանսիայի միջև սրվեց Եգիպտոսի տիրապետության համար, հատկապես Սուեզի ջրանցքի բացումից հետո։ Այդ պայքարը, ինչպես հայտնի է, ավարտվեց Անգլիայի հաղթանակով, երբ նրան հաջողվեց իր ձեռքը գցել Սուեզի ջրանցքի վերահսկողությունը։ Դրանով կանխորոշվեց Եգիպտոսի, ինչպես նաև Սուդանի բախտը։*

---

1 Արաբական երկրների տերիտորիան տարածվում է Հյուսիսային Աֆրիկայի Ատլանտյան ափերից մինչև Պարսից ծոցը և կազմում է 11 մլն քառ. կմ, մոտ 50 մլն բնակչությամբ։

Այդ երկրների թվում են՝ Մարոկկոն, Ալժիրը, Թունիսը, Լիբիան, ՄԱՌ-ն, Սուդանը, Լիբանանը, Իրաքը, Հորդանանը, Սաուդական Արաբիան, Եմենը և արաբական իշխանություններ՝ Օմանը (Մասկատը), Պայմանագրային Օմանը, Կուվեյտը, Կատարը, Բահրեյնը, Հադրամաութը և Ադենը։

1947 թվականին ՄԱԿ-ի որոշմամբ Պաղեստինը բաժանվեց երկու մասի՝ Իսրայել և Արաբական Պաղեստին։ 1948 թվականի իսրայելա-եգիպտական պատերազմից հետո Իսրայելը Արաբական Պաղեստինից զգալի տերիտորիա գրավեց, որից հետո մնացած մասը 1950 թվականին միացավ Հորդանանին։

Իր այդ կարևոր նվաճումը հետագա մրցակցությունից ապահովելու համար Անգլիան «թույլատրեց» Ֆրանսիային, որը մինչ այդ զավթել էր Ալժիրը և ազդեցություն էր ձեռք բերել Սիրիայում և Լիբանանում, նվաճելու Թունիսը և այնուհետև՝ Մարոկկոն։ Դրանով իսկ նրանք իրար միջև բաժանեցին արաբական երկրները։

Արաբական երկրները իմպերիալիստների համար ներկայացնում էին կրկնակի շահագրգռություն թե՛ ռազմական-ստրատեգիական և թե՛ տնտեսական տեսակետից։ Սուեզի ջրանցքի միջոցով Միջերկրական ծովը Հնդկական օվկիանոսի հետ միացնող այդ ուղին միաժամանակ հանդիսանում էր և կարևորագույն պլացդարմ՝ Մերձավոր և Միջին Արևելքի ու Աֆրիկայի համար իմպերիալիստների միջև մղված պայքարում։ Հայտնի է, թե որպիսի կարևոր դեր խաղացին արաբական երկրներն առաջին և երկրորդ համաշխարհային պատերազմների ժամանակ։

Մյուս կողմից՝ արաբական երկրներն ունեն խոշոր տնտեսական նշանակություն։ Հայտնի է, որ անգլո-ֆրանսիական պայքարը Եգիպտոսում մղվում էր նաև բամբակի համար։ Անգլիան տիրապետելով Եգիպտոսին, տասնյակ տարիներ այդ երկիրը ծառայեցրեց որպես թանկարժեք հումքի բազա։ «Անգլիան ավելի ու ավելի է Եգիպտոսը դարձնում մի երկիր, որն արտադրում է միայն բամբակ... և դժվարացնում է արդյունաբերական զարգացումը»,— գրել է Լենինը։

Արաբական երկրների նշանակությունն ավելի քան մեծացավ, երբ այնտեղ հայտնաբերվեցին աշխարհիս ամենահարուստ նավթային պաշարները։ Նորագույն շրջանում իմպերիալիստների միջև մղվող պայքարի հիմնական շարժառիթներից է մնում նավթային ռեսուրսների տիրապետումը։ Անվիճելի է այն, որ Մերձավոր ու Միջին Արևելքում ԱՄՆ-ի ներկա քաղաքականության գլխավոր մոտիվներից մեկը ամերիկյան նավթային մոնոպոլիաների շահերի հետապնդումն է այդ երկրներում։ Նշանակալից չափով դրանով է կայանում նաև «էյզենհաուերի դոկտրինայի» էությունը։

Ճնշում գործադրելով տեղական թույլ կառավարությունների վրա, օտարերկրյա կապիտալը արաբական երկրներում իր ձեռքն էր առնում տնտեսական բարձունքները, վերածելով այդ երկրները հումքի բազայի և օտարերկրյա ապրանքների վաճառահանման շուկայի։ Ֆեոդալական շահագործման հետ միասին արաբ աշխատավորների վրա ծանրանում էր կապիտալիստական շահագործման ծանր լուծը։ «Մենք մեզ վրա կրել ենք 500 տարիների ընթացքում Օսմանյան կայսրության և 70 տարվա ընթացքում գաղութային տերություններին՝ Ֆրանսիայի և Անգլիայի լուծը։ Մենք կրել ենք նաև ֆեոդալիզմի, սպեկուլյացիայի և տարբեր ուժերի տիրակալության ծանրությունը»,—ասել է Նասերը։

Սակայն, օտարերկրյա նվաճողներին ու գաղութարարներին արաբական ժողովուրդները միշտ էլ ցույց են տվել համառ դիմադրություն։

1879—1882 թթ. Եգիպտոսում առաջին անգամ ծագեց ազգային-ազատագրական ապստամբություն օտարերկրյա զավթիչների դեմ, արաբ հայրենասեր գնդապետ Արաբի-փաշայի գլխավորությամբ։ Սակայն Անգլիան, ռմբակոծելով եգիպտական քաղաքները և դաժանորեն ճնշելով ապստամբությունը, օկուպացրեց Եգիպտոսի տերիտորիան և այն վերածեց անգլիական պրոտեկտորատի, այսինքն՝ փաստական գաղութի։



Հանուն անկախության արաբական ժողովուրդների պայքարը նոր, ավելի բարձր աստիճանի հասավ առաջին համաշխարհային պատերազմից հետո, Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ազդեցության տակ։

1919—1921 թթ. մասսայական, հակաիմպերիալիստական ապստամբություն տեղի ունեցավ Եգիպտոսում, 1921—1925 թթ.՝ Մարոկկոյում, 1918—1920 թթ.՝ Իրաքում, 1925—1927 թթ.՝ Սիրիայում և Լիբանանում, 1929—1933 թթ.՝ Պաղեստինում։ Այդ ապստամբություններին ակտիվորեն մասնակցում էին ժողովրդի լայն խավերը՝ գյուղացիներ, բանվորներ, արհեստավորներ, ազգային բուրժուազիան և ինտելիգենցիան։ Հենվելով կառավարող ֆեոդալական-կալվածատիրական վերնախավի և կոմպրադորական բուրժուազիայի վրա, իմպերիալիստները ճնշեցին այդ ապստամբությունները։

Արաբական ժողովուրդների դիմադրության հետևանքով իմպերիալիստները երբեմն ստիպված էին որոշ զիջումներ անել, փոխել իրենց տիրապետության ձևերը։ Որոշ երկրներում նրանք ստիպված էին հրաժարվել բացահայտ գաղութային ռեժիմից, դարձնելով այն մանդատային տերիտորիա, պրոտեկտորատ կամ էլ ձևականորեն ճանաչել նրա անկախությունը, սակայն փաթաթելով այդ երկրների վզին ստրկացուցիչ պայմանագրեր (1930 թվականի անգլո-իրաքյան պայմանագիրը, 1936 թվականի անգլո-եգիպտական «դաշնակցային» պայմանագիրը, 1948 թվականի անգլո-հորդանանյան պայմանագիրը և այլն)։

Արաբական ժողովուրդների ազատագրական պայքարն առանձնապես մեծ թափ ստացավ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, երբ ռեալ հնարավորություններ ստեղծվեցին գաղութային և կախյալ երկրների ազատագրման համար, երբ սկսվեց գաղութային սիստեմի քայքայումը։

Հետպատերազմյան տարիներին քաղաքական անկախություն ձեռք բերին սկզբում Սիրիան և Լիբանանը, այնուհետև՝ Եգիպտոսը, որին պատկանում է առաջատար դեր արաբական երկրներում։ Հակաիմպերիալիստական շարժումը Եգիպտոսում նշանավորվեց իրար հաջորդող մի շարք ակտերով։ 1946—1950 թթ. պայքարը հասցրեց այն բանին, որ 1951 թվականին Եգիպտական կառավարությունը դենոնսացիայի ենթարկեց 1936 թվականի անգլո-եգիպտական պայմանագիրը, մի ակտ, որը շրջադարձ հանդիսացավ եգիպտական ժողովրդի ազգային-ազատագրական պայքարում։ Այնուհետև կատարվեց 1952 թվականի հուլիսյան հեղաշրջումը, որի հետևանքը եղավ միապետության տապալումը և 1953 թվականի հունիսի 18-ին Եգիպտական ռեսպուբլիկայի հռչակումը։ Դրան հաջորդեցին ագրարային ռեֆորմը և ազգային արդյունաբերության զարգացման ուղղությամբ ձեռնարկված առաջին քայլերը։ Այնուհետև տեղի ունեցավ անգլիական օկուպացիոն ռեժիմի վերջնական լիկվիդացիան և Սուեզի ջրանցքի ընկերության ազգայնացումը 1956 թվականին։ Դրան հաջորդեցին անգլո-ֆրանս-իսրայելյան ագրեսիան և եգիպտական ժողովրդի քաջարի դիմադրությունը և հակահարվածը ագրեսորներին։

1956 թվականի հունվարին բրիտանական գաղութ Անգլո-եգիպտական Սուդանի փոխարեն ստեղծվեց Սուդանի սուվերեն ռեսպուբլիկան։

Պետական անկախություն ձեռք բերին նաև Հյուսիսային Աֆրիկայի մի շարք արաբական երկրներ։ Իտալական նախկին գաղութ Լիբիայի փոխարեն 1951 թվականին կազմվեց անկախ Լիբիայի միացյալ թագավորությունը,

ֆրանսիական գաղութ Թունիսի փոխարեն կազմվեց Թունիսի ռեսպուբլիկան, Մարոկկոյում ստեղծվեց անկախ Մարոկկական պետությունը:

Այսպիսով, երկրորդ համաշխարհային պատերազմից հետո մինչև 1956 թվականը Արաբական արևելքում նախկին անգլիական, ֆրանսիական, իտալական և իսպանական գաղութային և կիսագաղութային տիրապետություններից ստեղծվեցին անկախ արաբական պետություններ, այդ թվում ռեսպուբլիկաներ, որոնց թիվը ավելացավ ևս մեկով, երբ սույն թվականի հուլիսին Իրաքում կատարված հեղաշրջման հետևանքով կազմվեց Իրաքի ռեսպուբլիկան:

Սակայն գաղութային լծից արաբական ժողովուրդների ազատագրումը դեռևս չի ավարտված: Ահա քանի տարի է, ինչ Ալժիրի հերոսական ժողովուրդը զինված պայքար է մղում ֆրանսիական գաղութարարների դեմ, հանուն իր ազգային անկախության, հարուցելով ողջ պրոգրեսիվ մարդկության համակրանքն ու հիացմունքը:

Անգլիական գերազանց ուժերի դեմ հերոսական պայքար են մղում նաև Արաբական թերակղզու հարավային իշխանությունները՝ Օմանը, Ադենը և այլն:

Մի կողմից մենք տեսնում ենք արաբական ժողովուրդների հարաճուն ձգտումը՝ ամրապնդելու երկարատև և համառ պայքարի հետևանքով ձեռք բերած անկախությունը, ստեղծելու ազգային էկոնոմիկա, բարելավելու ժողովրդի նյութական-կուլտուրական վիճակը, դեմոկրատականացնելու երկրում տիրող կարգերը և զարկ տալու արաբական ժողովուրդների միասնությանը, մյուս կողմից՝ իմպերիալիստների ինտրիգներն ու դավերը՝ այդ պետություններին գցելու իրենց ազդեցության տակ, հակադրելու մեկը մյուսին, արգելակելու այդ երկրներում տիրող ռեժիմի դեմոկրատականացումը և պայքարելով արաբ ժողովրդի միասնության դեմ՝ ապահովելու իմպերիալիստական մոնոպոլիաների շահույթները:

Իմպերիալիզմի և գաղութակալության դեմ մղած իրենց պայքարում արաբական ժողովուրդները ավելի ու ավելի են համոզվում այն բանում, որ այդ պայքարի հաջողությունը կախված է արաբական ժողովուրդների միասնությունից: Միասնության գաղափարը գնալով ավելի է տիրապետում Արաբական Արևելքի ժողովուրդների գիտակցությանը: Նրանց ազատագրման պրոցեսը և անկախ ազգային պետությունների կազմավորումը գնալով ուժեղանում է, ընդգրկելով ողջ արաբական աշխարհը: Այս տեսակետից ամենանշանակալից ակտը Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայի ստեղծումն է:

***

1958 թվականի փետրվարի 22-ին, նախօրոք անցկացված հանրաքվեից հետո, Կահիրեում տեղի ունեցավ արաբական ազգային նոր պետության՝ Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայի հռչակումը, որի մեջ մտնում են Եգիպտոսը և Սիրիան որպես մեկ պետություն և որին քիչ ուշ՝ ֆեդերատիվ հիմունքներով միացավ Եմենի անկախ թագավորությունը: Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայի պրեզիդենտ ընտրվեց Եգիպտական ռեսպուբլիկայի պրեզիդենտ Գամալ Աբդել Նասերը:

Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայի ստեղծումը խոշոր պատմական նշանակություն ունեցող իրադարձություն է ոչ միայն Սիրիայի և Եգիպտոսի ժողովուրդների, այլև ողջ արաբական ժողովուրդների համար:



Եգիպտոսի և Սիրիայի միավորումը երկու իրավահավասար արաբական պետությունների կամավոր միությունն է, որոնք գտնվում են քաղաքական, տնտեսական և կուլտուրական զարգացման գրեթե հավասար մակարդակի վրա և որ կարևորն է, այդ միավորումը տեղի է ունենում հակաիմպերիալիստական, ազատագրական պայքարի բազայի վրա և ծառայում է Մերձավոր և Միջին Արևելքում խաղաղության և անվտանգության ամրապնդման գործին:

Այդ երկու երկրների պատմական բախտի ընդհանրությունը և իմպերիալիզմի դեմ մղած պայքարում նպատակների միասնությունը, դրա հետ միասին նաև լեզվի, ազգային կուլտուրայի և կրոնի ընդհանրությունը նպաստավոր գործոն հանդիսացան միավորման համար: Կարևոր դեր խաղացին նաև երկու երկրների միջև գոյություն ունեցող վաղեմի տնտեսական կապերը:

Քաղաքական և տնտեսական ինքնուրույն զարգացման հնարավորություն ձեռք բերելով, Սիրիան և Եգիպտոսը առաջիններից էին, որ անվերապահ կերպով հարեցին Ասիայի և Աֆրիկայի ժողովուրդների Բանդունգի կոնֆերանսի սկզբունքներին և իրենց վարած «պոզիտիվ չեզոքության» քաղաքականությամբ ակտիվորեն պայքարում են ագրեսիվ բլոկների մեջ իրենց ներքաշելու անգլո-ամերիկյան իմպերիալիստների ոտնձգությունների դեմ:

Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայի ստեղծումը ողջունեցին ոչ միայն արաբական ժողովուրդները, այլև նա անմիջապես ճանաչում գտավ ամբողջ աշխարհի, առաջին հերթին սոցիալիստական լագերի բոլոր երկրների կողմից:

Միացյալ Արաբական Ռեսպուբլիկան ընդունել է իր ժամանակավոր կոնստիտուցիան, որը պետք է գործի անցողիկ ժամանակաշրջանում: «Միացյալ Արաբական Ռեսպուբլիկան,— ասված է կոնստիտուցիայի առաջին հոդվածում,— հանդիսանում է անկախ, սուվերեն, դեմոկրատական ռեսպուբլիկա, իսկ նրա ժողովուրդը՝ արաբական ազգի մի մասը»: Կազմված է կենտրոնական կառավարություն և նշանակված են տեղական իշխանության օրգաններ՝ միացյալ ռեսպուբլիկայի Եգիպտական և Սիրիական շրջանների համար: Սահմանված է միասնական քաղաքացիություն, ինչպես նաև միասնական գերբ և դրոշակ:

Քաղաքական և պետական անկախության նվաճումից հետո, ինչպես Արևելքի ազատագրված մյուս երկրների, նույնպես և Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայի առաջ կանգնած են դժվարին տնտեսական խնդիրներ: Մեծ ջանքեր կպահանջվեն՝ վերացնելու իմպերիալիզմի երկարատև տիրապետության և ֆեոդալական հետամնացության հետևանքները:

Թե՛ Եգիպտոսում, և թե՛ Սիրիայում մինչ այդ կատարված մի շարք ձեռնարկումներ վկայում են այն մասին, որ նորաստեղծ ռեսպուբլիկան կկարողանա հաղթահարել այդ դժվարությունները: Բանն այն է, թե ինչ ուղիով կգնա Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայի տնտեսական զարգացումը: Նման երկրներում ներկայումս տիրապետող տենդենցը (Հնդկաստան, Ինդոնեզիա և այլն) պետական կապիտալիզմի ուղին է, որի պահպանումից և ընդլայնումից կախված կլինի այդ երկրների էկոնոմիկայում դեռևս խոշոր դեր խաղացող օտարերկրյա կապիտալի սահմանափակումը և այն երկրի անկախության ամրապնդման գործին ծառայեցնելը:

Ներկայումս մի շարք մինիստրություններ (գյուղատնտեսության, արդյունաբերության, էկոնոմիկայի, ֆինանսների և առևտրի) մշակում են ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի զարգացման լայն ծրագրեր, նշվում են

միջոցառումներ անցյալում մշակված պլանների իրագործման համար, հաշվի առնելով նոր խնդիրները և տեղական պայմանները։ Ծրագրված է նշված ժամկետներում կատարել Եգիպտոսի ինդուստրացման մինչ այդ ընդունված հընգամյա պլանը և Սիրիայի էկոնոմիկայի զարգացման յոթամյա ծրագիրը։

Եգիպտոսի ինդուստրացման հնգամյա պլանով նախատեսվում է 128 արդյունաբերական նոր ձեռնարկությունների հիմնում, որի իրագործման համար լայնորեն կներգրավվի եգիպտական ազգային կապիտալը։ Դրա հետ միասին կարևոր նշանակություն կունենա ՍՍՌՄ-ի հետ տնտեսական և տեխնիկական համագործակցությունը, որը կիրականացվի ըստ Եգիպտոսի և Սիրիայի հետ մինչև այդ կնքված պայմանագրերի։ Համաձայնություն է կնքված 17 արդյունաբերական ձեռնարկությունների շինարարության տեխնիկական օգնություն ցույց տալու համար սովետական մասնագետներ տրամադրելու մասին։ Միաժամանակ համաձայնություն է կայացված որակյալ գիտա-հետազոտական կադրեր պատրաստելու նպատակով եգիպտական շրջանում 10 ուսումնական կենտրոնների բացման մասին։

1953—1957 թթ. ընթացքում ՄԱՌ-ի եգիպտական շրջանում անցկացված ագրարային ռեֆորմը հիմնականում վերացնելով խոշոր ֆեոդալական հողատիրությունը և օտարերկրյա մոնոպոլիաների տիրապետությունը, նպաստավոր պայմաններ ստեղծեց գյուղատնտեսության զարգացման համար։ Ագրարային օրենքի հիման վրա որոշում է ընդունված ևս տասնյակ հազարավոր ֆեդդան վակուֆային հողեր բաժանելու և նոր գյուղերի կառուցման համար 500 մլն եգիպտական ֆունտ հատկացնելու մասին։

Որոշ հաջողություններ են ձեռք բերվել գյուղատնտեսական արտադրական կոոպերացիայի և ագրոտեխնիկայի կիրառման ասպարեզում։ Մեծ աշխատանքներ են տարվում անջրդի հողերի ոռոգման ուղղությամբ. առաջ են տարվում Ասուանի ամբարտակի կառուցման աշխատանքները, որը հնարավորություն կտա զգալիորեն ընդարձակել ցանքատարածությունները և էլեկտրաէներգիա մատակարարել զարգացող արդյունաբերությանը։ ՄԱՌ-ի Սիրիական շրջանում, արդյունաբերության զարգացման հետ միասին, առաջնակարգ նշանակություն է տրվում անմշակ հողերի յուրացման գործին։ Մոտ 7 միլիոն հեկտար պետական հողերի մշակումը Ջեզիրեի և Խոմսի շրջաններում և Եփրատի հովտում, որոնք մինչև այդ գտնվում էին խոշոր հողատերերի ձեռքին, այժմ պետության հոգացողության գլխավոր առարկան է, որի համար հարկ կլինի կառուցել մի շարք ամբարտակներ և հիդրո-տեխնիկական կառուցումներ։

Այս բոլորի հետևանքով կբարձրանա գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, հատկապես հացահատիկների արտադրությունը և Միացյալ Արաբական Ռեսպուբլիկան կազատվի հացահատիկի ներմուծումից։ Դրան կնպաստեն պետության կողմից ներկայումս մշակվող արտաքին և ներքին առևտրի նոր կանոնները և դրամի (եգիպտական ֆունտի) կայունացման և արժեքի բարձրացման ուղղությամբ կատարվող միջոցառումները։

Կուլտուրայի ասպարեզում Միացյալ ռեսպուբլիկայի երկու շրջանների զարգացման համար էլ հիմք են ծառայում կուլտուրական համագործակցության առթիվ անցյալ տարի կնքված համաձայնությունը։ Դրանով նախատեսվում է ուսումնական ծրագրերի լիակատար միասնականացում պետական դպրոցներում, այնուհետև ուսանողների, ուսուցիչների և դասախոս-պրոֆեսորների փոխանակում և ընդհանրապես լուսավորության և կուլտուրայի ասպա-



րեզում բոլոր միջոցառումների համաձայնեցում։ Անց է կացված նաև քաղաքական-հասարակական կազմակերպությունների ունիֆիկացում։ Ստեղծվել է արհմիությունների կոնֆեդերացիա, որը միավորում է ռեսպուբլիկայի երկու շրջանների բանվորական արհմիությունները։

Միացյալ Արաբական Ռեսպուբլիկան արդեն հրապարակել և կյանքում իրականացնում է իր արտաքին քաղաքականության սկզբունքները։ Կահիրեում արտասանած իր մի ճառում պրեզիդենտ Նասերը հանդիսավոր կերպով հայտարարեց նոր պետության վճռականությունը՝ պահպանելու և զարգացնելու բարեկամական հարաբերություններ բոլոր խաղաղասեր երկրների հետ, կենսագործելու Բանդունգի սկզբունքները, անշեղորեն իրականացնելու «պոզիտիվ չեզոքության» և օտարերկրյա ռազմական բլոկներին չմասնակցելու քաղաքականություն, պայքարելու Բաղդադի պակտի և «Դալես-Էյզենհաուերի դոկտրինայի» դեմ և այդպիսով նպաստել խաղաղության և անվտանգության ամրապնդմանը ոչ միայն Մերձավոր Արևելքում, այլև ամբողջ աշխարհում։

Ղեկավարվելով ազգերի ինքնորոշման իրավունքի վսեմ սկզբունքով և հարգելով արաբական ժողովրդի միասնության ձգտումը, Սովետական Միությունը առաջիններից էր, որ ճանաչեց Միացյալ Արաբական Ռեսպուբլիկան որպես անկախ սուվերեն պետություն։ Արաբական ժողովուրդներն արդեն բազմիցս տեսել են Սովետական Միության անշահախնդիր բարեկամության ապացույցները։ Սիրիական «Սաուտ ալ-արաբ» թերթը գրել է. «Ուրախության և ցնծության իրադրության մեջ, որ ապրում են Եգիպտոսն ու Սիրիան, ինչպես նաև ողջ արաբական աշխարհը՝ Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայի ծննդյան առթիվ, մենք պետք է երախտագիտության խոսքերով հիշենք մեր մեծ բարեկամ Սովետական Միությանը, որը բացառիկ բարեկամական դիրք գրավեց արաբական պրոբլեմների նկատմամբ, ինչպես Եգիպտոսի դեմ Անգլիայի, Ֆրանսիայի և Իսրայելի կողմից կատարված կեղտոտ ագրեսիայի ժամանակ, նույնպես և սիրիական սահմանի մոտ թուրքական զորքերի կենտրոնացման և Սիրիայի դեմ նյութվող դավադրությունների ժամանակաշրջանում։ Մեզ համար Սիրիայի դեմ նյութվող դավադրությունների ժամանակաշրջանում ՍՍՌՄ-ի և մյուս սոցիալիստական երկրների այդ վեծանր ժամանակներում ՍՍՌՄ-ի և մյուս սոցիալիստական երկրների այդ վեհանձն դիրքը վճռական գործոն հանդիսացավ արաբական ազգային շարժման հաղթանակի համար»։

Սովետական և արաբական ժողովուրդների բարեկամության վառ արտահայտությունը հանդիսացավ ս. թ. մայիսին Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայի պրեզիդենտ Գամալ Աբդել Նասերի այցելությունը Սովետական Միություն, որով ավելի ևս ամրապնդվեցին քաղաքական, տնտեսական և կուլտուրական կապերը երկու ժողովուրդների միջև։ Երկու կողմերն էլ մեծ գոհունակությամբ ընդունեցին համագործակցության մասին ստորագրված համաձայնությունը։ Արտահայտելով սովետական մարդկանց կարծիքը, ՍՍՌՄ մինիստրների Սովետի նախագահ Ն. Ս. Խրուշչովը հայտարարեց. «Մեզ ուրախացնում է, որ Միացյալ Արաբական Ռեսպուբլիկան չնայած իմպերիալիստական գիշատիչների ոտնձգություններին, անց է կացնում ինքնուրույն քաղաքականություն, հաստատուն գիծ է վարում իր երկրի էկոնոմիկայի զարգացման, իր ազգային անկախությունը ամեն կերպ ամրապնդելու ուղղությամբ, պայքարում է խաղաղության և ժողովուրդների անվտանգության համար» («Պրավդա», 17 մայիսի, 1958)։

Աճում և օր-օրի զարգանում է արաբական ժողովուրդների ազգային ինք-
նագիտակցությունը, անկախության և միասնության անդիմադրելի ձգտումը։
Արաբական ժողովուրդներն այլևս ոչ մի կերպ հաշտվել չեն ուզում իմպերիա-
լիստական տերությունների բացահայտ կամ քողարկված տիրակալության և
նրանց դրածոների հակաժողովրդական ռեժիմի հետ։ Հենց այդ է, որ հան-
գիստ չի տալիս անգլո-ամերիկյան իմպերիալիստներին և օտարերկրյա նավ-
թային մոնոպոլիաներին։ Նրանք աշխատում են ամեն կերպ կասեցնել այդ
օբյեկտիվ պատմական պրոցեսը՝ գործի գցելով բոլոր միջոցները ընդհուպ
մինչև բացահայտ զինված ինտերվենցիան։

Երկու տարի առաջ Եգիպտոսի դեմ սանձազերծված անգլո-ֆրանս-իսրա-
յելյան ագրեսիայից հետո այսօր ողջ աշխարհը կանգնած է Լիբանանում և
Հորդանանում անգլո-ամերիկյան բացահայտ ինտերվենցիայի փաստի առաջ,
որի հետ սերտորեն կապված են իրադարձություններն Իրաքում։

Ֆրանսիական իմպերիալիզմի լծից ազատված Լիբանանը վերջին տարի-
ներում երկրում իշխող ռեակցիոն կլիկի վարած քաղաքականության և անգլո-
ամերիկյան իմպերիալիստների ոտնձգությունների հետևանքով կանգնեց քա-
ղաքացիական կռվի առաջ։ Պրոգրեսիվ ուժերի կողմից ղեկավարվող այդ
ապստամբությունը ճնշելու համար Լիբանանի պրեզիդենտ Շամունը և կառա-
վարությունը դիմեցին ԱՄՆ-ի իմպերիալիստների օգնությանը, որոնք «Դալես-
Էյզենհաուերի դոկտրինայի» հիման վրա կոպիտ կերպով միջամտեցին Լի-
բանանի ներքին գործերին, կազմակերպեցին զինված ինտերվենցիա։

Անգլո-ամերիկյան իմպերիալիստները նույն ձևով վարվեցին և Հորդա-
նանի հետ։ Անգլիական պրոտեկտորատից 1956 թվականին հազիվ ազատված
այդ երկիրը նորից օկուպացված է անգլիական զորքերի կողմից։

Այժմ արդեն ակնհայտ փաստ է, որ թղթե տնակի նման փուլ է եկել մինչև
ուղն ու ծուծը ստահոդ այն վերսիան, թե Լիբանանի և Հորդանանի ժողովուրդ-
ների ազգային-ազատագրական շարժումը և այդ ժողովուրդների համար ան-
ընդունելի ռեժիմների դեմ նրանց պայքարն իբր հանդիսանում են դրսից կա-
ռավարվող ինչ-որ հրահրման հետևանք, Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայի
և Սովետական Միության ինչ-որ «անուղղակի ագրեսիայի» հետևանք։ Բանն
այն է, որ Լիբանանի և Հորդանանի ժողովուրդները հայրենասիրական մեծ
ավյունով պայքարի ելան ներքին այն ուժերի դեմ, որոնք խոչընդոտում են
ազգային լիակատար ազատագրության գործը։ Այն ժամանակ ԱՄՆ-ը և Անգ-
լիան ուղղակի զինված հարձակում, ագրեսիա ձեռնարկեցին այդ երկու ժողո-
վուրդների դեմ, որպեսզի ուժով նրանց պարտադրեն այնպիսի ռեժիմներ,
որոնք ձեռնտու են նավթի ամերիկա-անգլիական արքաներին։ Դա անհերքելի,
անվիճելի փաստ է. այն չի կարող ժխտվել Դալեսի փարիսեցիական բարբա-
ջանքներով։

Մերձավոր և Միջին Արևելքում վարած քաղաքականության մեջ անգլո-
ամերիկյան իմպերիալիստները հատուկ տեղ և նշանակություն են տալիս
Իրաքին։ Լինելով ընդհանուր առմամբ հետամնաց գյուղատնտեսական երկիր,
Իրաքը սակայն իր հարուստ նավթահանքերով վաղուց ի վեր հանդիսանում է
անգլո-ամերիկյան մոնոպոլիաների հարստացման կարևոր օբյեկտը։ Իրաքի
ժողովուրդը եր երկարատև պայքար է մղել իր անկախության համար։ Հակա-



ռակ Անգլիայի տված խոստման, առաջին համաշխարհային պատերազմի վեր-
ջին անգլիական զորքերը օկուպացրին Իրաքը, իսկ 1920 թվականին Անգլիան
ստանձնեց արաբական նորաստեղծ պետության «մանդատը»։ Այդ ժամանակ-
վանից Իրաքը մնում էր անգլիական իմպերիալիզմի փաստական գաղութը և
ծառայում որպես հարմար պլացդարմ Սովետական Միության վրա հարձակում
գործելու համար։ Երկար տարիների ընթացքում Իրաքում Անգլիայի և ԱՄՆ-ի
իմպերիալիստական, հակաժողովրդական քաղաքականության իրականացնողը
Նուրի Սայիդն էր, արաբական ժողովրդի դահիճը։

1955 թվականին Իրաքը, ԱՄՆ-ի և Անգլիայի պահանջով ստորագրեց ռազ-
մական պայմանագիր Թուրքիայի հետ, որը հանդիսացավ Բաղդադի պակտի
հիմքը, մի ագրեսիվ պակտ, որը միաժամանակ արաբական ժողովուրդների
ազգային-ազատագրական շարժման դեմ ուղղված գործիք է։ Ի հակադրու-
թյուն նորաստեղծ Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայի, իմպերիալիստների
ցուցմունքով և Նուրի Սայիդի ջանքերով արհեստականորեն կազմվեց, այսպես
կոչված, Արաբական ֆեդերացիա, որի մեջ առնվեցին Իրաքն ու Հորդանանը։
Սակայն Իրաքի և Հորդանանի պրոգրեսիվ ուժերը դեմ էին իմպերիալիստների
ցուցմունքով ստեղծված այդ ֆեդերացիային և պայքարում էին թե՛ իմպերիա-
լիստների, և թե՛ նրանց կամակատարների դեմ։

Սարսափած Լիբանանում սկսված ժողովրդական ապստամբության թա-
փից, որի մասին նշվեց վերևում, մի շարժում, որի նպատակն է երկրում տիրող
կարգերի դեմոկրատականացումը, վախենալով, որ այդ շարժումը կարող է
ընդգրկել նաև Իրաքը, գաղութարարների ցուցմունքով Նուրի Սայիդը տենդա-
գին գործունեություն էր ծավալել Բաղդադի բլոկի ներսում, ուժեր համախմ-
բելու ընդդեմ Լիբանանում զարգացող ազգային-ազատագրական շարժման։

Սակայն Նուրի Սայիդի ոստիկանական ռեժիմն ու տեռորը անկարող էին
վախեցնել Իրաքի ժողովրդին և հարկադրել նրան հրաժարվելու հանուն ազ-
գային անկախության իր մղած պայքարից։ Հուլիսի 14-ին «Ազատ սպաների»
կազմակերպության ղեկավարությամբ տեղի ունեցած բանակի ելույթի հետե-
վանքով, որին ջերմորեն պաշտպանում էր ժողովուրդը, միապետական ռեժիմն
Իրաքում տապալվեց, և Իրաքը հռչակվեց ռեսպուբլիկա՝ գեներալ Աբդել Քերիմ
Կասեմի գլխավորությամբ։ Ժողովուրդն արդար դատաստան տեսավ Նուրի Սա-
յիդի և միապետական ռեակցիոն կլիկի հետ։

Իրաքի ռեսպուբլիկայի կառավարության հայտարարության մեջ ասված
էր, որ ռեսպուբլիկան հրաժարվում է Բաղդադի ագրեսիվ պակտից, հավատա-
րիմ է լինելու Բանդունգի սկզբունքներին, ճանաչում է Միացյալ Արաբական
Ռեսպուբլիկան և դուրս է գալիս Իրաք-Հորդանանյան ֆեդերացիայից։ Միա-
ժամանակ Իրաքի ռեսպուբլիկայի կառավարությունը հայտարարեց, որ ինքը
կգործի Միավորված Ազգերի Կազմակերպության սկզբունքներին համաձայն,
կվարի արաբական քաղաքականություն, խստիվ կպահպանի Բանդունգի կոն-
ֆերանսի որոշումները և պատրաստ է կատարելու հայրենիքի շահերից բխող
պարտավորություններն ու պայմանագրերը։

Այս ամենը վկայում է, որ Իրաքի կառավարությունը մտադիր է պաշտ-
պանել երկրի ազգային անկախությունը և մյուս ազատասեր արաբական ժո-
ղովուրդների հետ միասին պայքարել գաղութակալության ծանր հետևանքները
հաղթահարելու համար, զարգացնել ազգային էկոնոմիկան և բարձրացնել ժո-

ղովրդի կենսամակարդակը: Կառավարությունն արդեն ձեռնամուխ է եղել իր առաջադրած խնդիրների կատարմանը:

Իրաքի ներքին իրադարձությունների էությունը հանգում է նրան, որ ժողովրդական մասսաները ոտքի են կանգնել պաշտպանելու իրենց ազգային անկախությունն ու օտարերկրյա մոնոպոլիստների կողմից հափշտակվող երկրի բնական հարստությունները: Ուստի, Իրաքի կառավարության ծրագրային հայտարարությունները, որոնք համապատասխանում են ինչպես Իրաքի, նույնպես և արաբական բոլոր ժողովուրդների ձգտումներին, միահամուռ պաշտպանություն գտան աշխարհի բոլոր խաղաղասեր և պրոգրեսիվ ուժերի կողմից:

Այժմ գնալով ծավալվում են ԱՄՆ-ի ինտերվենցիան Լիբանանում և Անգլիայի ինտերվենցիան Հորդանանում, սպառնալով տարածվելու և հարևան արաբական երկրները: ԱՄՆ-ի և Անգլիայի իմպերիալիստները ձեռնարկեցին այդ ինտերվենցիան՝ խախտելով միջազգային իրավունքի բոլոր նորմաները, շրջանցելով Միավորված Ազգերի կազմակերպությանը և խախտելով նրա կանոնադրությունը: Ուստի կեղծ, անհամոզիչ են հնչում ԱՄՆ-ի և Անգլիայի ղեկավար շրջանների փաստարկումները՝ արդարացնելու համար իրենց բացահայտ ինտերվենցիան: Դա ամբողջ աշխարհի առաջ բացահայտվեց Լիբանան ուղարկված ՄԱԿ-ի դիտորդների թե՛ առաջին, և թե՛ երկրորդ հայտարարություններով:

Այժմ բոլորի համար պարզ են անգլո-ամերիկյան իմպերիալիստների ռազմական միջամտության իսկական պատճառները: Դա նավթային մոնոպոլիաների ձգտումն է պահպանել իրենց գաղութային տիրապետությունը Մերձավոր և Միջին Արևելքում, պահպանել այն վիթխարի շահույթները, որոնք ստացվում են այդ երկրների ազգային հարստությունների կողոպտման հետևանքով: Այդ բանը չեն թաքցնում նույնիսկ անգլիական և ամերիկյան շատ թերթեր և գործիչներ: Անգլիական «Սկոտսմեն» թերթը գրում է. «Մեր գլխավոր հետաքրքրությունը Միջին Արևելքում դա՝ նավթն է»: Նույնը կրկնում են և ամերիկյան թերթերը: Նրանցից մեկը գրել է, որ «Դեպքերը Մերձավոր Արևելքում վտանգի տակ են դրել 3 միլիարդից ավելի դոլլար, որն արևմտյան նավթային ընկերությունները ներդրել են ալեկոծվող Միջին Արևելքում»:

Լիբանանում և Հորդանանում ծավալվող անգլո-ամերիկյան ինտերվենցիան լուրջ սպառնալիք է ստեղծում խաղաղության համար ոչ միայն Մերձավոր և Միջին Արևելքում, այլև ամբողջ աշխարհում: Ասիայի բոլոր երկրներում բարձրացել է վրդովմունքի և զայրույթի ալիքը ընդդեմ ինտերվենտների: Զայրույթով ու ցասումով լի են արաբական բոլոր ժողովուրդները, որոնք ԱՄՆ-ի և Անգլիայի գործողությունների մեջ տեսնում են կոպիտ ոտնձգություն իրենց անկախության և սուվերենության դեմ: ԱՄՆ-ի և Անգլիայի իմպերիալիստների այդ բացահայտ ագրեսիան միահամուռ կերպով դատապարտեցին Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան, ՍՍՌՄ-ը և ամբողջ սոցիալիստական լագերը:

Ամբողջ աշխարհով մեկ բարձր հնչեցին Սովետական կառավարության հայտարարությունը և նրա մեջ արված նախազգուշացումները չափը կորցրած անգլո-ամերիկյան իմպերիալիստներին: Այնտեղ ասված էր. «Սովետական Միությունը չի կարող անտարբեր մնալ իր սահմաններին հարող շրջանում լուրջ սպառնալիք ստեղծող իրադարձությունների նկատմամբ և իրեն իրավունք է վերապահում ձեռնարկելու անհրաժեշտ միջոցներ, որոնք թելադրվում են խաղաղության և անվտանգության պահպանման շահերով»:



Զինաթափման և միջազգային համագործակցության Ստոկհոլմում կայացած համաշխարհային կոնգրեսի մասնակից ավելի քան 70 երկրների ներկայացուցիչների կողմից միահամուռ կերպով ընդունված բանաձևում իմպերիալիստական տերություններից պահանջվում էր անհապաղ դադարեցնել ագրեսիան ընդդեմ Արաբական Արևելքի ժողովուրդների:

Սովետական ժողովուրդը բազմամարդ միտինգներում իր ձայնն էր միացնում ամբողջ աշխարհի միլիոնավոր մարդկանց բողոքին, որոնք անգլո-ամերիկյան իմպերիալիստներից զայրույթով պահանջում էին դադարեցնել ինտերվենցիան՝ «Ձեռքներդ հեռու արաբական երկրներից» լոզունգով:

Ելնելով խաղաղության և անվտանգության շահերից, Սովետական կառավարությունը միաժամանակ կոչ արեց ԱՄՆ-ի և Անգլիայի ղեկավար շրջանների բանականությանը և սառը դատողությանը, խաղ չանել կրակի հետ, դադարեցնել ինտերվենցիան և հինգ մեծ տերությունների ղեկավարների խորհրդակցություն հրավիրել ստեղծված դրությունը քննարկելու համար: Այդ նպատակով Սովետական կառավարության ղեկավար Ն. Ս. Խրուշչովը հուլիսի 18-ին դիմեց ԱՄՆ-ի պրեզիդենտ Էյզենհաուերին, Անգլիայի պրեմիեր Մակմիլլանին, Ֆրանսիայի պրեմիեր Դե Գոլին և Հնդկաստանի պրեմիեր Ներուին՝ քննության առնելու ստեղծված դրությունը: Սովետական կառավարության խաղաղասիրական քայլերը լայն արձագանք գտան ամբողջ աշխարհում, որպես խաղաղասեր մարդկության իղձերի արտահայտությունը: Սակայն ինտերվենցիայի կազմակերպիչները հրաժարվեցին ընդառաջ գնալ ՍՍՌՄ կառավարության առաջարկներին: Անգլո-ամերիկյան իմպերիալիստները շարունակում են իրենց զորքերը պահել Լիբանանում և Հորդանանում, մանևրում են Միավորված Ազգերի Կազմակերպության Գլխավոր Ասամբլեայի արտակարգ սեսիայում՝ ամրապնդելու համար իրենց զավթողական դիրքերը Մերձավոր Արևելքում:

ԱՄՆ-ի և Անգլիայի կողմից Իրաքի նոր կառավարության ճանաչումը ամենևին էլ չի նշանակում Իրաքի դեմ ագրեսիայի սպառնալիքի թուլացում: Համենայն դեպս, յուրաքանչյուր մարդու համար, ով աշխատում է ճիշտ հասկանալ ԱՄՆ-ի և Անգլիայի իսկական դիտավորությունները, մեծ տպավորություն է գործում ոչ թե խոսքով ճանաչելու քայլը, այլ Մերձավոր և Միջին Արևելքում այդ տերությունների զինված ուժերի շարունակվող կենտրոնացումը:

Պատերազմի վտանգին վերջ տալու միակ ռեալ ուղին նշված է Պեկինում Ն. Ս. Խրուշչովի և Մաո Ցզե-դունի հանդիպման մասին հրապարակված կոմյունիկեում: Սովետական Միությունը և ՉԺՌ-ն դատապարտելով ամերիկա-անգլիական իմպերիալիստների ագրեսիվ գործողությունները, պահանջում են «մեծ տերությունների կառավարությունների ղեկավարների խորհրդակցության անհապաղ հրավիրում՝ Միջին ու Մերձավոր Արևելքի դրությունը քննարկելու համար, ինչպես նաև վճռականորեն պահանջում են ԱՄՆ-ի զորքերը անհապաղ դուրս բերել Լիբանանից և Անգլիայի զորքերը՝ Հորդանանից»:

---

# ԿՈՐԾԱՆՎԱԾՆԵՐԸ ԱՆՄԱՀՆԵՐԻ ԴԵՄ

Վ. ՄԵԴՆԻԿՅԱՆ

Հարուստ է հայ գրականությունը վառ հայրենասիրությամբ տոգորված էջերով։ Մեծ է և անգնահատելի մանավանդ վերջին հարյուրամյակի հայ դեմոկրատ հեղինակների ավանդը հանուն ազգային ինքնագիտակցության զարգացման և հանուն սոցիալական ազատագրման մղվող պայքարի մեջ։

Այս տարի լրանում է «Վերք Հայաստանի»-ի լույս աշխարհ գալու հարյուրամյակը։ Թե՛ Աբովյանի և թե՛ նրա ժառանգորդների համար բնորոշ է եղել խորունկ մտահոգությունը, մշտական անհանգստությունը մայր ժողովրդի ճակատագրի վերաբերյալ, այն դժնդակ ճակատագրի, որ նախանշել էր աշխարհագրական միջավայրը, հայրենի այն բնաշխարհը, որտեղ նա կազմավորվել ու հարատևել է հազարամյակներից ի վեր։ Եվ այս ծանր մտահոգությունն է, որ հայ հայրենասեր հեղինակներին կանգնեցնում էր միևնույն կնճռոտ, դժվարլուծելի հարցի առաջ. ի՞նչ կերպ, ի՞նչ ուժերի ապավինելով է, որ հայ ժողովուրդը պիտի կարողանա բարգավաճ կյանք ստեղծել իր համար, իսկ երբեմն էլ՝ գեթ պահպանել իր սոսկական գոյությունը։

Իրավ, Մերձավոր Արևելքը բևեռային սառույցների մեջ կորած մի կղզի չէ։ Հայկական բարձրավանդակն իր լեռնահովիտներով հազարամյակներից ի վեր գոռ ընդհարումների մի թատերաբեմ է հանդիսացել Արևելքի և Արևմուտքի բանակների համար, ցեղային խճճված փոխհարաբերությունների մի հանգուցակետ, որտեղ խաղաղության ժամանակները երջանիկ բացառություն են եղել, ռազմի օրերը՝ անսկիզբ ու անվախճան։

Եվ ահա, դարերից ի վեր աշխարհակալ ներխուժողների դեմ մղած այդ դաժան պայքարում ռամիկ հայ ժողովուրդը վարժվել է իբրև իր բնական դաշնակիցներ և եղբայրակիցներ ճանաչել հարևան բնիկ ժողովուրդներին, որոնք բաժանել են իր ճակատագիրը, շատ անգամ հարստահարվելով ու կեղեքվելով օտար նվաճողների կողմից։ Սոցիալական, ռազմական և կուլտուրական կապերը հայ գեղջուկի և շինականի սրտում ծնունդ են տվել խորունկ մի զգացմունքի, եղբայրության, ընկերային-աշխատանքային համակրանքի զգացողության իրենց հարևանների նկատմամբ։

Եվ ատելով կեղեքումն ու հարստահարությունը, իրենց ցասումն ուղղելով ամեն տեսակի տզրուկների դեմ, ինչ ազգի էլ պատկանելիս լինեն նրանք, ռուսահայ դեմոկրատ հեղինակները՝ Աբովյանն ու Պռոշյանը, Աղայանն ու Սունդուկյանը, Թումանյանը, Շիրվանզադեն ու Իսահակյանը, ինչպես և նրանց արևմտահայ գրչակիցները՝ Պարոնյանը, Զոհրապը, Վարուժանը, և ուրիշներ, միևնույն ժամանակ ջերմ սիրով են խոսել հարևան ժողովուրդներին պատկանող հասարակ աշխատավոր մարդկանց մասին։

Մեծ Հոկտեմբերի մրրիկների մեջ մի նոր բազմահարուստ որակավորում



է ձեռք բերում նաև ժողովուրդների համերաշխության խորապես հայրենասիրական այս զգացողությունը, ոգեշնչելով միևնույն ժամանակ ժողովրդի ծոցից բարձրացած և նրա մտայնությունն ու հոգեբանությունը հարազատորեն արտացոլող հայ հեղինակներին։

Եթե մի կողմ թողնենք Հակոբ Հակոբյանին, որ հենց սկզբից գրականության մեջ է մտել իբրև հայ բանվորության դասակարգային շահերի արտահայտիչը, ապա Վահան Տերյանն էր առաջինը մեր մեծաքանքար, խորիմաստ ու հեռատես հեղինակների շարքում, որ գաղափարական ու հոգեկան բեկում ապրեց, ճանաչելով հայ ժողովրդի ազգային ազատագրումն իբրև միջանկյալ մի հետևանք համառուսական սոցիալիստական ռևոլյուցիայի։ Նա էր, որ գիտակցեց և զգաց իր հոգու բոլոր թելերով, որ կոմունիզմի դրոշի տակ անցած ռուս մեծ ժողովուրդն է այն միակ ուժը, որի վրա հենվելով՝ ազգային ինքնուրույնություն կարող է ձեռք բերել և կուլտուրական վերելք ապրել նորից բնաջնջման դուռը հասած հայ ազգը։ Եվ այս գիտակցությամբ էր, որ ռևոլյուցիայի հորձանուտի մեջ նետվելով 1917-ին, նա իր ֆիզիկական տկար ուժերն ու կորովը բոլորանվեր ի սպաս դրեց նոր կարգերի հաղթանակին և իր սեփական ժողովրդի կոմունիստական լուսավորությանը։

Նոր պայմաններում հայրենասիրական այս մեծ տրադիցիաների կրողը, նրա ժառանգորդը և գրոշակակիրը եղավ Եղիշե Չարենցը, որի ստեղծագործությունն իր ամբողջության մեջ ազգայինի և միջազգայնականի հանճարեղ մի համադրությունը եղավ, ճշմարիտ արտացոլումը հայ ժողովրդի արմատական շահերի և վսեմ ձգտումների։

Իհարկե, պարզ մի թյուրիմացություն կլիներ Չարենցի ստեղծագործության ընկալումն իբրև ուղղընթաց, անշեղ մի վերելք։ Միջավայրը, որի ծնունդն էր նա, պատմական ժամանակաշրջանի, հասարակական հոսանքների պայքարի բարդ, խճճված բնույթը, բանաստեղծի կրած գրական ազդեցությունները, նրա անձնական խառնվածքի յուրահատկությունը, վերջապես արտաքին այլ ազդակներ, որոնք բացասաբար էին ներգործում, խախտելով նրա հոգեկան հավասարակշռությունը,— այս ամենն իր արտահայտությունն էր գտնում Չարենցի ստեղծագործության մեջ։

Անհանգիստ մի բնավորություն, որոնող միտք, մշտաբորբոք, հրաշունչ հոգի, գիտության ծարավ, անբավ նորույթներ կլանող մի կիզակետ, իր ձեռք բերածով երբեք չգոհացող, զարմանալի ինքնածին մի անհատականություն, խիզախ մտահղացումների մի շտեմարան, հաճախ ինքնապարփակ, բայց և շատ անգամ պչեցուցիչ դյուրահաղորդ մի բնավորություն և, միևնույն ժամանակ, իր կենցաղի մեջ անհեթեթորեն անփույթ մի անձնավորություն, իր մեծության զգացողությամբ լի, բայց և մահկանացուի սովորական արատներով օժտված մի մարդ, այսպիսի խառնածին մի էություն, իրարամերժ հատկությունների մի կոնգլոմերատ էր Զարենց-մարդը ժամանակակիցների աչքում, ինչ որ դժվարացնում էր նրանց համար նաև Զարենց-բանաստեղծի ստեղծագործական բազմարդյունք որոնումների ճշմարիտ գնահատությունը։

Բայց տարիների հեռավորությունից, երբ մի հայացքով ընդգրկել ենք ուզում նրա անցած ճանապարհն իր էական նշանաձողերով, մենք տեսնում ենք լենինյան դարի ազնվասիրտ և փոթորկաշունչ բանաստեղծին, որն իբրև խելահեղ ամբոխների խանդավառված երգիչ, եղավ միևնույն ժամանակ իր ազատաբաղձ ժողովրդի նոր ազատության ջահակիրներից մեկը։

Ինչպես Չարենցի, նույնպես և ավելի կամ պակաս չափով սովետահայ
գրողների ավագ սերնդին պատկանող այլ հեղինակների գրական ժառանգու-
թյան մեջ իր ծաղկումն ապրեց այն հայրենասիրական տրադիցիան, որի գե-
րագույն սկզբունքներից մեկն էր ժողովուրդների եղբայրությունը և, մասնա-
վորապես, Աբովյանից մինչև Թումանյան ձգվող «ռուսասիրությունը», որը նոր
պայմաններում ավելի բարձր կենսական ուժ ստացավ, իբրև կոմունիստական
միջազգայնության վեհ սկզբունքներով տոգորված սերտ միություն՝ հնում
ճնշված փոքր ժողովուրդների և Հոկտեմբերին վերածնված ռուս ժողովրդի
միջև։

Հավատարիմ իրենց թթու ազգայնական մտայնությանը, դաշնակցական
խղճուկ լրագրողներ ճգնում են կեղծել պատմական իրողությունը, խաթարել
մեր մեծ հեղինակների դեմքը, ցեխ շպրտել նրանց հիշատակին, ստոր մի
վարքագիծ, որի կողքով անտարբեր անցնել չի կարող ոչ մի հայրենասեր
հայ մարդ։

Ահա անհույզ ոտանավորների հեղինակ ոմն Շահումի Բոստոնում տպա-
գրվող «Հայրենիք» ամսագրի մեջ զետեղել է որքան բովանդակազուրկ, նույն-
քան և հավակնոտ վերնագրով մի հոդվածիկ. «Խաչատուր Աբովյանը և սովե-
տահայ «աբովյանագետները»» (1957 թ., № 3)։ Ո՞րն է նրա շարժառիթը։ Պա-
րոն Շահումին սրտնեղում է. Աբովյանի «Թուրքի աղջիկը» Երևանում դիտվել
է իբրև մարմնացում «կովկասյան բախտակից ժողովուրդների եղբայրության»։
Սակայն հերքո՞ւմ է արդյոք նա այդ հայեցակետը, բերո՞ւմ է որևէ ապացույց
հաստատելու, թե, ասենք, հակաթուրքական մի երկասիրություն է այդ նորա-
վեպը։ Քավ լիցի. պարզապես պարոն Շահումու սրտովը չէ այս իրողությունը
և ուրիշ ոչինչ։ Էհ, գլուխը քարը, կասեք դուք. մեր մեծ լուսավորչին հազիվ
թե զբաղեցրած լինի այն հարցը, թե ավելի քան մեկ դար հետո դուր կգա՞
արդյոք իր կերտվածքը ազգուրաց մի գրչակի, որ շահավետ արտոնությունն
է վայելում մերթ ընդ մերթ հանդես գալու իբրև բանախոս՝ Մյունխենի հա-
յատյաց ձայնասփյուռով։

Ահա մի երկրորդ մերկապարանոց պնդում ևս այդ նույն հոդվածում, թե
Աբովյանը ռուսասեր չի կարող լինել, քանի որ հայրենապաշտ է։ Եվ այս
ասվում է նույն այն Աբովյանի մասին, որ գրել է. «Օրհնվի էն սհաթը, որ ռսի
օրհնած ոտը հայոց լիս աշխարհը մտավ ու ղզլբաշի անիծած շունչը մեր
երկրիցը հալածեց» և այլն։

Բայց հարկավոր է ինչ գնով էլ լինի ճերմակը սև ներկայացնել։ Ո՞վ գի-
տե, գուցե հայրենի եզերքից հեռու գտնվեն անտեղյակ մարդիկ, որոնց գայ-
թակղեցնի այս թունավոր խայծը։ Եվ ահա, սապարեզ է գալիս այս Շահումու
գրչեղբայրը, ինչ-որ Գ. Լ., որը բոստոնյան ամսագրի երկվորյակ լրագրում
(«Հայրենիք», 23 մայիսի 1957) դրվատում է իր կուսակից Գաբրիել Լազյանի
Կահիրեում դեռ նոր լույս աշխարհ եկող «Հայաստան և հայ դատը» գիրքը.
(նույն Գաբրիել Լազյանը չէ՞ արդյոք այս «Գ. Լ.»-ն, որն իր սեփական հո-
րինվածքն է «ժողովրդականացնում». չմոռանանք, որ ռեկլամի երկիր է Ամե-
րիկան, աճապարությունը բարձր կատարելության է հասել այնտեղ)։ Անցնում
է չորս ամիս, կրկին սապարեզ է գալիս «Գ. Լ.»-ն արդեն իբրև լիիրավ Գաբ-
րիել Լազյան և ազդարարում այս նույն լրագրի էջերից (18 հոկտեմբերի
1957), թե «պարզապես առասպել մըն է օտարներու այն կարծիքը, թե Կով-
կասի մեջ հայերը ռուսասեր են»։ Ի՞նչ փաստարկումներ ունի պարոն Լազյանն



իր քմածին պնդումը հաստատելու համար,— այդ իր՝ պարոն Լազյանի գաղտ-
նիքն է։ Դրա փոխարեն նա խծբծանքներ է թխում սովետահայ գրականագետ
Պ. Հակոբյանի գրքի շուրջը։ Վերջինս իր ««Վերք Հայաստանի» վեպի ստեղ-
ծագործական պատմությունը» աշխատության մեջ հիշել է, թե Աբովյանը
զայրույթով է խոսել հայկական մարզի ցարական կառավարիչներ Բեբուտովի
և Պացովսկու գործելակերպի նկատմամբ, որն արգելք էր հանդիսանում իր
(Աբովյանի) լուսավորական ծրագրերի իրականացման։ Զարմանալի կլիներ
անշուշտ, եթե ցարական պետության ապարատը, որը Ռուսաստանում չարա-
չար կեղեքում էր ոչ միայն ճորտ գյուղացիությանը, այլև ճնշում ամեն մի
ազատախոհություն, արգելակում ժողովրդի լուսավորությունը, այստեղ, Ան-
դրկովկասում որևէ այլ վարքագիծ որդեգրեր։ Աբովյանին պատիվ է բերում
միայն, որ նա, ինչպես Պուշկինի և դեկաբրիստների պես ազատախոհ մար-
դիկ այդ տարիներին, համառ ջանքեր էր գործ դնում հաղթահարելու պահպա-
նողականությունը և մտավոր անշարժությունը, վերացնելու ժողովրդի լուսա-
վորության դեմ ծառացող պատնեշները։ Փոխո՞ւմ է, սակայն, այս իրողու-
թյունը Աբովյանի ընդհանուր վերաբերմունքը դեպի ռուս ժողովուրդը։ Մա-
զաչափ անգամ ոչ։ Հենց այդ տարիներին Աբովյանը կազմում է ռուսերենի
քերականություն և բացատրում ու պարզաբանում իր սաներին, թե ռուսերեն
իմանալը և ռուս գրականությանը հաղորդակից լինելը անհրաժեշտ է աշխար-
հի ճանաչողության համար։ Ի տարբերություն Կահիրեում և այլուր նստած
ժամանակակից տիրացուների, Աբովյանին խպառ խորթ էր ազգային նեղ-
մտությունը. հայրենասեր լինելով հանդերձ, նա մեծ մարդասեր էր և պատ-
կերացնում էր մարդկությունը իբրև իր ուրույն դեմքն ունեցող ժողովուրդ-
ների մի համակեցություն, մի ծաղկեփունջ, որտեղ ամեն մի ծաղիկ իր տեղն
ունի («Ասենք վարդը շատ գովելի ա, բաս ընչի՞ չի մանիշակն իր ռանգը, իր
հոտը նրան տալիս։ Միթե վարդին տեսնողը՝ մանիշակին չի սիրիլ։ Սարի ան-
հոտ ծաղիկն էլ՝ իրան տեղը, իրան փառքը վարդի հետ չի փոխիլ»)։

Այս ամենը հանրածանոթ է, վաղուց ուսումնասիրված և արժեքավորված։
Պարունակո՞ւմ է արդյոք նոր տվյալներ Պրոն Հակոբյանի գիրքը կամ վերա-
նայո՞ւմ է արդյոք սովետահայ աբովյանագետների հայեցակետը այս առու-
մով։ Ոչ ամենևին։

Մենք հազիվ թե հարկ համարեինք կանգ առնել այս խղճուկ կեղծարա-
րության վրա, եթե եզակի մի փաստ լիներ դա։ Բանն այն է, որ դաշնակ-
ցական «գրագետները» տարիների ընթացքում և մանավանդ վերջերս, մեկը
մյուսին լրացնելով, ճիգ ու ջանք չեն խնայում աղճատելու նաև մեր ականա-
վոր գրողների դեմքը, սավեր գցելու նրանց ստեղծագործության վառ-հայրե-
նասիրական բնույթի վրա։

Շատ բնորոշ է այս առումով նրանց վերաբերմունքը դեպի Վահան Տեր-
յանը։ Նույն այն դաշնակցականները, որ օրն ի բուն շրջում են՝ «ազգ» և
«հայրենիք» խոսքերը բերան առած, առաջինն են հանդես եկել Վահան Տեր-
յանի հոգեկան-գաղափարական խոր շրջադարձի դեմ, որն սկսվեց 1915—1916
թվականներին մեր ժողովրդի մեծ ողբերգության տպավորության տակ։ Ահա
շատ բնորոշ մի օրինակ։ Պոետը 1917 թվականի հունվարի 18-ին Երևանում
հայ նորագույն պոեզիայի մասին կարդացած դասախոսությունից հետո, իր
այլ բանաստեղծությունների հետ միասին արտասանում է «Երկիր Նաիրի» շար-
քի իր երգերը, և այդ առիթ է ծառայում, որպեսզի նա վիրավորական կշտամ-

բանքի առարկա դառնա տեղական դաշնակցականների լրագրի մեջ, որը բառացի գրում է. «Նրա «Նաիրյան» երգերը խորթ էին ոչ միայն բանաստեղծի քնարին և հոգիին, այլ մեզի, զինքը ծափահարող հասարակության» [1]: Բնորոշ է, որ քառորդ դար հետո լույս տեսած «Հայ գրականություն» սովոր հատորում Հակոբ Օշականը ևս իբրև արվեստ է ճանաչում Տերյանի պոեզիան սոսկ այն չափով, որ չափով որ դա հակադիր կարող է լինել «իմաստավորել հավակնող» և «ընկերաբանել ախորժող» գրականության, որքան որ բանաստեղծը «երգած է մշուշը, ցավը, նրբությունը, անձին նվաղկոտ տագնապանքը և լուսնալուսային փափկությունները» [2]: Իրոք, սակայն, ո՞վ չգիտե, որ Տերյանի համար, իբրև բանաստեղծի, բնութագրիչ են ոչ միայն «լուսնալուսային փափկությունները» (sic!), այլև նաիրյան շարքը և վերջապես նրանից ոչ պակաս չափով, նրա 1917-ից 1919 թվականներին հեղինակած կրքոտ քաղաքական բանաստեղծությունները: Օշականը ևս լռության է մատնում ոչ միայն վերջիններս, այլև Տերյանի՝ ցավագին մորմոքով հագեցած հայրենաշունչ քերթվածները («Ինչպես չսիրեմ, երկիր իմ կիզված»... «Իջնում է գիշերն անգութ ու մթին»... «Հայրենիքում իմ արնաներկ»... «Այստեղ է լացել իմ մայրը»... և այլն): Եվ այդ հասկանալի կլինի, եթե նկատի առնենք բանաստեղծի խորին էվոլյուցիան դեպի կարմիր եզերքներ: Եվ ճիշտ այնպես, ինչպես Տերյանի մեջ, իբրև մարդու և հասարակական գործչի, անբաժան են հայ հայրենասերը և կոմունիստ-ինտերնացիոնալիստը, այնպես էլ նրա ստեղծագործության մեջ անխզելի մի միասնություն են կազմում նաիրյան երգերը և «երկինքը գրոհող» բանվորների ներբողն ու ազգային հպարտությամբ ներշնչված այն տողերը, որ նա նվիրել է Ստեփան Շահումյանին:

Դաշնակ «գրագետները» խաղ են սարքում նաև այնպիսի մեծատաղանդ հայրենասեր հեղինակի շուրջը, որպիսին է Դերենիկ Դեմիրճյանը: Ահա ձեզ ոմն Վ. Վալադյան, մի հոգով աղքատ, որն իր խղճուկ խծբծանքը՝ մարդկանց աչքին թոզ փչելու համար վերնագրել է... «Դերենիկ Դեմիրճյանի հիշատակին»: Նա անկարող է ժխտել այն, որ «իր արտադրանքի առատությունը հորձանքներ տվավ մանավանդ Հայաստանի խորհրդայնացումեն վերջ, երբ Դերենիկ կարելիություն ունեցավ լրիվ անձնատուր լինելու գրականության»: Այստեղ «աննշան» մի վերապահություն է միայն արվում. «Այդ առատությունը, սակայն, նոր ոչինչ ավելցուց այն արժեքին, զոր հեղինակը վաստակած էր նախապես իր «Բանաստեղծություններ» հատորով և «Դատաստան» թատերախաղով»:

Եվ կարծում եք այսքա՞նն է միայն: Ո՞ւր էր, որ այդպես լիներ: Պարոն Վալադյանն արդեն անկարող է կասեցնել իր մռայլ ժանտախոսության հախուռն ընթացքը. «Եվ ոչ միայն չավելցուց,— հավատացնում է նա,— այլև ընդհակառակը բան մըն ալ պակսեցուց նախնական արժեքեն, վավերական արվեստագետը դարձնելով գրագետ մը, որ իր գրիչը ծառայեցուց տիրող նոր վարչակարգին փառաբանության»:

Այս կետում պարոն Վալադյանն ինքը նույնիսկ շփոթվել է ըստ երևույթին, զգալով, որ կա ինչ-որ մի բան, որի կողքից լռությամբ անցնել իսպառ կարելի չէ... Եվ նա ներփակում է իր շուրջը գծած կախարդական շրջանա-

[1] «Աշխատանք», Երևան, 1917 թ., 26 հունվարի:

[2] Հ. Օշական, Հայ գրականություն, Երուսաղեմ, 1942, էջ 598:



կը. «Վարդանանք» ծավալուն վեպը ևս, որ շատերու կողմե կհամարվի՝ չեմ գիտեր ինչ թյուրիմացությամբ «գլուխ գործոց» մը, չի կրնար հավասարվիլ «Դատաստանին»»:

Նման ողորմելի «դամբանական»-ի հեղինակ դաշնակ «գրագետներ»-ը դեռ կուրծք են ծեծում, թե «մենք կգուրգուրանք բոլոր այն գրողներուն վրա, որոնք տաղանդ ունեն»: Քաղաքական կուրությունը, իրենց դարն ապրած իշխանազուրկ մարդկանց նենգությունը զավեշտական վիճակ է ստեղծում վալադյանների համար: Հենց այն թերթուկի 1957 թվականի հունվարի 24-ի համարը, որտեղ հինգ օր առաջ, հունվարի 19-ին, Վալադյանի նողկալի խծբըծանքն է զետեղված, բավականաչափ նկատելի տառերով կարդում ենք. «ստացանք բծախնդիր գրասէրներու կողմէ փնտռուած և դեռ վերջերս հրատարակված Դ. Դեմիրճյանի պատմական մեծ վեպը «Վարդանանք»»: Այդ գրասերներն այն բոլոր հայ մարդիկն են, ովքեր գիտեն գնահատել արվեստը, ովքեր գրական ճաշակ ունեն, որոնց վրա, ըստ երևույթին, «կարգախոսի մը համաձայն գրված լինելու» կամ «ապսպրված» լինելու հերյուրանքները տպավորություն չեն գործում այլևս: Դրանց թվին չի պատկանում պարոն Վալադյանը: Պարզ չէ՞ միթե, որ ազգուրացի մեկը, հայ գրականության թշնամին միայն կարող է վատաբանել «Վարդանանքը», վառ հայրենասիրությամբ տոգորված այդ հոյակապ գրվածքը:

Բայց թողնենք այդ խնդիրը: Առավել արգահատելի բնավորություն ունի այն ընթացքը, որ որդեգրել են դաշնակցականներն Ավետիք Իսահակյանի վերաբերյալ: Նրանց փարիսեցիությունն այստեղ ճշմարիտ որ չափ ու սահման չի ճանաչում: Մեծ քնարերգուի մահն առիթ ծառայեցնելով, նրանք կաշվից դուրս են գալիս՝ ստվեր գցելու նրա անմար փառքի վրա: Խղճալի՜ ջանքեր:

Նոր չի սկիզբ առնում, ի դեպ, նրանց նենգախոսությունը Իսահակյանի դեմ: Այն օրից այդ հայրենադավ խմբակցության աչքի փուշը դառավ ականավոր քնարերգուն, երբ տարագրությունից վերադարձավ Սովետների միջոցով փրկված մայր ժողովրդի ծոցը և իր ուժերն ի սպաս դրեց հայրենի կուլտուրայի զարգացմանը:

Նույն Հակոբ Օշականն իր միստիցիզմի մեջ բանականորեն դատելու կարողությունը կորցրած, դեռևս 1942 թ. արել է ապշեցուցիչ մի «հայտնագործություն», թե «Պատերազմը (1914) ավելցուցեր էր իր քնարին վրա գրեթե խարդախված ուրիշ լար մը, քաղաքական բանաստեղծության վարձու լարն էր ատիկա: Անոր վրա Իսահակյան չխղճահարեցավ իր ժողովրդին դարավոր հերոսներն իսկ նոր կարգերու գրահներով զինավորելու: Իր Մհերը (1915) նախատինք մըն էր այս ժողոռամկության բերողի զզվելի խարդախումովը: Չենք կրնար ներել այս մարդուն սա սրվրդի դարավոր ըմբռնումներուն: Չենք կրնար ներել այս մարդուն սա սրբապղծությունը» [1]:

Ճշմարիտն ասած, ոչ այնքան թերևս Իսահակյանի, որքան հայրենի ռամիկ ժողովրդի դեմ է ուղղված այս նենգախոսությունը մի մարդու կողմից, որը չի կարող ներել մեծ բանաստեղծին հենց այն, որ նա ժողովրդի նվիրական իղձերի թարգմանն է: Այս «սրբապղծությունն» է, որ չի կարող հանդուրժել

[1] Հ. Օշական, Հայ գրականություն, Երուսաղեմ, 1942, էջ 606:

«աղնվազարմ» Օշականը, գուցե և խկապես իր նախարարական ծագումի սին
պատրանքով մխիթարվող մի ցնորաբան։

Եվ ինչպիսի՜ անբարտավան պատվամոլություն. սևով սպիտակի վրա
գրում է «գերազնիվ» ճաշակի տեր այս հեղինակն իր ճոռոմ գրքի մեջ, թե
«Ավետիք Իսահակյանի անունին հետ անիմաստ կերպով հեղհեղված իմաս-
տասիրական քերթողությունը ճեռու է լրջութենե և կկազմե ծանծաղամիտ դա-
տումի տրտում փաստը։ Իսահակյան և մտածում իրարու հակադիր իրողու-
թյուններ են»[1]։ Խե՜ղճ ողորմելի. նա իրոք հավատացած է, թե իր վկայու-
թյունն էլ մի բան արժի այստեղ և թե իր բորբոսնած մտքի արգասիքը կարող
է արժենշվել աշխարհիս բորսաներում, եթե ազնվականի պատմուճան հագ-
նելու լինի։ Ճշմարիտ, չէր արժենա ուշադրության առնել ժամանակավրեպ
այս ունայնամտությունները, եթե այս «գրագետի» կուսակիցները, օրինակ
Թյոլեկյանը, ամենայն լրջությամբ չփառաբանեին այս ցնորաբանին, հռչակե-
լով նրան «քննադատության մարզի մեջ անմատչելի գագաթ մը». ճիշտ է,
Թյոլեկյանը անգամ չի ուրանում այդ «անմատչելի գագաթի» «չափազանցյալ
հանձապաստանությունը», նրա «արտակեդրոն մարդ» լինելը, այլև նրա «ան-
հեթեթությունները՝ լեզվական կառույցներու, քերականական զարտուղու-
թյուններու և վերլուծական մանրամասնություններու մեջ»[2]։

Ինքը, Թյոլեկյանը կարծես թե փոքր-ինչ տարանջատվում է իր այդ ուսուց-
չից, խոստովանելով, որ 1927-ից ի վեր, նաև սովետական հայրենիքում
տեղծագործելիս, Իսահակյանը պահել է «հայ հոգիին զմայլելի ճառագայ-
թումը»[3]։ Ավա՜ղ, այդպես թվում է միայն. երկու էջ այն կողմ ասված է, թե
«կոչված ենք զանց առնելու ապսպրված իր բոլոր գործերը»[4] և այսպիսով
գրչի մի հարվածով առ ոչինչ է հայտարարված մեծ բանաստեղծի երեսնամյա
վաստակը, եթե նույնիսկ այդ վաստակը հենց իր՝ Թյոլեկյանի վկայությամբ
ոչ այլ ինչ է, եթե ոչ «հայ հոգիին զմայլելի ճառագայթումը»։ Ահա թե ատե-
լության մոլուցքը ու քաղաքական կուրությունը ուր են հասցրել դաշնակ «գրա-
գետներին» իրենց հայատյացության մեջ։

Մեր մեծ քնարերգուին պսակազերծ անելու արդեն ավանդական դարած
այս վարքագիծը նոր պոռթկումներ ցուցաբերեց նրա մահվան կապակցու-
թյամբ։ Այս անգամ հանդես եկավ հասարակությանը վաղուց ծանոթ Վարդ-
գես Ահարոնյանը, որը նույնպես ճգնում է խառնվել մեծ բանաստեղծի հու-
ղարկավորության թափորին իբրև վաղեմի, թեկուզ շատ վաղուց լքված և
մերժված ծանոթ, աշխատելով տատանումներ գտնել բանաստեղծի քաղաքական
թվականների առաջին կեսին դավանած հայացքների մեջ։ Ինչ խոսք, այդ մի-
ջոցին, տարագրության մեջ, բանաստեղծի համար իրոք շատ բան կարող էր
պարզ չլինել հայրենիքի անց ու դարձից, մանավանդ որ նույն Վարդգես
Ահարոնյանի տիպի մարդիկ, որոնց ձեռքերն ու խիղճը արյունոտ էին, հոր-
դառատ աղբյուր էին հարուստ դեզինֆորմացիայի։ Ահա բանաստեղծը 1921
թվականի սեպտեմբերի 14-ին գրած իր նամակում սրտի ցավով հիշում է, թե
«Լեոյի Լիսիցյանի տղան սպանված է Երևանում»։ Խոսքը վերաբերում է աշ-

[1] Հ. Օշական, Հայ գրականության պատմություն, Երուսաղեմ, 1941, էջ 607։

[2] Մինաս Թյոլեկյան, Դար մը գրականություն, 1955, Գահիրե, Ա հատոր, էջ 654
և 655։

[3] Նույն տեղը, էջ 715։

Նույն տեղը, էջ 717։





խարհագրագետ Ստեփան Լիսիցյանի որդի հայկաբան Լևոն Լիսիցյանին, որի
մահվան բոթը Իսահակյանը քաղել էր ակնհայտորեն խեղաթյուրված աղ-
բյուրներից։

Իսկ տեղեկացրե՞լ է արդյոք այդ պահին լավատեղյակ Վարդգես Ահա-
րոնյանը բանաստեղծին, որ Լևոն Լիսիցյանը սպանվել է ոչ թե Երևանում, այլ
Էջմիածնում, որ նա առաջին զոհերից է Վրացյանի փետրվարյան ավանտյու-
րայի, որ նա սրախողխող է արվել դաշնակ հելուզակների ձեռքով (1921
թվականի փետրվարի 17-ին) Էջմիածնի վանքի բակում իր այն «հան-
ցանքի» համար, որ ստանձնել էր Հայաստանի նորաբողբոջ Սովետական կա-
ռավարության կողմից ազգայնացված մատենադարանի վարիչի պաշտոնը և
այդ գիշերը զենքը ձեռքին դուրս էր եկել բարբարոսներից պաշտպանելու
իրեն վստահված ժողովրդական հարստությունը։ Տեղեկացրե՞լ է արդյոք ավելի
քան լավատեղյակ Վարդգես Ահարոնյանը բանաստեղծին, որ Սովետական
կառավարությունը Էջմիածնում հուշարձան է կանգնեցրել հերոս-գիտնական
Լիսիցյանին իր մարտական ընկերների հետ։ Ո՛չ, իհարկե։ Ստոր դաշնակից
այդպիսի ազնվություն սպասելն էլ անիմաստ կլիներ անշուշտ։

Այս չէ գլխավորը սակայն։ Ուրիշ բան կա այստեղ։ Ակամա խոստովա-
նելով Իսահակյանի «ռուսասիրությունով տարված» լինելը, Վ. Ահարոնյանը
մեջ է բերում իբրև մեղադրանք (ըստ երևույթին հիմա էլ դեռ չի մոռացել, որ
պաշտոնով դատախազ էր Հայաստանում, 1920 թ. արյունոտ ամառը), Իսա-
հակյանի մի քանի տողը։ Ահա ամենաէականն այդ տողերից. «Միակ փրկու-
թյունը դժբախտ հայ ժողովրդի ռուսն է... Մեր ուժերով անկախություն չենք
կարող ունենալ, ոչ մի օգնող դրսի ուժ չկա. ամեն բան սուտ փրփուր դուրս
եկավ. Անգլիա, Ֆրանսիա, Ամերիկա թքեցին վրանիս... ամեն հայ գրեթե սա
գիտե, որ Եվրոպան ոչ թե միայն չի փրկի հային, այլև կուզենա և գործադրում
է հայի ոչնչացում»...

Այս խոսքերն Իսահակյանը, ըստ Վ. Ահարոնյանի տված տեղեկանքի,
գրել է 1921 թվականի դեկտեմբերի 24-ին իրեն ուղղված նամակում, և մենք
ունենք, այսպիսով, մի առարկայական ապացույց այն իրողության, որ այդ-
քա՜ն հստակորեն կարողացել է կողմնորոշվել Իսահակյանը այն ժամանակվա
բարդ իրադրության մեջ։ Պարոն Վ. Ահարոնյանը, սակայն, անկարող է զսպել
իր դժկամությունը։ Խոստովանելով Իսահակյանի «ռուսասիրությունով տար-
ված» լինելը, նա թույլ է տալիս իրեն անարգական մի նկատողություն, թե
«1921-ին Ավ. Իսահակյանի հայեցակետը Ռուսաստանի վերաբերյալ այն է
եղել, ինչ որ հարյուր տարի դրանից առաջ ձևակերպել են Խ. Աբովյանի «Վերք
Հայաստանի»-ի մեջ Քանաքեռի քյաղխուդաները. «Թող ասված ուսի թուրը
կտրուկ անի, մենք էլ նրա շուքի տակ ապրենք»։ Ի՞նչ ասես այստեղ։ Այն, որ
հայ ազգի գոյության համար ճակատագրական նշանակություն ունեցող այս
հարցում, Աբովյանից ավելի քան մեկ դար հետո, իրենք դաշնակցական «պատ-
մագետները» իրոք որ չեն հասել դեռևս գոնե Քանաքեռի քյաղխուդաների գի-
տակցությանը։ Ինչպիսի՜ անախրոնիզմ, որպիսի՜ ապշեցուցիչ հետընթա-
ցություն։

Հարկավ, այս մոլի դաշնակ Վ. Ահարոնյանը հայ ժողովրդի հանճար
Կոմիտասին ևս կդասի քյաղխուդաների շարքը, եթե իմանա, որ տակավին
1909 թվականին նա դաշնակցությունը համարել է «ատամները թափած», իր
«կործանիչ ուղղությամբ» և «փուչ ուժերով մի խմբակ», որը շարունակում է

իր քայքայիչ աշխատանքը հայ ժողովրդի մեջ և վերջինս ուրախ է, երբ ազատվում է այդ «անկոչ հարկահանի ձեռքից»: Բնորոշ է, որ դեռ 1912 թվականին Կոմիտասը խոր համոզումով գրել է, թե հայ ժողովրդի համար «չիք փրկություն արտաքո Ռուսիո», որ «չպետք է խաբվենք Եվրոպայի զանազան խոստումնալից խափկանքներեն», որ «ինքը ռուս հեղափոխությունն է, որ պետք է հայ ժողովրդին ազատություն բերի»:

Այս ամենից հետո զարմանալի չէ անշուշտ, որ խպառ անընդունակ լինելով ըմբռնելու Զարենցի տեղն ու դերը հայ գրականության մեջ, խղճուկ ոտնձգություններ են անում պարոնայք դաշնակները, կեղծելու համար բանաստեղծի ժառանգության բնույթը, այլափոխելու խորունկ հայրենասիրությունից բխող նրա վառ ինտերնացիոնալիզմը: Բայց թող նրանք չմոռանան իրենց հասցեագրված Զարենցի տողերը.

Իզո՛ւր եք ոռնում այդպես վայրահաչ
Դուք անկախության պայքարի մասին.—
Դա մե՛րն է հիմա, դա մե՛րն էր առաջ,
Որքան էլ զավով դուք բաղմալխսի
Փորձեր եք արել, փորձում եք հիմա,
Ինչպես միշտ՝ ահա կրկի՛ն և կրկի՛ն
Մեզ քշել դեպի կործանում ու մահ,
Մեզ լծել, ծախու գրաստի նման,
Թե՛ հայ, թե՛ օտար տերերի կառքին:

Թող որ մեկ անգամ ևս կարդան դաշնակ «գրագետներն» այս տողերը և որոշեն, «ազգային» են սրանք, թե՞ «հեղափոխական»:

Իրավ, ինչպե՞ս չհիշես այս առնչությամբ, որ եթե կա մի դավանանք, որին ամենահետևողական և կրքոտ կերպով հետևել է Զարենցն իր ստեղծագործության մեջ, ապա դա նախ և առաջ ազգային սահմանափակության, նաիրյան տիրացուականության և, մանավանդ, դաշնակցական նացիոնալիզմի ժխտումն է: Օրինակներ բերելու համար հարկ կլիներ թերևս շատ էջեր զբաղեցնել այստեղ. ավելորդ և անիմաստ մի աշխատանք: Ավելին, եթե կային երկնքի տակ երկոտանի արարածներ, որոնց խորին արգահատանքի զգացմունքով միայն հիշում էր Զարենցը, ապա դրանք հենց դաշնակցականներն էին, ինչ որ քաջ հայտնի է բանաստեղծի հետ անձնապես ծանոթ ամեն մի մարդու:

Անցած տարի արտասահմանի դաշնակ գրչակները հատուկ գրքույկ են աշխարհ հանել՝ իբր Զարենցին բնութագրող, և հիմա էլ, ռեկլամի առարկա դարձրել նրա ստահոդ բովանդակությունը: Մի նմուշ առնենք այս առնչությամբ ասպարեզ եկած հերյուրանքներից, ցույց տալու համար, թե անհեթեթության ինչպիսի հերկուլեսյան սյուների կարելի է հասնել ամոթ-պատկառանքը կորցնելուց հետո: Ահա ոմն Հ. Կարապենցի գրախոսությունը, նվիրված Կահիրեում լույս ընծայված այդ գրքույկին, որի հեղինակն է քաղաքական շառլատանության մեջ վաղուց ի վեր հռչակ հանած Վահան Նավասարդյանը: Գրախոսը ակնհայտորեն մի նպատակ է դրել իր առաջ, սարդոստայնի թելերով էլ որ լինի Զարենցի հետ կապել այդ գրքույկի նորերս վախճանված հեղինակին, նրան ևս օրինավոր մարդկանց հասարակության մեջ քաշ տալու համար: Եվ իր թունոտ լորձունքն առատորեն հեղելով, նա հրապարակ է հանում դաշնակների կողմից քանիցս չարաշահության առարկա



դարձած աննշան մի պատահմունք, ներկայացնելով այն իբրև պարոն Նավասարդյանի հանդիպումը... «իր հին բարեկամ Զարենցի հետ»...

Ինչի՞ մասին է խոսքը: Ամեն ոք հարց կտա, ի՞նչ «բարեկամ» կարող էր լինել Զարենցն իր երդվյալ թշնամիներին, որոնց դեմ զենքը ձեռքին կռվում էր 1921 թվականին, ի՞նչ հանդիպում է դա: Ի հեճուկս դաշնակցականների, այդպիսի մի «հանդիպում» իրոք եղել է Զարենցի 1925 թվականին Եվրոպա կատարած ուղևորության միջոցին: Բաց արեք «Խորհրդային Հայաստան» լրագրի 1925 թվականի ապրիլի 5-ի համարը. Եղիշե Զարենցի ստորագրությամբ այնտեղ զետեղված է մի «արտասահմանյան պատմվածք» բավականաչափ տպավորիչ վերնագրով. «Հանգուցյալ պարոնը կամ պարոն հանգուցյալը»: Զարենցը պատմում է, թե ինչպես Հռոմում, որտեղ ինքը չուներ բառացի և ոչ մի ծանոթ, ազգային թանգարանի նկարները դիտելիս, «անսպասելի ֆամիլիարությամբ» մոտենում և իր հետ խոսքի է բռնվում մի մարդ և իրեն թվում է, թե հրաշքով հանդիպել է մի կենդանի ննջեցյալի, ավելի ճիշտ «մի հարություն առած հանգուցյալի, որին ես ինքս իմ սեփական աչքերով տեսել եմ դագաղում, անգամ ճանապարհ եմ դրել մինչև գերեզմանատուն, և նույնիսկ մի բուռ հող ինքս եմ ցանել վրան...»:

Ոչ միայն այս տողերը, ամբողջ պատմվածքն սկզբից մինչև վերջ իր սպանիչ սարկազմով ոչ մի երկմտության տեղ չի թողնում: Ի դեմս իրեն հանդիպած այս «կենդանի ննջեցյալի», որն ավարտուն մի տիպ է, Զարենցը պատկերում է դաշնակցականներին իբրև տարօրինակ մի անախրոնիզմ, իբրև ժամանակավրեպ մի երևույթ, կատարյալ մի անհեթեթություն այսօրվա աշխարհում: Ճշմարիտ որ Կարապենցի թռչնային ուղեղը պետք է ունենալ ենթադրելու համար, թե հավատացողներ կգտնվեն, եթե պարզապես վերցնես ու գրես. «Մեզ թվում է, թե այդ պարզ հանդիպումը ճակատագրական ազդեցություն ունեցավ Զարենցի վրա, մի տեսակ դարձակետ վերաքննության ենթարկելու իր փայփայած համոզումները»: Դագաղից ելած ննջեցյալը «ճակատագրական ազդեցություն» (!!!) պիտի ունենար եռանդալից ու կռվասիրտ բոլշևիկ բանաստեղծի վրա... Խելքի աշեցեք:

Իրեն ներկայացած անդրշիրիմյան էակի արտաքին նկարագիրն ամբողջացնելով, Զարենցը համառոտակի պատմում է այդ «հանգուցյալ պարոնի» կենսագրությունը. խմբագիր է եղել իր կենդանության օրոք, և հիմա (1925-ին) «այն մյուս աշխարհում ևս» հրատարակում է «Հույս երկնային և Աստվածային» անունով մի թերթ: Այդպիսով, Զարենցը պարզ ակնարկում է, որ Կահիրեում լույս տեսնող «Հուսաբեր» թերթի և նրա խմբագիր Վահան Նավասարդյանի մասին է խոսքը: Անդրաշխարհային այդ խմբագիրը, ըստ Զարենցի, դեռ հոդվածներ է զետեղում հանդերձյալ աշխարհում լույս ընծայվող իր լրագրում, որոնք նվիրված են հոգեհարցության (սպիրիտիզմի) հարցերին, «որպիսիք են մեռելների հարությունը, հոգու անմահությունը, ահեղ դատաստանը և այլն»: Եվ ահա, մենք հարկադրված ենք արձանագրել այսօր, երեսուն տարի հետո, որ այդ զբաղմունքը նախընթաց հանգուցյալից ժառանգաբար անցել է նրա զավակին, մեր ժամանակակից պարոն հանգուցյալին: Հիմա էլ, 1957-ին, որդի Նավասարդյանը մեկնաբանելով իր հոր «նշանավոր» հանդիպումը Զարենցի հետ, անմահ բանաստեղծին ևս ուզում է քաշ տալ-տանել իրենց հետ հանգուցյալ աշխարհը՝ իրենց նմաններին ընկերացնելու, «հայտնագործելով» թե նա «կրոնական շունչով կշնչա», թե նրա «գրչի տակ է, որ

կուգան և կմիանան քրիստոնեության սիրո և արդարության մեծ իդեալը»[1] և
նման այլ միստիկական զառանցանքներ:

Զարմանալի ոչինչ չկա այստեղ անշուշտ. ուրիշ անելիք պարոն հանգու-
ցյալներին չի մնում, և չարժեր էլ ուշադրության արժանացնել նրանց, եթե
անդրաշխարհային գործերով սահմանափակեին իրենց զբաղմունքը: Ինչպե՞ս
լուռ մնաս սակայն, եթե դիվահարի մոլեգնությամբ ճակատը պատին զարնե-
լով, նորից ու նորից են ճգնում իբրև Չարենցի «բարեկամ» ներկայացնել այն
նույն շառլատանին, որն իր ճշգրիտ պատկերը տեսնելով հիշյալ «եվրոպական
պատմվածքում», դեռ այն ժամանակ կատաղության մոլուցքի մեջ դեն շպրտեց
Հռոմում հագած դիմակը, ավելի քան մեկ անգամ հանդես գալով իբրև Չարեն-
ցի արյունռուշտ թշնամի բառիս բուն իմաստով և առիթը եկած տեղը չքաշ-
վեց նույնիսկ հրապարակորեն խոստովանելուց, որ «պոլշևիկ քնարերգուի»
մահը միայն ուրախություն կպատճառեր իր նմաններին»[2]:

Մեզ մնում է ասել ժամանակակից «պարոն հանգուցյալներին». մի՛ հա-
մարձակվեք բերան առնել մեծ բանաստեղծի անունը, նա զզվելով զզվում էր
ձեզնից իր ամբողջ գիտակից կյանքում. և դուք նրա անհաշտ թշնամիներն
էիք միշտ և մնում եք այսօր: Ձեզ և միայն ձեզ ուրախացրեց նրա ֆիզիկա-
կան վախճանը, քանի որ դուք միշտ սարսափում էիք նրա ձեզ համար սպա-
նիչ խոսքից: Ձեր ճակատին է նա խարանել իր ճշմարիտ խոսքերը.

> Լծված տերերի շառաչուն կառքին՝
> Հռնդում եք դուք այդտեղ վայրահաչ.
> Ժանգոտած սուսեր ձեռքերիդ պահած՝
> Անկում եք կարդում իմ նոր աշխարհին:
> Օ, դո՛ւք, ողբալի պնակալեզնե՛ր,
> Բանակալների մի հետին քուրջում:
> Կծկված՝ արդյոք կարո՞ղ եք տեսնել,
> Թե ինչո՛վ ենք մենք ապրում ու շնչում:

Այո, ձեր ժանգոտած սուսերն ուղղելով հայ ժողովրդի սքանչելի զավակ-
ների սրտին, հանդես գալով մեծ հայրենասերներ Աբովյանի և Իսահակյանի,
Տերյանի, Դեմիրճյանի ու Չարենցի դեմ, դուք մի ավելորդ անգամ մերկացնում
եք ձեր դեմքն իբրև հայ ազգից դուրս գտնվող մի հերձվածի, իբրև իմպե-
րիալիզմի պնակալեզների, ազգադավ արկածախնդիրների մի խմբակցության:

Անցած տարի, ուրիշ զինվորագուրկ զորավարների շարքում իր մահկա-
նացուն կնքեց դաշնակցական լրագրողներից մեկը՝ Շավարշ Միսաքյանը: Եվ
ահա, իբրև վկայություն նրա մոլի «գաղափարայնության», իր կուսակիցները
շատ անգամ հորջորջեցին հանգուցյալի մի նամակի մեջ գրած իրոք հատ-
կանշական այս խոսքերը. «Զարաչար կզղջամ, որ ամբողջ կյանքի ուժերս
մաշեցան հեհե, օրը օրին ամուլ տքնությամբ: Այ մարդ, որո՞ւ համար
կգրես: Երեսուն տարի երակներդ քամեցիր, ո՞ւր է արդյունքը»[3]:

Հարցն այն է, սակայն, որ անխուսափելի էր այդ ֆիասկոն, քանի որ
անհող էին նրա դավանած գաղափարները, և այդ «գաղափարները» քարոզե-
լով նա ճշմարիտ որ նվիրել էր իրեն ամուլ մի տքնության: Հարցն այն է, որ

[1] Բ. Նավասարդյան, «Որբուրդ մեծ և սքանչելի», «Հուսաբեր», 5 հունվարի, 1957 թ.:
[2] Տես թեկուզ նրա «Հուսաբերի» 1926 թ. օգոստոսի 14-ի, № 166-ի խմբագրականը:
[3] «Հուսաբեր», 28 հունվարի, 1957 թ., «Հայրենիք», 8 փետրվարի, 1957:



«դաշնակցությունն» իբրև քաղաքական պարտիա, արտահայտելով հայ բուր-
ժուազիայի դասակարգային շահերը, հենց էն գլխից որդեգրել էր հայ ժո-
ղովրդի ազգային շահերին ներհակ, նրա համար ծայրահեղորեն վնասակար,
նույնիսկ ոճրապատում մի «կուրս» առհասարակ, հայ-ռուս հարաբերություն-
ների խնդրում մասնավորապես:

Հանդիսանալով ռեակցիոն մի հոսանք, դաշնակցությունն ազգային նեղ-
մտության իր անձուկ պատյանից անտեսեց արմատական տարբերությունը մի
կողմից ցարիզմի ու նրա պետական ապարատի, մյուս կողմից՝ ռուս ժողո-
վրդի, նրա վիթխարի առաջադիմական ազատարար ուժերի միջև: Բնորոշ է,
որ նույնիսկ 1917-ի փոթորկաշունչ աշնանը, երբ ռուս զորքը հայապաշտպան
միակ ռեալ ուժն էր Մերձավոր Արևելքում, դաշնակցական պարագլուխները
պահանջ էին դնում, որպեսզի այդ զորքը շուտափույթ հեռանա Արևմտահա-
յաստանից և Անդրկովկասից և ամեն ջանք գործ էին դնում նրա շարքերը
կազմալուծելու համար: Այսպես էին վարվում նրանք այն պահին, երբ
ճշմարիտ հայ հայրենասերները, որոնք իսկապես մտահոգված էին հայության
ճակատագրով, հրապարակորեն զգուշացնում էին սպառնացող նոր ահարկու
վտանգից. «Եթե Թուրքական զորքը չի ցանկանում և չի կարող կռվել, ապա
բաց տարածությամբ առաջ քաշվել նա կարող է ազատ կերպով: ...Ռուս զորքի
հանկարծական ետ քաշվելը չափից դուրս ծանր դրություն կստեղծի Թուրքա-
հայաստանում: ...Գիտենալով իրերի վիճակը այս տարաբախտ երկրում մենք
պետք է համոզված լինենք, որ այնտեղ նոր դժոխք առաջ կգա, անմեղ խա-
ղաղ բնակչության նոր արյան գետեր կհոսեն»[1]: Այսպես է գրել Ստեփան
Շահումյանը 1917 թվականի դեկտեմբերի 20-ին իր խոսքը ռուս զինվորների
մասսային ուղղելով, հորդորելով նրան չլքել անպաշտպան Թուրքահայությա-
նը, թեկուզ և նա՝ ռուսական բանակը, լիակատար հիմք ունի վրդովված լի-
նելու կովկասյան շովինիստների դավադիր ընթացքից:

Հետևանքները հանրածանոթ են. հայ ժողովուրդը 1918-ից 1921 թթ. ավե-
լի քան մի անգամ կանգնեց ազգովին բնաջինջ լինելու վտանգի առջև, ըստ
որում, դա ուղղակի հետևանք եղավ դաշնակցության քաղաքականության, որը
հայ ժողովրդի ազգային շահերը փաստորեն ստորադասում էր Թուրք փաշա-
ների քաղաքական նախասիրություններին:

Վերջերս պարոն Սիմեոն Վրացյանը նորից ճիգ է անում մոլորեցնելու
սփյուռքահայությանը, ներկայանալով նրան իբրև աղավնահոգի մի էակ:
Սակայն պատմական փաստ է, որ 1921 թվականի փետրվարին, երբ հայ
ժողովուրդը հազիվ շունչ էր առնելու անվախճան պատերազմներից, ոչ այլ ոք,
եթե ոչ պարոն Վրացյանն էր, որ նոր արյունահեղության վիհը նետեց նրան:
Ըստ որում, իր ավանտյուրայի առաջին իսկ օրերից նա անընդհատ կշտամ-
բանքներ էր թափում հայ ժողովրդի գլխին նրա «անուղղելի ռուսասիրության»
համար: Ահա բառացի նրա օրապակաս լրագրի խոսքերը. «Սկսած հայ ինտե-
լիգենցիայից մինչև հայ գյուղացին ու բանվորը՝ հայ ժողովուրդը բռնված էր
ռուսամոլության աղետաբեր ցավով»[2] (ականջը կանչի պարոն Գաբրիել Լազ-
ռուսամոլության աղետաբեր ցավով»

[1] С. Г. Шаумян, К отходу Кавказской армии. „Кавказский рабочий", 20 декабря, 1917 г.
[2] «Հայաստանի և Թուրքիայի բարեկամության խնդիրը». Խմբագրական «Ազատ Հայաստան»-ի, 15 մարտի, 1921 թ.:

յանի, որ «առասպել» է ճանաչում «օտարներու կարծիքը», թե «Կովկասի մեջ հայերը ռուսասեր են»)։

Նենգամիտ վրիժառության մոլուցքով բռնված, պարոն Խատիսովին անգամ գերազանցելով իր ազգուրացության մեջ, Վրացյանն իր թերթում ո՛չ միայն շարունակ փառաբանում էր այդ օրերին Վրաստանի հողում առաջ շարժվող թուրք զորքերին, այլև Բեհաեդդին էֆենդիի հետ եղբայրացած, զենք էր խնդրում իր քիրվաներից հայ ժողովրդի զավակների արյունը թափելու համար։ Իսկ հայրենի եզերքներից դուրս շպրտվելուց հետո էլ, ամեն անգամ և ամեն տեղ, հավատարիմ իրենց ավանդական կոչմանը, դաշնակցական սնանկ «գործիչները» զինվորագրվում են ամենից ավելի ռեակցիոն, կատաղի ռազմատենչ տերություններին։ Այն ժամանակ, երբ սովետական դրոշի տակ անցած հայ ժողովուրդը «խաղաղությամբ զրահավորված» (ինչպես հայրենադարձ մեծ քնարերգուն արտահայտվեց 1926 թվականին) վերակերտում էր իր հայրենիքը, դաշնակցականները լծակցում էին լուրեններին Մերձավոր Արևելքում տակնուվրայություններ առաջ բերելու համար, իսկ հետո աճապարանքով լիզում էին հիտլերյան արյունոտ գարշապարը։ Վերջապես այսօր էլ հլու կամակատար լինելով դալեսներին, նրանք զինակցում են տաճկական ռեակցիոն բուրժուազիային և պատրաստ են ծվեն-ծվեն անել նաև սփյուռքահայության մարմինը։

Էլ ի՞նչ կա զարմանալի այն ծանր ֆիասկոյի մեջ, որ վիճակվել է դաշնակցական մոլի «գործիչներին» և որը հարկադրում է նրանց դառնորեն խոստովանել, թե «խորտակվեցան անհաշիվ բերդեր՝ թաղումն թաղում և գերեզմանն գերեզման առաջնորդելով մեզ»[1]։

Թողնենք սակայն կործանվածներին, որ մխիթարվեն «վերապրումներով» ու «վերհիշումներով». այդ է բաժին մնացել նրանց այսօրվա աշխարհում։ Չէ՞ որ «դաշնակցությունը» մեկն է պատմականորեն կույր ծնված այն քաղաքական խմբակցություններից, որոնց մասին ընդունված է ասել. ոչինչ չսովորեցին և ոչինչ չմոռացան։

Իսկ կյանքն առաջ գնաց։ Առաջ գնաց և հայ գրականությունը, ծաղկեց ու փարթամացավ իր սոցիալիստական բովանդակությամբ ու ազգային ձևով։

Այո, կյանքը շատ առաջ գնաց։ Եվ ահա, անդրկովկասյան ժողովուրդների թևակցումը նոր, Սովետական Ռուսաստանին, սոցիալիստական հզոր Միության կազմում՝ ճամփա բացեց հայկական նոր, սոցիալիստական կուլտուրայի բուռն ծաղկման համար, որը երազել չէր կարելի առաջներում։

Անցած տարի Ալեքսանդրիայում կայացած մի «գրական սալոնի» քըննության առարկա է եղել «ազգային երևույթը գրականության մեջ» շահեկան խնդիրը։ Եվ, ինչպես տեսնում ենք, «Հուսաբեր»-ում այս առթիվ զետեղված ամփոփագրից, «Հայաշունչ» և «Հայադրոշմ» գրականությունը պատկերանում է այնտեղ մի կերպ միայն, իբրև հակադրություն և իբրև ժխտումն համամարդկային նյութերով զբաղվող գրականության։ Բնորոշ է, որ այդ սալոնի ժամանակ «նյութը ներկայացնողը» (մեր տերմինով ասած՝ զեկուցողը) չի անգիտանում նույնիսկ, որ կան հայ հեղինակներ, որոնք «ազգային» լինելով, միևնույն ժամանակ «մարդկային» են, այսինքն՝ որոնց ստեղծագործությունն իր «խորքով» համամարդկային բնավորություն ունի։ Իբրև օրինակ նա հի-

[1] Բեգլար Նավասարդյան, «Գրիչը և աղոթքը», «Հայրենիք», 17 մարտի, 1957 թ.։



շում է Սայաթ-Նովային և Նարեկացուն, թեև վերջինս իր հետ բերում է և «ցեղային հատկանիշներ և մտածելակերպ» (այդ «ցեղային հատկանիշը» Նարեկացու մեջ՝ զեկուցողի կարծիքով «հայ հոգիին միստիկականությունն է»), (sic!)։ Բայց այս խնդիրը չէ զբաղեցնում մեզ տվյալ դեպքում։ Այնուամենայնիվ, հակառակ Նարեկացու և Սայաթ-Նովայի վերաբերյալ իր սեփական ըմբռնումի, նա իբրև իր ընդհանուր եզրակացություն և իբրև խորհուրդ հայ հեղինակներին, պնդում է, թե «հայ գրողը իր հոգիին մեջ խորապես ապրելով հայ իրականությունը՝ զայն պիտի պայծառակերպե» և «ազգայինը գրականության մեջ պիտի դառնա մեր մտահոգության միակ առարկան»[1]։

Այստեղ էլ հենց, պարզաբանելով իր այս սկզբունքը, զեկուցողը իբրև իրեն ցանկալի այդ «մաքուր», «զտարյուն» ազգայնության նմուշ, մատնանշում է Ավետիք Ահարոնյանին, քանի որ նրա «գրական թեմաները առնըված են բացառաբար մեր ժողովրդի կյանքեն»։ Հիշենք նախ և առաջ, որ այնպիսի մի ազգայնամոլ հեղինակ նույնիսկ, որպիսին Ահարոնյանն է, ժամանակակից աշխարհում ապրելով, չի կարողացել խուսափել ոչ հայկական նյութերից (օրինակ՝ ուղեգրություններ նվիրելով Շվեյցարական գյուղին կամ Իտալիային)։ Այդ չէ խնդիրը, սակայն։ Առանց սրան էլ պարզ չէ՞ միթե, որ երբ ժամանակակից մի գրասեր կոչ է անում իր գրչակիցներին պայծառակերպել միայն և միայն «հայ իրականությունը», թեմաներ առնել «բացառաբար» հայ ժողովրդի կյանքից, մտահոգության միակ առարկա ճանաչել գրականության մեջ ազգայինը, ապա դրանով իսկ նա հրավիրում է նրանց այնքան հեռու գնալ իրենց հետընթացության մեջ, որ այս ճանապարհին շատ հետ կմնան նաև ահարոնյանական նշանաձողերը։

Դժվար չէ հասկանալ, որ ազգային նեղմտության այս քարոզը, եթե անգամ հայրենասիրական պատմուճանով է հրապարակ գալիս, էապես հակահայրենասիրական բնույթ ունի, քանի որ ձգտում է սահմանափակել, խեղճացնել, աղքատացնել հայ հեղինակի աշխարհազգացողությունը և, վերջին հաշվով, նեղացնել նաև հայ ընթերցողի մտահորիզոնը, պարփակել նրան մի անձուկ պատյանի մեջ, անջատել հայ մարդուն միջազգային կապերից։

Այսօրինակ ըմբռնումը, մանավանդ ժամանակակից իրականության մեջ, երբ ժողովուրդները տնտեսական, կենցաղային և կուլտուրական կապերով շատ ավելի սերտ են շաղկապված իրար հետ քան երբևիցե, և երբ հայ ժողովուրդը մայր Հայրենիքում ունի իր բարգավաճող պետականությունը սոցիալիստական ազգերի ընտանիքում, ավելի շեշտված հետադիմական բնույթ ունի, քան կարող էր ունենալ կես դար սրանից առաջ։

Առավել ևս աչքի է զարնում այդ մտայնության ծայրահեղորեն ռեակցիոն բնույթը, երբ մտքով անդրադառնում ենք հետհոկտեմբերյան իրականության մեջ նոր հայրենասիրություն մարմնացնող Չարենցի պոեզիային, որն իրոք հարուստ մի գանձարան է, ուսանելի ժամանակակից ամբողջ հայ գրականության համար։

Լինելով առաջավոր գաղափարների մունետիկը, ներկայանալով իբրև միջազգային համագործակցության և եղբայրության արդյունավոր ուղին ոտք դրած իր ժողովրդի ազատաբաղձ հոգու թարգմանը, Եղիշե Չարենցը, լայն մտահորիզոնի տեր մի անձնավորություն, իր սրտի բոլոր լարերով ապրում էր

[1] «Ազգային երևույթը գրականության մեջ», «Հուսաբեր», 30 հունվարի, 1957 թ.։

նաև ուրիշ ժողովուրդների բախտով, ոգևորվում նրանց նվաճումներով, իր հուժկու ձայնով շեփորում նրանց մեծագործությունները: Եվ մի՞թե այդ տիպի երկերում, օրինակ Կոմունարների Փարիզը փառաբանող «Մյուր դե Ֆեդերեի» մեջ Չարենցն իր կենսազգացումով պակաս չափով հայ բանաստեղծ է, քան, ասենք թե, իր «Նաիրի»-ում: Ո՛չ, իհարկե: Հարցն այն է միայն, որ արտահայտելով հայ ժողովրդի արմատական շահերից բխող ինտերնացիոնալիստական մտայնությունն ու աշխարհազգացումը, Չարենցն առաջավոր հայ մարդկանց, մարդկային առաջադիմության ժամանակակից մակարդակի վրա գտնվող հայ մարդկանց մտքերն ու հույզերն էր կաղապարում, և ոչ թե տեր-թոդիկյան վարժատնից դուրս եկած ինչ-որ տիրացուների, որոնց համար աշխարհն իրենց մարագից ու հավաբնից այն կողմը չի տարածվում: Ահա թե ինչու Չարենցի այդ կարգի երկերը, որոնց նախօրինակն է թերևս «Սոման», որոնց անթառամ նմուշներից է «Ամբոխները խելագարված» պոեմը, և որոնց կատարելատիպերից են Լենինին պատկերող նրա հոյակապ գրվածքները, որ հայ գրականության փառք ու պարծանքն են: Ինքը Չարենցը ևս լավ ըմբռնելով իր ստեղծագործական որոնումների և անցած ճանապարհի դասերը, հայտարարեց սովետական գրողների առաջին համագումարում. «Ես երջանիկ եմ և զգում եմ ինձ մարդկության առաջավոր հոսանքի մասնիկը,— ասում էր նա,— որ Հոկտեմբերյան հեղափոխությունը վերացրել է իմ հոգևոր տեսադաշտից ազգային ինքնասահմանափակումների այդ ողորմելի ցնորքը»[1]: Եվ ժամանակակից սովետական գրականությունը, լինելով ամբողջ հայ ժողովրդի, նրա ստեղծարար ղանգվածի հոգու թարգմանը, ընթանում է այդ նույն ճանապարհով:

Ինչ խոսք, ինչպես Չարենցը, նույնպես և ամեն մի ժամանակակից հայ հեղինակ, հոգեպես կապված է իր ծննդավայրի հետ, նա լավ է ճանաչում այս կամ այն միջավայրը, կյանքի այս կամ այն բնագավառը, և իրեն մոտիկ, իրեն հարազատ այդ միջավայրը ստեղծագործական հղացումների հորդառատ աղբյուր է իր համար: Անիմաստ և անհեթեթ բան կլիներ ինչ-որ սահմանափակումներ առաջ բերել, ինչ-որ շրջանակների մեջ դնել հեղինակներին այս առումով: Գլխավորը տվյալ դեպքում միջավայրը չէ, այլ կյանքի ճանաչողությունը, մոտեցումը կյանքի երևույթներին. պատկերացումների, գաղափարների և հույզերի այն ամբողջությունը, որ արտահայտում է հեղինակը: Մենք սիրում ենք Ղազախի բնությունը, անգամ կենդանական աշխարհը, երբ կարդում ենք Վախթանգ Անանյանի պատմվածքները: Մեզ հմայում է Զանգեզուրն իր կուսական բնությամբ, ուզում ենք գնալ, շրջել փրփրադեզ Որոտանի ափերին, երբ կարդում ենք Համո Սահյանի բանաստեղծությունները կամ Սուրեն Այվազյանի պատմվածքները: Արարատյան դաշտի այգիներն են կանչում, հրապուրում մեզ Հրաչյա Հովհաննիսյանի բանաստեղծությունների մեջ: Սակայն սիրելի են այս հեղինակների երկերը ո՛չ միայն և ո՛չ այնքան աշխարհագրական այն միջավայրի բերումով, որ նրանք պատկերում են, այլ գերազանցապես՝ այն կենսազգացողությամբ, որ նրանք արտահայտում են: Ի՞նչ կլինեին Անանյանի պատմվածքները կամ Սահյանի բանաստեղծություններն առանց ջերմ մարդասիրության, ավելի ճշգրիտ՝ վեհ մարդկայնության այն զգացմունքի, որով համակված են նրանք: Ի՞նչ կլինեին Հրաչյա Հովհաննիսյանի բանաստեղծություններն առանց վառ կենսասիրության, որ ցայտում է նրանց ամեն մի տողից, առանց այն ջերմ սիրո, որ մենք զգում ենք այստեղ դեպի աշխատավոր մարդը, դեպի հայ այգեգործը, նրա գեղեցիկ հոգին: Լայնասիրտ ու լայնախոհ մարդն է, որ կանգնում է մեր առջև իբրև լիրիկական հերոս ինչպես այս հեղինակների, նույնպես և նրանց շնորհալի գրչակիցների երկերում, և մենք սիրում ենք նաև այն միջավայրը, որ գեղանկարում են նրանք:

[1] Եղիշե Չարենց, Գրականության մասին, Երևան, 1957, էջ 166:



Բայց մենք նախրյան սահմանափակ վարժապետներ, անուղղելի տիրացուներ կլինեինք, եթե տրամադրեինք մեզ ընդունել, ընկալել, սիրել և գնահատել միայն «տեղայնականը» և վտարանեինք այնպիսի գրվածքները, որոնք ջատագովում են սովետական տարբեր ազգերի փոխադարձ հոգեհարազատությունն իր բազմապիսի արտահայտություններով (ասենք թե Սիլվա Կապուտիկյանի, Վահագն Դավթյանի, նույն Համո Սահյանի և այլոց այն բանաստեղծությունները, որ տոգորված են վառ ինտերնացիոնալիստական աշխարհազգացողությամբ): Ինչ խոսք, այս տիպի երկերում հայ մարդու հոգին արտացոլվում է ոչ պակաս հարազատ կերպով, քան հայրենի բնությունը գեղանկարող երկերում, քանի որ ժամանակակից հայ աշխատավոր մարդու, առավել ևս կոմունիստի, հոգեբանության էական հատկանիշը, նրա անբաժանելի բաղկացուցիչ տարրն է եղբայրության զգացմունքը դեպի այլ ժողովուրդները:

Թող գրական ռեակցիայի մունետիկները Կահիրեի «Հուսաբեր»-ի էջերից կոչ անեն անջատելու «ազգայինը» «մարդկայինից» և ինքնապարփակվելու նեղ ազգայինի մեջ: Իսկ հայ ժողովուրդն ընթանալով Մեծ Հոկտեմբերի ռևոլյուցիոն ուղիով, իր շահերի միակ պաշտպանի՝ Հայաստանի Կոմունիստական պարտիայի անդուլ ղեկավարությամբ ստեղծել է նոր, սոցիալիստական կուլտուրա, նոր, Սովետական Հայրենիք: Ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի գանձարանն են մտնում և խնամքով պահպանվում հայ ժողովրդի անցյալի կուլտուրայի դեմոկրատական, պրոգրեսիվ տարրերը: Անցյալի այգուց մենք վերցնում ենք ամեն մի հոտավետ ծաղիկ և յուրաքանչյուր պիտանի ծառ, իսկ փշերն ու մոլախոտերը թողնում ենք պարոնայք դաշնակներին, որպես սփոփանք:

Մեր դարաշրջանում հայի հայրենիքը միայն Սովետական Հայաստանն է: Նա է ճշմարիտ հայրենասերը, ով ո՛չ միայն խոսքով, այլև գործով օգնում է Սովետական, սոցիալիստական Հայրենիքի բարգավաճման գործին:

Վերածնված հայ ժողովուրդը սոցիալիստական ազգերի լենինյան եղբայրության դրոշով ընթացել է և կընթանա հաղթանակից հաղթանակ: Իսկ կործանված դաշնակներին մնացել է մի երթուղի՝ «թաղումե թաղում և գերեզմանե գերեզման»:

# ԱՇԽԱՏԱՆՔԻ ԻՆՏԵՆՍԻՎՈՒԹՅԱՆ ՈՒԺԵՂԱՑՈՒՄԸ ՈՐՊԵՍ ՊՐՈԼԵՏԱՐԻԱՏԻ ԱՂՔԱՏԱՑՄԱՆ ԳՈՐԾՈՆ

*Վ. ԳԱԲՈՒՋՅԱՆ*

*Աշխատանքի ինտենսիվությունը՝ դա արտադրության պրոցեսում աշխատանքի լարունության աստիճանն է։ Աշխատանքը մի պրոցես է, որի ընթացքում նպատակահարմար սպառվում է մարդկային էներգիա, ծախսվում են աշխատողի մտավոր ու ֆիզիկական կարողությունները։ Հետևաբար յուրաքանչյուր աշխատանք բնախոսական անհրաժեշտությամբ պահանջում է որոշակի ինտենսիվություն, անկախ արտադրական հարաբերությունների բնույթից։ Սակայն այս ընդհանրությունը կոնկրետ բովանդակությամբ է դրսևորվում տարբեր հասարակարգերում։ Արտադրության կապիտալիստական եղանակի պայմաններում աշխատանքի ինտենսիվացումը ուղղակիորեն ծառայում է արտադրության նպատակի՝ հավելյալ արժեքի ստեղծման պահանջներին։*

*Հայտնի է, որ գոյություն ունի հավելյալ արժեքի արտադրման երկու եղանակ՝ բացարձակ, երբ աշխատօրը երկարացվում է աշխատուժի արժեքի ստեղծման համար անհրաժեշտ աշխատօրվա անփոփոխ պայմաններում և հարաբերական, երբ աշխատանքի արտադրողականության բարձրացման միջոցով անհրաժեշտ աշխատօրը կրճատվում է ամբողջ աշխատօրվա անփոփոխ պայմաններում։ Թեև այս երկու եղանակները որպես կանոն հանդես են գալիս անխզելիության մեջ, սակայն նրանց փոխադարձ կապը և նրանց ու աշխատանքի ինտենսիվացման հարաբերակցությունը կապիտալիզմի զարգացման տարբեր էտապներում ընդունել են տարբեր ձևեր։*

*Կապիտալիզմի զարգացման վաղ շրջանին բնորոշ էր հավելյալ արժեքի մեծացման բացարձակ եղանակը՝ աշխատօրվա երկարացման միջոցով։ Սակայն, մի կողմից, բանվոր դասակարգի դիմադրության աճող կազմակերպվածությունը և, մյուս կողմից, աշխատօրվա ֆիզիկական սահմանները արգելակեցին այս եղանակի հետագա ուղին։ Հավելյալ արժեքի անհագ ծարավը տարերային խթան հանդիսացավ տեխնիկայի զարգացման միջոցով աշխատանքի արտադրողականության բարձրացման համար, որի շնորհիվ անհրաժեշտ աշխատօրվա կրճատումը հնարավորություն ընձեռեց համեմատաբար փոքր աշխատօրվա սահմաններում մեծացնելու հավելյալ աշխատաժամանակը. այսպիսով, աստիճանաբար սկսեց տիրապետել հարաբերական հավելյալ արժեքի արտադրությունը։ Իհարկե սա չի նշանակում, որ վերացավ հավելյալ արժեքի արտադրման բացարձակ եղանակը։ Դասակարգային պայքարի սրման հետևանքով հնարավորություն չունենալով մասսայականորեն շարունակել բանվորական օրվա բացարձակ ու բացահայտ մեծացումը, բուրժուազիան անցավ այն երկարացնելու նոր, քողարկված մեթոդի։*



*Բացարձակ հավելյալ արժեքի արտադրման նոր օրինաչափ ձևը հանդես եկավ որպես աշխատանքի ինտենսիվության խիստ ուժեղացում, որը «ենթադրում է աշխատանքի ավելի մեծ ծախսում միևնույն ժամանակամիջոցում»*[1]*։ Միևնույն ժամանակամիջոցում ավելի շատ աշխատանքի ծախսման համար կապիտալիզմի զարգացումն արդեն ստեղծել էր ինչպես սուբյեկտիվ, այնպես և օբյեկտիվ նախադրյալներ։*

*Աշխատանքի ինտենսիվության բարձրացումը հիմնականում իրականանում է «երկակի եղանակով. մեքենաների արագության ավելացումով և մեքենաների՝ միևնույն բանվորի վերահսկողության տակ գտնվող քանակի ավելացումով»*[2]*։ Այսպիսով, աշխատանքի արտադրողականության բարձրացումն ու ինտենսիվության ուժեղացումը օրգանապես կապված են միմյանց հետ և հանգում են նույն հետևանքին — աշխատանքային յուրաքանչյուր միավոր ժամանակի ընթացքում ավելի շատ արտադրանքի թողարկման։ Սակայն աշխատանքի արտադրողականության բարձրացումը ինքնըստինքյան չի ենթադրում աշխատանքի ինտենսիվության ուժեղացում։ Մեքենաների կատարելագործումն ու տեխնիկայի պրոգրեսը բնականորեն չեն պայմանավորում աշխատանքի ինտենսիվության մեծացում, այլ, ընդհակառակը, հնարավորություն են ստեղծում աշխատանքային պրոցեսի լարունության նվազեցման համար։ Սոցիալիստական արտադրական հարաբերությունների տիրապետման պայմաններում աշխատանքային պրոցեսի լարվածության նվազեցման ուղղությամբ մեքենաների կատարելագործման ու տեխնիկայի պրոգրեսի ընձեռած հնարավորությունները վերածվում են անխուսափելիության։*

*Եթե արդյունաբերական կապիտալիզմի ժամանակ աշխատանքի արտադրողականությունը մեծանում էր նշանակալի չափով մեքենաների կատարելագործման և արտադրության կազմակերպման բարելավման հետևանքով, ապա իմպերիալիզմի, առանձնապես, կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի ծավալման ժամանակաշրջանում, հիշյալ գործոններին զուգահեռ, նրանցից անկախ ու աստիճանաբար մեծացող էֆեկտիվությամբ սկսում է ուժեղանալ աշխատանքի ինտենսիվացման դերը։ Հասկանալի է, որ այս մեթոդը, որպես բացարձակ հավելյալ արժեքի արտադրման թաքուն ձև, քողարկում է աշխատուժի սպառման իրական չափերը, քողարկում է ավելի շատ, խտացված աշխատանքի ծախսումը աշխատօրվա համեմատաբար նեղ սահմաններում։*

*Բանվոր դասակարգի պայքարի հետևանքով հաջողվում է երբեմն աշխատանքի խիստ ինտենսիվացումը որոշ չափով մեղմել առանձին երկրներում և երբեմն բարձրացնել անվանական աշխատավարձը։ Բուրժուական տնտեսագետ Պեյշը գրում է, որ «մեկ բանվորի թողարկած արտադրանքի անընդհատ մեծացման պայմաններում հնարավոր է բարձրացնել աշխատավարձը, առանց ավելացնելու արտադրության ծախսերը։ Սակայն նպատակահարմար է նշված հնարավորության ստեղծումից հետո որոշ ժամանակ սպասել և ապա միայն բարձրացնել աշխատավարձը»։ Սակայն, նույնիսկ նման դեպքում, բանվորների աշխատանքի «անչափ լարվածության հետևանքով նրանց աշխատավարձն ավելի է նվազում»*[3]*, որովհետև աշխատավարձի աճը ոչ մի դեպքում չի հաս-*

---

1 *Կ. Մարքս, Կապիտալ, հ. 1, էջ 547։*

2 *Նույն տեղը, էջ 432։*

3 К. Маркс и Ф. Энгельс, Соч. т. V, стр. 543.

նում ինտենսիվացման տեմպերին: Այսպիսով, աշխատանքի ինտենսիվության
ուժեղացումը հանդիսանում է կապիտալիստական երկրներում բանվոր դա-
սակարգի աղքատացումն ուժեղացնող գործոններից մեկը:

Կապիտալիզմի ժամանակ բանվոր դասակարգը աղքատանում է կապի-
տալիստական կուտակման ընդհանրական օբյեկտիվ օրենքի գործողության
հետևանքով: Պրոլետարիատը աղքատանում է հարաբերականորեն, քանի որ
կապիտալիստական երկրներում տարեցտարի նվազում է բանվոր դասակար-
գի բաժինը ազգային եկամտի մեջ և անընդհատ աճում է փոքրամասնություն
կազմող շահագործող դասակարգերի բաժինը: Այսպես, օրինակ, պաշտոնական
տվյալներով, եթե Ֆրանսիայում աշխատավորների բաժինը ազգային եկամտի
մեջ 1939 թվականին կազմում էր 45 տոկոս, ապա 1952 թվականին այն իջել է
30 տոկոսի: 1948 թվականին Իտալիայում բանվորների և ծառայողների բաժինը
ազգային եկամտի մեջ կազմել է 31,6 տոկոս, 1951 թվականին՝ 30,1 տոկոս,
իսկ 1955 թվականին՝ 26,3 տոկոս: Հասկանալի է, որ կապիտալիզմի ժամա-
նակ ազգային եկամտի մեջ աշխատավորների բաժնի յուրաքանչյուր տոկոսի
բացարձակ արտահայտությունը բազմապատիկ ավելի փոքր է, քան ազգային
եկամտի մեջ բուրժուազիայի բաժնի յուրաքանչյուր տոկոսի բացարձակ ար-
տահայտությունը այն պարզ պատճառով, որ եթե, օրինակ, Անգլիայում ներ-
կայումս ազգային եկամտի 39 տոկոսն է հասնում աշխատավորներին, ապա
այդ 39 տոկոսի բացարձակ մեծությունը բաժին է հասնում ամբողջ ազգա-
բնակչության ճնշող մեծամասնությանը՝ շուրջ 90 տոկոսին. իսկ ազգային
եկամտի մնացած 61 տոկոսի բացարձակ մեծությունը բաժին է հասնում ամ-
բողջ ազգաբնակչության փոքր մասին՝ սոսկ 10 տոկոսին:

Կապիտալիզմի ժամանակ բանվոր դասակարգը աղքատանում է ոչ միայն
հարաբերականորեն, այլև բացարձակորեն, այսինքն՝ ապրում է ուղղակիորեն
վատթարացող կենսապայմաններում: Եվ չնայած երբեմն բանվորի անվանա-
կան աշխատավարձը բարձրանում է, բայց թանկանում է կյանքը, նրա կենսա-
պայմանները շարունակում են վատթարանալ: Այդ ապացուցվում է, հենց որ
անվանական աշխատավարձի դինամիկան համեմատենք ապրանքագների աճի
հետ: Պարզվում է, որ այդ երկու ցուցանիշների հարաբերությունը, այսինքն՝
բանվորների ռեալ աշխատավարձը նվազում է: Եթե նկատի ունենանք նաև այն,
որ նման երևույթին զուգահեռ անընդհատ ուժեղանում է բանվորի աշխատան-
քի ինտենսիվությունը, ապա հանդես կգա կապիտալիստական հասարակար-
գին հատուկ մի օրինաչափություն. այն է՝ ռեալ աշխատավարձի մեծությունը
անընդհատ նվազելով աշխատուժի արժեքից, զրկում է բանվորին իր աշխատա-
ուժը վերականգնելու նորմալ հնարավորություններից:

Պետք է ասել, որ ռեալ աշխատավարձի անկումը թեև պրոլետարիատի
բացարձակ աղքատացման գլխավոր ցուցանիշն է, սակայն ոչ միակը: Կա-
պիտալիզմի օրոք բանվոր դասակարգի աղքատացումը ուժեղանում է գործա-
զրկության և աշխատանքով ապահովված չլինելու պատճառով: Բավական է
ասել, որ ԱՄՆ-ում, Արևմտյան Գերմանիայում, Անգլիայում և Իտալիայում
ներկայումս, ըստ պաշտոնական տվյալների, կան շուրջ 9 միլիոն գործա-
զուրկներ, չխոսելով կիսագործազուրկների շատ ավելի ստվար բանակի առկա-
յության մասին: Բացի գործազրկությունից, պրոլետարիատի բացարձակ աղ-
քատացման գործոններից է նաև կապիտալիստական երկրների ժողովրդական
տնտեսության ռազմականացման հետևանքով հարկերի ավելացումը: Այսպես,



օրինակ, Անգլիայում հարկերի ընդհանուր գումարը 1955 թվականին, 1939
թվականի համեմատությամբ ավելացել է շուրջ 5 անգամ: Սակայն աշխատա-
վորների ուսերին ընկնող հարկերի աճման տեմպերը գերազանցում են ամ-
բողջ հարկերի գումարի աճման տեմպերին, որովհետև, եթե 1947/48 թթ. շա-
հույթներից մասհանումները, այսինքն՝ բուրժուազիայի վճարած հարկերը
կազմել են ամբողջ հարկերի գումարի 24 տոկոսը, ապա 1953/54 թթ. այդ
տեսակարար կշիռը իջել է 14 տոկոսի:

Բացի հիշյալ գործոններից, պրոլետարիատի կենսամակարդակը վատթա-
րանում է նաև բնակարանային պայմանների, կրթական մակարդակի, առհա-
սարակ՝ կենցաղային պայմանների անկման հետևանքով: Պրոլետարիատի
բացարձակ աղքատացման գործոններից է նաև աշխատավորների առողջապա-
հական պայմանների վատթարացումը, որն իր հերթին մեծ չափով պայմանա-
վորված է աշխատանքային պայմանների վատթարացումով և աշխատանքի
ինտենսիվության ուժեղացումով:

Կապիտալիզմի ժամանակ աշխատանքի ինտենսիվության ուժեղացումով
սաստկանում է բանվոր դասակարգի բացարձակ աղքատացումը: «Կապիտալն
այնպես արագ է սպառում աշխատուժը, որ բանվորն արդեն միջին հասակում
մեծ մասամբ ավելի կամ պակաս չափով զառամած է լինում»[1]: Այլ կերպ
ասած՝ շահագործող դասակարգերը ոչ միայն յուրացնում են բանվոր դասա-
կարգի ստեղծած հավելյալ արժեքը, այլև թաքուն և խարդախ ձևով լրացու-
ցիչ շահույթներ են ծծում աշխատավորական լայն մասսաների առողջության
հաշվին՝ քամելով բանվորի աշխատելու ունակության մինչև վերջին կաթիլը:
Այս օրինաչափությունը ամենևին չի փոփոխվում աշխատանքի ինտենսիվու-
թյան ուժեղացման հետ միասին աշխատավարձի բարձրացման քարոզներով
կամ փորձերով: Նույնիսկ ռեալ աշխատավարձի բարձրացման եղակի դեպքե-
րում, աշխատուժի արժեքի և նրա փաստացի գնի միջև գոյություն ունեցող
մկրատը շարունակում է մեծանալ ոչ միայն այն պատճառով, որ, ինչպես
նշվեց, աշխատանքի ինտենսիվության ուժեղացումը աճում է ավելի արագ
տեմպերով, քան աշխատավարձը, այլև այն պատճառով, որ «մինչև մի որոշ
կետ աշխատուժի ավելի մեծ մաշումը, որ անխուսափելիորեն կապված է աշխա-
տանքային օրվա երկարացման հետ (առավել ևս աշխատանքի ինտենսիվաց-
ման հետ — Վ. Գ.), կարող է համակշռվել նրա ուժեղ փոխհատուցումով: Այս
կետի սահմաններից դուրս մաշումն աճում է երկրաչափական պրոգրեսիայով,
և միևնույն ժամանակ խորտակվում են աշխատուժի վերարտադրության ու
գործունեության բոլոր նորմալ պայմանները»[2]:

Քանի որ աշխատանքի ինտենսիվացման աճը կապիտալիստական հասա-
րակության մեջ պրոլետարիատի բացարձակ աղքատացման գործոններից է,
քանի որ աշխատանքի ինտենսիվացման աճը հավելյալ արժեքի մեծացման
մեթոդներից մեկն է, նշանակում է՝ աշխատանքի ինտենսիվության մեծա-
ցումը ուժեղացնում է բանվոր դասակարգի հարաբերական աղքատացումը:
Այսպիսով, կարելի է սահմանել, որ կապիտալիզմի պայմաններում աշխա-
տանքի ինտենսիվության ուժեղացումը ուղղակիորեն ուժեղացնում է բանվոր
դասակարգի բացարձակ և հարաբերական աղքատացումը:

---

1 Կ. Մարքս, Կապիտալ, հ. I, էջ 672:
2 Նույն տեղը, էջ 550:

Անգլիական մեկ բանվորի աշխատանքի ինտենսիվությունը շատ բարձր է և, հատկապես, երկրորդ համաշխարհային պատերազմից հետո գնալով մեծանում է: Ժամանակակից նվաճումների համեմատությամբ անգլիական արդյունաբերության տեխնիկական զինվածությունը խիստ ցածր է, արտադրության ստանդարտացումը՝ հետամնաց: Անգլիայում, այդ «երկրորդ» իմպերիալիստական երկրում, բանվորի միջին տարեկան արտադրանքը 2—3 անգամ քիչ է, քան ԱՄՆ-ում, այն ժամանակ, երբ, ինչպես գրում է «Ֆայնանշըլ Թայմսը» իր 1953 թվականի հունվարի 2-ի համարում, անգլիական մեկ բանվորի միջին տեխնիկական հագեցվածությունը մինչև չորս անգամ ցածր է, իսկ էներգազինվածությունը՝ 3—4 անգամ պակաս: Չնայած այս հանգամանքին, Անգլիայում արդյունաբերության ոչ-ռազմական ձեռնարկություններում կապիտալ ներդրումների նվազման հետ միասին մեկ բանվորի թողարկած արտադրանքի քանակը մեծանում է:

Անգլիական բանվորի տեխնիկական թույլ հագեցվածության, նույնիսկ կապիտալ ներդրումների կրճատման պայմաններում, սխալ կլիներ մեկ բանվորի արտադրանքի աճն ամբողջովին վերագրել միայն աշխատանքի ինտենսիվացման ուժեղացմանը, քանի որ Անգլիայում աշխատանքի արտադրողականությունը դանդաղորեն բարձրանում է նաև արտադրական պրոցեսների տեխնիկական, թեկուզ աննշան, այնուամենայնիվ առկա, ինչ-որ կատարելագործումների շնորհիվ: Մյուս կողմից՝ սխալ կլիներ նսեմացնել ինտենսիվացման ուժեղացման ճնշող նշանակությունը՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում: Նույնիսկ բուրժուական մամուլն ընդունում է, որ «բրիտանական արդյունաբերության մեջ ժողովրդի կողմից հսկայական քանակությամբ մարդկային էներգիա է վատնվում այն աշխատանքի վրա, որը պետք է կատարվեր մեքենայի կողմից»[1]:

«Իմպերիել Քեմիկլ Ինդաստրիզ» քիմիական մոնոպոլիայի տեխնիկական դիրեկտոր Էորտ Սմիտը 1954 թվականի մայիսին հայտարարել է. «1946 թվականին մենք նախագծեցինք 50 միլիոն ֆունտ ստեռլինգ գումարով կապիտալ շինարարության մի ծրագիր, որի համար անհրաժեշտ կլինեին 20000 լրացուցիչ աշխատավորներ: 1946 թվականից ի վեր կապիտալ ամբողջ ծրագիրը բարձրացավ 210 միլիոնի, որից 145-ը արդեն իրականացվել է. միաժամանակ, գոյություն ունեցող ձեռնարկությունների արտադրանքն ավելացել է. այդ ամբողջ աճ իրականացվել է միայն 9500 լրացուցիչ աշխատավորներով, կամ՝ 1946 թվականին նախատեսված լրացուցիչ անհրաժեշտ աշխատավորների ընդհանուր թվի 50 տոկոսից պակաս քանակությամբ մարդկանցով»: Այսինքն՝ եթե 50 միլիոն ֆունտ ստեռլինգ գումարով կապիտալ ներդրումների իրականացման համար նախատեսված էր 20000 լրացուցիչ բանվոր, ապա 145 միլիոն ստեռլինգ գումարով փաստորեն կատարված շինարարությունը իրականացվել է միայն 9500 լրացուցիչ բանվորներով: Պարզվում է, որ բանվորական ձեռքի «խնայողությունը» այլ միջոցների հետ, իրականացվել է նաև արտաժամյա աշխատանքի և ինտենսիվացման ուժեղացման, այսինքն՝ բանվորների էներգիան գազանաբար վատնելու միջոցով:

Բուրժուական հասարակարգում առանձնապես սուր են զգացվում տեխնիկական մակարդակի հետամնացությունը, աշխատանքի ծանրությունն ու

[1] *Mass Production, 1954, April, p. 112.*



լարվածությունը հանքահորերում: 1953 թվականին անգլիական մեկ հանքափորի արտադրողականությունը, 1947 թվականի համեմատությամբ, բարձրացել է 13 տոկոսով այն ժամանակ, երբ 1953 թվականին մեկ հանքափորի ռեալ աշխատավարձը խիստ ցածր էր միևնույն բազիսային տարվա՝ 1947 թվականի մակարդակից և հանքափորները պայքարում էին ոչ թե ռեալ աշխատավարձը 13 տոկոսով աճած արտադրողականության մակարդակին մոտեցնելու, այլ ռեալ աշխատավարձի 1947 թվականի մակարդակին հասցնելու համար: Իսկ հանքերում «տեխնիկական հետամնաց կատարելագործումն ու դանդաղ վերակառուցումը ընթանում են նախատեսված մակարդակի 1/3-ից էլ ցածր: Արտադրանքն ավելանում է տարեցտարի աճող բնական ու գեոլոգիական դժվարությունների պայմաններում և հանքափորների աշխատանքի ինտենսիվացման հետևանքով ավելի շատ «սև» աշխատանք թափելու միջոցով: Սակայն ռեալ աշխատավարձի մակարդակը ընկնում է և հանքափորների սպառման ստանդարտները ձեռք են բերվում միայն արտաժամյա աշխատանքով»[1]:

Արտաժամյա աշխատանքը կապիտալի երկրներում բանվոր դասակարգի շահագործման և աղքատացման ուժեղացման գործոններից մեկն է: Ժամանակակից կապիտալիզմի պայմաններում բացարձակ հավելյալ արժեքի արտադրությունը հիմնականում իրականացվելով աշխատանքի ինտենսիվացման միջոցով, ոչ միայն չի բացառում, այլև հաճախ զուգորդվում է աշխատօրվա ուղղակի երկարացման հետ՝ արտաժամյա աշխատանքի ձևով: Ապրանքագների բարձրացման և սիստեմատիկ արտաժամյա աշխատանքի համատեղության պայմաններում ձեռնարկատերերը շահում են երկակի: Արտաժամյա աշխատավարձը փաստորեն կլանվում է կյանքի իրական արժեքի ավելի արագ բարձրացմամբ, որի հետևանքով ավելի է մեծանում բացարձակ հավելյալ արժեքը և ուժեղանում բանվոր դասակարգի շահագործումն ու աղքատացումը:

Անգլիայում հետպատերազմյան տարիներին անընդհատ աճում է արտաժամյա աշխատանքը: Բանվորները մղվում են արտաժամյա աշխատանքի՝ ձգտելով հասնել կյանքի արժեքի մակարդակին: 1952 թվականին Անգլիայում, 1948 թվականի համեմատությամբ, մեկ բանվորի արտադրանքը երկու տոկոսով ավելի է աճել, քան մեկ բանվոր-ժամի արտադրանքը[2]. այդ տարբերությունը ստացվել է արտաժամյա աշխատանքի շնորհիվ: Արդյունաբերության մեջ մեխանիկների աշխատավարձի ամբողջ գումարի 16 տոկոսը 1953 թվականին ստացվել է արտաժամյա աշխատանքով: Նրանց միայն արտաժամյա աշխատավարձը 1948 թվականի ամբողջ աշխատավարձի նկատմամբ աճել է 175 տոկոսով[3]: «Թայմսը» իր 1954 թվականի հոկտեմբերի 26-ի համարում գրել է, որ «այսօր Անգլիայում ավելի շատ արտաժամյա են աշխատում, քան երբևիցե խաղաղ ժամանակաշրջանում»:

Կարելի է եզրակացնել, որ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո բացարձակորեն երկարում է Անգլիայի բանվոր դասակարգի աշխատանքային օրը, ինչպես ուղղակիորեն՝ արտաժամյա աշխատանքի, այնպես և անուղղակիորեն՝ աշխատանքի ինտենսիվացման միջոցով:

[1] *Labour Research, 1954, № 2, p. 18.*
[2] *Economica, 1954, November, № 84, p. 311.*
[3] *The Marxist Quarterly, 1955, January, p. 12.*

Սակայն աշխատօրվա բացարձակ երկարացումը, հատկապես աշխատանքի ինտենսիվացման և աշխատուժի գիշատիչ մաշման առկա տեմպերը չեն բավարարում շահագործող դասակարգերին: Անգլիայի ֆինանսների մինիստրը 1954 թվականի մարտի 6-ին հայտարարել է. «Արդյունաբերական պրոցեսի ոչ մի մակարդակում չենք կարող թույլ տալ հրաժարում մարդկային ճիգից, կամ անտարբերություն՝ հանդեպ անձնական ջանքերը»: Իսկ «մարդկային ճիգ» և «անձնական ջանք» կապիտալիզմի համար նշանակում է կապիտալիստներին խրախուսել արտադրության մասշտաբներն ընդլայնելու... շահույթների մեծացման միջոցով: «Մարդկային ճիգ» և «անձնական ջանք» կապիտալիզմի ժամանակ բանվորների համար նշանակում է՝ հրաժարվել արտաժամյա աշխատանքից և ավելի ինտենսիվ աշխատելուց, հրաժարվել աշխատավարձի բարձրացման և ապրանքագների իջեցման պահանջներից:

Այսպիսով, պայքարը «հանուն աշխատանքի արտադրողականության բարձրացման» ուղղված է միայն «ամենաէժան» գործոնի՝ աշխատանքի ինտենսիվության հետագա ուժեղացման նպատակին: Ժամանակակից Անգլիայում Թեյլորիզմը պաշտոնապես մտել է պետական միջոցառումների շարքը:

1948 թվականի հոկտեմբերին «Մարշալլի պլանի» վարչության կազմակերպած «Աշխատանքի արտադրողականության բարձրացման Անգլո-ամերիկյան կոմիտեն» իր հինգ ենթակոմիտեներով մշակում և իրականացնում էր անգլիական ձեռնարկություններում աշխատանքի ինտենսիվությունը ուժեղացնելու գործը: Անգլիայի ներքին գործերին ԱՄՆ-ի միջամտությունը թաքցնելու նպատակով այդ նույն կոմիտեն 1952 թվականի նոյեմբերին վերանվանվեց «Աշխատանքի արտադրողականության բարձրացման բրիտանական հանձնաժողով», որն ստեղծեց չորս ենթակոմիտեներ:

Մեծ Բրիտանիայի կոմունիստական պարտիան խիստ քննադատության է ենթարկում այդ հանձնաժողովի աշխատանքը, որը ոչ միայն հովանավորում, այլև մեթոդական օգնություն է ցույց տալիս առանձին ձեռնարկություններում աշխատանքի ինտենսիվության ուժեղացման գործին:

Հատկանշալի է, որ Մեծ Բրիտանիայի կոմունիստական պարտիան այս բնագավառում պայքարի սուր ծայրը ներկայումս ուղղում է ոչ թե առհասարակ արտադրողականության բարձրացման դեմ, այլ, այսպես կոչված, «արտադրողականության հետևից ներկա վազքի», այսինքն՝ «աշխատանքի ուսումնասիրության» մեթոդների ու նրա կցորդների գործունեության դեմ:

«Աշխատանքի ուսումնասիրությունը» Թեյլորի արդիականացած քրտինք քամելու «գիտական» մեթոդն է Անգլիայում, որի միջոցով ընտրվում է «նորմալ» (փաստորեն ամենաինտենսիվ) աշխատողը, բոլորից պահանջվում է հասնել այդ մակարդակին, ստուգվում է աշխատող և նոր ընդունվող բանվորների համապատասխանությունը պահանջվող նորմային: Այս նպատակով «աշխատանքի ուսումնասիրության» տեսությունը մշակել է բանվորներին «մոտենալու» մի ամբողջական «գիտական» սիստեմ, որն ընդգրկում է՝ ֆիզիկական մոտեցում, հոգեկան մոտեցում և սոցիալական մոտեցում:

«Աշխատանքի ուսումնասիրության» ֆիզիկական մոտեցումը իրականացվում է երկու ուղղությամբ՝ «ֆիզիկական փորձերի» և «բնախոսական փորձերի» միջոցով: «Ֆիզիկական փորձերի» խումբը մեծ մասամբ բանվորի դիմացկունության ստուգումներն են, երբ ստանդարտ լարեր ծռելու և զանազան այլ միջոցներով հետազոտվում է մատների, դաստակի, ձեռքի, թևի, ուսերի և այլ



մկանների ֆիզիկական ուժը: Բացի դրանից նշվում է աշխատանքային պրոցեսն սկսելու ռեակցիայի ընթացքն ու արագությունը և չափվում է «մեքենայական», այսինքն՝ շարժումների ճշգրտությունը: Դետալների հավաքման, միայն մեկ եղանակով իրար հարմարվող մասերի արձակման և վերահավաքման փորձերով չափվում է «անհատի մեխանիկական ընդունակությունը»: Սահմանափակ ժամանակի ընթացքում որոշակի քանակությամբ ասեղներ հատուկ տախտակի վրա նեղ անցքերի մեջ անցկացնելու, նուրբ սղոցներ տեսակավորելու միջոցով ստուգվում է բանվորի արագաշարժությունը:

Ֆիզիկական փորձերից է նաև շոշափելիքի զգայնության որոշումը՝ փոքրիկ առարկաներ հավասարակշռելու, բարակ թելերի և այլ նուրբ նյութերի ձեռք տալու միջոցով. իսկ շարժվող իրերի վերահսկումով ստուգվում է աչքերի և ձեռքերի աշխատանքի համադրության աստիճանը:

Այսպիսով, ֆիզիկական մոտեցման ֆիզիկական փորձերը մշակում են այնպիսի մեթոդ, որը բանվորին՝ մարդկային մարմնին մոտենում է ինչպես մեքենայի՝ անկենդան մարմնի:

Ֆիզիկական մոտեցման «բնախոսական փորձերի» խումբը ընդգրկում է այնպիսի փորձեր, որոնց նպատակն է ստուգել, թե բանվորի առողջությունը ինչքանով է հնարավորություն տալիս կապիտալիստի համար ինտենսիվ աշխատանք ապահովել, այսինքն՝ ո՞ր բանվորն է ավելի հարմար թեկնածու շատ շահույթներ ապահովելու տեսակետից:

«Աշխատանքի ուսումնասիրության» «հոգեբանական մոտեցումը» իրականացվում է տարբեր ուղիներով.— 1) ընդունակության սահմանումը, 2) սովորելու կարողության որոշումը, 3) բառերի, թվերի և ձևերի հիշողության ստուգումը, 4) մտքի մեջ գաղափարների ձևավորման բնույթը, 5) հուզական կայունությունը, 6) զանազան փորձարկումների նկատմամբ ցույց տրվող վերաբերմունքը, 7) բնավորության գծերի հայտնաբերումը և այլն:

«Ֆիզիկական» և «հոգեկան մոտեցման» հիման վրա և դրանց հետ միասին իրականացվում է «աշխատանքի դիտումը», որն ընթանում է երեք աստիճաններով.— 1) աշխատանքի «անալիզ», 2) աշխատանքի նկարագրում, 3) աշխատանքի մանրամասնում:

Առաջին աստիճանը՝ «աշխատանքի անալիզը», դա աշխատանքի տառացիորեն միկրոսկոպիկ վերլուծությունն է, երբ բանվորի յուրաքանչյուր գործողության արդյունքները մանրամասնորեն արձանագրվում են, նշելով ամեն մի պրոցեսի համար պահանջվող ուժը, վարպետությունը, ձեռքերի ճարտարությունը և բոլոր մյուս հատկությունները: Այստեղ սահմանվում է նաև աշխատանքի յուրաքանչյուր մասնիկի համար տրամադրվող ժամանակը:

«Աշխատանքի նկարագրումը» շարադրում է աշխատանքի բնույթը, տալիս է նրա պրոցեսների ըմբռնումը: Աշխատանքի դիտումը ամփոփվում է «աշխատանքի մանրամասնումով», որը սահմանում է աշխատավարձի մակարդակները, որպես հիմք ընդունելով ֆիզիկապես ամենաուժեղ և ամենաինտենսիվ աշխատող բանվորի վարձատրման նորմաները:

Եվ, վերջապես, «աշխատանքի ուսումնասիրության» վերջին հոդվածը՝ «սոցիալական մոտեցումը», «էթիկա» է պահանջում արտադրության մեջ: «Շահագործման բացակայության» հորդորների հետ սահմանվում են «բարոյական կանոններ»: Արտադրության մեջ «էթիկայի» այդ նորմաների պահպանումը նույնքան կարևոր է համարվում, ինչքան «հանգստությունը վիրաբուժարանում,

կամ փաստաբանի առանձնասենյակում»: «Սոցիալական մոտեցման» միջոցառումների միակ նպատակը սոցիալական քնախտի վարակի տարածումն է, փորձ՝ աշխատավորների դասակարգային գիտակցությունը քնեցնելու համար:

Աշխատանքի ինտենսիվության ուժեղացման նպատակով այս ամբողջական, «գիտական» միջոցառումների հետ միասին, բանվոր դասակարգի շահագործումը ուժեղացվում է աշխատավարձի նոր, «խրախուսող» սիստեմների կիրառման միջոցով, որոնք քրտինք քամելու սիստեմներ են և մեկ բանվորի արտադրանքի աճման պայմաններում նվազեցնում են արտադրանքի միավորի վրա աշխատավարձի ծախսերը: Այդ «խրախուսող» սիստեմները, փոխանակ պարզապես բարձրացնելու աշխատանքի ինտենսիվացման աճի հետևանքով գործադրվող լրացուցիչ աշխատանքի վարձատրությունը, զանազան հաշվարկներով ետ են պահում «պարգևային աշխատավարձերը», մի բան, որն առաջին հայացքից նկատելի չէ, հետևաբար, իբրև որ խրախուսում է բանվորին՝ համարյա ձրի, լրացուցիչ էներգիա վատնելու համար:

Իմպերիալիզմի օրոք քրտինք քամելու՝ աշխատավարձի զանազան սիստեմների կիրառման ընդարձակումը արտահայտում է կապիտալիզմի նեխումը և հակասությունների սրումը աշխատանքի ու կապիտալի միջև:

Կապիտալիստական աշխատանքի ինտենսիվացման ուժեղացման կարևորագույն հետևանքներից և չափանիշներից մեկը արտադրության մեջ դժբախտ դեպքերի և մահացու վթարների ու պրոֆեսիոնալ հիվանդությունների աճն է:

Անգլիական գործարանների խիստ անբավարար լուսավորությունը աշխատանքային ամենաբացասական պայմաններից մեկն է: Վատ լուսավորությունը, լուսավորության ծախսերի «խնայողությունը» հսկայական մարդկային էներգիա են վատնում:

Անգլիական արդյունաբերության մեջ դժբախտ պատահարների ընդհանուր թիվը յուրաքանչյուր տարի միջին հաշվով հասնում է 700000-ի [1]: Արտադրական դժբախտ պատահարների և մահացու դեպքերի զգալի մասը տեղի է ունենում շինարարության մեջ: 1948—1953 թթ. ընթացքում 1000 շինարարներին ընկնող դժբախտ պատահարների թիվը ավելացել է 50 տոկոսով [2]:

Համապատասխան միջոցառումների թերի կիրառման և անվտանգության պրիմիտիվ տեխնիկայի պայմաններում հանքափորների, առանձնապես ածխահատների համար խիստ վտանգավոր դրություն է տիրում: Բանվոր Նորման Հարրիսոնը, որը հինգ տարի աշխատել է ածխահանքերում, հետևյալ կերպ է նկարագրում հանքափորների աշխատանքային պայմանները. խոռոչներում մեկուսացված ծանր աշխատանք. վատ օդափոխություն. ածխահատման անբավարար տեխնիկա. պայթումներ և առաստաղների փլուզումների հետևանքով աշխատանքի անապահովվածություն: Այս բոլորից բացի, նա նշում է օրենսդրության լրացուցիչ ճնշումը բանվորների վրա: Հակաբանվորական օրենսդրությունը Անգլիայում իսկապես որ ամենախորամանկ մանրերնքով ճնշում է գործադրում բանվոր դասակարգի աշխատանքային պայմանների վրա: Իզուր չէ, որ դեռևս Վիկտոր Հյուգոն գրել է. «Անգլիական օրենսդրությունը ընտելացած վագր է. նա թավշյա թաթեր ունի, որի մեջ թաքնված են ճանկերը» [3]:

---

[1] The British Journal of Industrial Safety, 1954, № 27, p. 1.

[2] Accidents, How They Happen and How to Prevent Them, 1955, № 22, p. 4.

[3] Виктор Гюго, Собр. соч. т. X, М., 1955, стр. 412.



Տրավմատիզմի և այլ դժբախտ դեպքերի վերաբերյալ տվյալները «ինչպիսի ստանդարտով էլ որ չափվելիս լինեն՝ արտադրողականության, մարդկային տանջանքների, թե աշխատանքային վատնումների չափանիշով, այս տվյալները բոլորն էլ բացարձակորեն սկանդալային են» [1]: Աշխատանքի ժամանակ մահացության դեպքերը տարեկան հասնում են շուրջ 3000-ի (որից 750-ը հանքերում), իսկ թունավորման դեպքերը 1954 թվականի տվյալներով 1948 թվականի նկատմամբ աճել են 53,5 տոկոսով [2]:

Բացի դժբախտ դեպքերից և արտադրական վթարներից, բանվոր դասակարգի դրության վատթարացման մասին է խոսում պրոֆեսիոնալ հիվանդությունների վիճակագրությունը: Անգլիայում 1938—1952 թթ. ընթացքում պրոֆեսիոնալ հիվանդությունները աճել են 37 տոկոսով: Այդ հիվանդությունների 70 տոկոսը կազմում է «արդյունաբերական դերմատիտը», որն առաջանում է մաշկի վրա ճառագայթների, մեխանիկական ջերմային և քիմիական գրգռիչների ազդեցությունից: Մյուս ամենատարածված պրոֆեսիոնալ հիվանդությունների խումբը կրում է պնևմոկոնիոզ անունը, որն առաջանում է մարդու թոքերի համար վտանգավոր փոշիների ներգործությունից:

Առանձնապես ուժեղ է երիտասարդ բանվորների աշխատուժի վատնումը անգլիական արդյունաբերության մեջ: Նրանց թարմ էներգիան քամվում է կողոպտիչ կերպով:

Ոչ բարվոք դրության մեջ է ապրում նաև անգլիական բանվորուհին: Անգլիայում կանայք կազմում են աշխատավորների 25 տոկոսից ավելին: Բնորոշն այն է, որ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո մեծանում է ամուսնացած կանանց տեսակարար կշիռը ոչ միայն բանվորուհիների թվի մեջ, այլև ամբողջությամբ վերցրած բանվորների ընդհանուր քանակի մեջ: Այդպիսի դրության հետ զուգահեռ պետք է նկատի ունենալ, որ Անգլիայում կանայք շատ ավելի ուժեղ շահագործման են ենթարկվում՝ հավասար աշխատանքի համար ստանալով համարյա կիսով չափ պակաս աշխատավարձ:

Հասկանալի է, որ կանացի աշխատուժի էժան և մեծացող առաջարկը նպաստավոր է շահագործող դասակարգերի համար, քանի որ հնարավորություն է տալիս ուղղակիորեն ներգործելու միջին աշխատավարձի մեծության վրա, փոքրացնելու ռեալ աշխատավարձը:

Մեծ Բրիտանիայի կոմունիստական պարտիան, որը միավորում, առաջավոր թեորիայով զինում և ղեկավարում է անգլիական աշխատավորության պայքարը հանուն խաղաղության, դեմոկրատիայի, անկախության ու միասնության, ոչ մի ջանք չի խնայում երկրի բանվոր դասակարգի կենսամակարդակի՝ կապիտալիստական արտադրական հարաբերությունների տիրապետման պայմաններում հնարավոր բարձրացման հասնելու համար: Մեծ Բրիտանիայի կոմունիստական պարտիան հետևողականորեն մերկացնում է աշխատավարձի «սառեցման» և, հատկապես, բանվորների աշխատանքի ինտենսիվության ուժեղացման ուղղությամբ տիրապետող դասակարգերի շահախնդրության խակական էությունը:

---

[1] Labour Research, 1955, March, p. 36.

[2] Annual Abstract of Statistics, 1954, p. 28.

# ԱՎԵԼԻ ՄՈՏ ՄԱՍՍԱՆԵՐԻՆ

*Հ. ԲԱԲԼՈՒՄՅԱՆ*

Ռեսպուբլիկայի տեղական Սովետների գործկոմների աշխատանքում վերջերս զգալի փոփոխություններ են տեղի ունեցել: Նրանք այժմ անհամեմատ ավելի շատ են զբաղվում տնտեսական և կուլտուրական շինարարության հարցերով, ավելի շատ ջանք ու եռանդ են թափում իրենց ամբողջ գործունեությունը, շրջգործկոմների բաժինների աշխատանքն է՛լ ավելի բարելավելու և աշխատավորների հետ ունեցած կապերն ուժեղացնելու ուղղությամբ: Կոնկրետ միջոցներ են ձեռք առնվել տնտեսության պլանավորման, տեղական ու կոոպերատիվ արդյունաբերության ձեռնարկությունների ղեկավարման, նրանց արտադրանքի բաշխման, բնակարանային, կուլտուր-կենցաղային և ճանապարհային շինարարության կազմակերպման, շինանյութերի արտադրության առավել զարգացման, ինչպես նաև ֆինանսա-բյուջետային հարցերում քաղաքային ու գյուղական Սովետների իրավունքներն ընդլայնելու ասպարեզում:

Մշտապես ամրապնդելով իրենց կապերը մասսաների հետ, Սովետները տնտեսական, կազմակերպական և կուլտուրական մեծ աշխատանք են ծավալել տեղերում: Ղեկավարելով աշխատավորության պայքարը հանուն ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման պլանների կատարման, նրանք միաժամանակ գտնում են անհրաժեշտ նյութական միջոցներ, տեղական ռեզերվներ և դրանք օգտագործում տնտեսական ու կուլտուրական շինարարության համար:

Աշխատավորների դեպուտատների Սովետների աշխատանքի աշխուժացման հետ մեկտեղ, այժմ ավելի խստորեն են պահպանվում Կոնստիտուցիայի սահմանած դեմոկրատական սկզբունքները: Սովետների սեսիաները, որպես կանոն, հրավիրվում են ճիշտ սահմանված ժամկետներին: Դեպուտատներն անհամեմատ ավելի ակտիվորեն են մասնակցում սեսիաների նիստերին, հարցերի քննարկմանն ու լուծմանը: Սեսիաներում քննարկման են դրվում ակտուալ բնույթի հարցեր՝ գործկոմների և նրանց բաժինների հաշվետվությունները, քաղաքային տնտեսության զարգացման պլանները, բյուջեի հաստատումն ու նրա կատարման հաշվետվությունները, առողջապահական հիմնարկների գործունեության, քաղաքների ու գյուղերի բարեկարգման, առևտրական կազմակերպությունների, դպրոցների, արդյունաբերության առանձին ճյուղերի ու ձեռնարկությունների, շինարարության աշխատանքի, գյուղատնտեսության զարգացման և բազմաթիվ այլ կարևոր ու հրատապ հարցեր:

Էջմիածնի, Կալինինոյի, Ստեփանավանի, Շամշադինի, Ապարանի, Վեդու և մի շարք այլ շրջանների բազմաթիվ գյուղական Սովետների ուշադրության կենտրոնում են գտնվում սահմանված առաջադրանքների կատարման



հարցերը: Նրանք հաճախակի լսում են կոլտնտեսությունների նախագահների, ֆերմաների վարիչների, բրիգադավարների զեկուցումները: Տեղական Սովետները լրջորեն են ընտրում քննարկվելիք հարցերը, հանգամանորեն նախապատրաստում են դրանք, այդ գործին ներգրավելով դեպուտատների ու մշտական հանձնաժողովների անդամներին: Աշխատանքի այդ մեթոդը հնարավորություն է տվել շատ ավելի խորն ուսումնասիրել քննարկման դրվող հարցերը, լայն ծավալել քննադատությունը և ընդունել կոնկրետ ու գործարար որոշումներ:

Քաղաքային, շրջանային ու գյուղական Սովետների գործկոմները զգալի աշխատանք են կատարել արդյունաբերության, գյուղատնտեսության զարգացման ու շինարարության բնագավառներում: Նրանք այժմ ավելի մեծ ուշադրություն են դարձնում ու ավելի լավ են ղեկավարում տնտեսության ու կուլտուրայի բոլոր ճյուղերը: Բավական է ասել, որ տեղական Սովետների արդյունաբերական ձեռնարկությունների համախառն արտադրանքի թողարկման 1957 թվականի տարեկան պլանը կատարվեց 101,1 տոկոսով:

Տեղական Սովետները մեծ ուշադրություն են դարձնում նաև կուլտուր-լուսավորական հիմնարկների աշխատանքին: Տեղական շատ Սովետներ չեն սահմանափակվում միայն նրանով, որ ժամանակին միջոցներ են հատկացնում կուլտուր-լուսավորական հիմնարկներին, ապահովում են նրանց շենքերի վերանորոգումը, վառելիքի մատակարարումը և այլն, այլև ընդհուպ զբաղվում են նրանց գործունեությամբ:

Վերջին ժամանակներս Սովետները ավելի մեծ ուշադրություն են դարձնում աշխատավորության կենցաղի, քաղաքների ու գյուղերի բարեկարգման հարցերի վրա: Անցյալ տարի քաղաքներում, շրջանային կենտրոններում ու գյուղերում նշանակալի աշխատանք է կատարվել բնակելի շենքեր կառուցելու, փողոցներն ընդարձակելու ու կանաչապատելու, ջրմուղներ անցկացնելու, բնակավայրերի էլեկտրիֆիկացիայի ու ռադիոֆիկացիայի, աշխատավորության կուլտուրական սպասարկումը բարելավելու ուղղությամբ:

Սակայն պետք է նշել, որ մի շարք տեղերում շրջանային, գյուղական ու ավանային Սովետների գործկոմները բավականաչափ ակտիվություն չեն ցուցաբերում իրենց աշխատանքում:

Աշխատավորների դեպուտատների մի շարք քաղաքային ու շրջանային Սովետների սեսիաները հրավիրվում են անկանոն, երբեմն քննարկվող հարցերը նեղ ու միապաղաղ բնույթ են ունենում: Քննարկման են դրվում միայն ընթացիկ գյուղատնտեսական կամպանիաների նախապատրաստման ու անցկացման հարցերը: Բայց ահա հազվադեպ են քննարկվում այնպիսի հարցերը, ինչպիսիք են, օրինակ, գյուղատնտեսական արտելի Կանոնադրության պահպանման, կոլտնտեսություններում աշխատանքի կազմակերպման, հանրային անասնապահության զարգացման, կուլտուր-լուսավորական հիմնարկների, դպրոցների, կոոպերացիայի աշխատանքի կամ գյուղերի բարեկարգման հարցերը:

Կրասնոսելսկի շրջանի Կրասնոսելսկ, Բաշքյանդ և Վերին Ճամբարակ գյուղերի Սովետները վատ են զբաղվում կոլտնտեսային արտադրության զարգացման հարցերով: Այդ կոլտնտեսությունները 1957 թվականին չկատարեցին յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածությունների դիմաց մսի, կաթի, բրդի ու ձվի արտադրման պլանները: Թվում էր, թե այդ գյուղերի Սովետ-

ները պետք է լրջորեն մտահոգվեին այդ հանգամանքով, խորապես ուսումնասիրեին իրերի դրությունը, պարզեին կոլտնտեսությունների ետ մնալու պատճառները և միջոցներ ձեռք առնեին եղած թերությունները վերացնելու համար։ Բայց այդ բանը չարվեց, և դրա հետևանքով էլ անասնաբուծական մթերքների արտադրության պլանը թերակատարվեց նաև 1958 թվականի առաջին կիսամյակում։

Կիրովականի շրջանի Հալավարի գյուղական Սովետը վատ է զբաղվում կոլտնտեսային արտադրության բոլոր ճյուղերի զարգացման հարցով և պատասխանատվություն չի զգում այդ գործում։ Այնինչ գյուղական Սովետը պետք է առաջին շարքերում լինի գյուղատնտեսության վերելքի համար մղվող պայքարում. չէ՞ որ նա իշխանության մյուս բոլոր օրգաններից ավելի մոտ է կանգնած արտադրությանը և մարդկանց, Սովետի դեպուտատները կողք-կողքի աշխատում են մյուս կոլտնտեսականների հետ և ուրեմն նրանք պետք է ամեն օր ջանքեր գործադրեն գյուղատնտեսության հաջող զարգացման համար։

Լուրջ թերություններ կան Հանքավանի, Կաքավաձորի, Աղավնաձորի և Վերին Ախտայի գյուղական Սովետների աշխատանքում. նրանք վատ են զբաղվում ակումբների ու գրադարանների գործունեությամբ, որի հետևանքով էլ այդ գյուղերի ակումբներին կից չկան գեղարվեստական ինքնագործունեության խմբակներ, աշխատավորության համար չեն կազմակերպվում զեկուցումներ ու դասախոսություններ։

Մի շարք գյուղերում վատ է իրագործվում ընդհանուր պարտադիր ուսուցման օրենքը, աշակերտության մաղում է նկատվել։

Զգալի աշխատանք կատարելով քաղաքների ու գյուղերի բարեկարգման ասպարեզում, տեղական Սովետներն այնուամենայնիվ դեռևս այդ գործի մեջ բավականաչափ չեն ներգրավում տեղական բնակչությանը։ Առանձին տեղական Սովետներ վատ են կատարում տնտեսական և կուլտուրական շինարարության բնագավառում մասսաների կազմակերպչի իրենց ֆունկցիաները և բավարար հոգատարություն չեն ցուցաբերում աշխատավորների կարիքների նկատմամբ։ Նրանք հաճախ աչքաթող են անում բնակարանային շինարարության ասպարեզում եղած խոշոր բացերը, քիչ ձեռներեցություն ու հաստատակամություն են ցուցաբերում դպրոցների, հիվանդանոցների, բաղնիքների, մանկական հիմնարկների, ակումբների ու գրադարանների, խանութների, ճաշարանների և բնակչությանը սպասարկող մյուս ձեռնարկությունների ու հիմնարկների աշխատանքը բարելավելու հարցում։

Սովետական դեպուտատը ժողովրդի ծառան է, նա իր արած գործերի, վարքագծի համար միշտ էլ պետք է հաշիվ տա ժողովրդի առջև։ Սովետի գործունեության ամբողջ ժամանակաշրջանում նա շարունակ գտնվում է իր ընտրողների վերահսկողության տակ, նա պարտավոր է պարբերաբար հաշվետվություններով հանդես գալ ընտրողների ժողովներում, պատասխանել այն նամակներին ու հարցումներին, որոնցով նրան դիմում են աշխատավորները։

Այդ պահանջների բարձրության վրա միշտ էլ կանգնած մնալու համար դեպուտատը պարտավոր է մանրամասն գիտենալ Սովետի աշխատանքի մասին, հասկանալ Սովետական պետության քաղաքականությունը և այն տնտեսական ու քաղաքական խնդիրները, որ ծառացած են տվյալ Սովետի ու ամբողջ երկրի առջև։

Այդ տեսակետից հավանության ու ուշադրության է արժանի Աշխատավորների դեպուտատների Երևանի քաղաքային Սովետի գործկոմի աշխատանքը։ Քաղսովետի գործկոմը հրատարակել է դեպուտատի հուշատետր, որտեղ մանրամասնորեն արտացոլված է քաղաքի կապիտալ շինարարության պլանը՝ բոլոր օբյեկտների ու դրանց ավարտման ժամկետների նշումով, քաղաքի բարեկարգման պլանը, Կիև և Երևան քաղաքների սոցիալիստական մրցության մեջ մեր քաղաքի ընդունած պարտավորությունները և մի շարք այլ տեղեկություններ, որոնք մեծապես օգնում են դեպուտատներին՝ ընտրողների հետ ունեցած զրույցների ժամանակ մանրամասնորեն պատմելու նրանց նակազները կատարելու մասին, ինչպես և պատասխանելու ընտրողների բազմաթիվ հարցերին։



Էջմիածնի շրջանի Ջրառատ գյուղում դեպուտատների ու ընտրողների հանդիպումներից մեկի ժամանակ դրվեց բարեկարգ մանկամսուրներ կառուցելու հարցը։ Գյուղական Սովետի դեպուտատները այդ հարցը մտցրին գործկոմ, որտեղ հարցի քննարկումից ու դրական լուծումից հետո կառուցվեցին բարեկարգ մանկամսուրներ, որոնք զգալիորեն հեշտացրին կոլտնտեսուհիների աշխատանքը և նրանց մասնակցությունը դաշտային աշխատանքներին։

Սակայն պետք է նշել, որ դեպուտատները ոչ միշտ են սերտ կապեր պահպանում իրենց ընտրողների հետ։ Ախտայի շրջանի Հանքավանի և Քաղսիի գյուղական Սովետների, ինչպես նաև Կրասնոսելսկի շրջանի Բաշքյանդի, Վերին Ճամբարակի ու Ջայքենդի գյուղական Սովետների դեպուտատները ոչ մի անգամ հանդիպում չեն ունեցել իրենց ընտրողների հետ, նրանք հաշվետվություն չեն տալիս Սովետների գործունեության ու իրենց աշխատանքի մասին։

Սովետները, նրանց գործադիր կոմիտեներն ու մշտական հանձնաժողովները լուրջ ուշադրություն պետք է դարձնեն նաև Սովետների բաժինների աշխատանքի ստուգման ու վերահսկողության կազմակերպման վրա։

Գործադիր կոմիտեները պետք է սիստեմատիկաբար հաշվետվություններ տան Սովետներին, սեսիաներում զեկուցեն նախկինում ընդունված որոշումների կատարման մասին, հաղորդեն դեպուտատների քննադատական դիտողությունների, հարցումների ու առաջարկությունների առթիվ ձեռք առած միջոցների մասին։

Քաղաքային և շրջանային Սովետները պետք է ավելի շատ աշխատանք կատարեն դեպուտատների հետ, որպեսզի նրանք ակտիվ գործունեություն ծավալեն Սովետի մշտական և ժամանակավոր հանձնաժողովներում, նախապատրաստեն հարցերը գործկոմի նիստերի համար, գործկոմի հանձնարարությամբ ստուգեն առանձին կազմակերպություններ կամ կատարեն ուսումնասիրություններ։ Պետք է օգնել դեպուտատներին ընտրողների հետ նրանց կապն ավելի ամրապնդելու գործում՝ համապատասխան հանդիպումներ կազմակերպելու միջոցով, ինչպես նաև դեպուտատներին անհրաժեշտ նյութեր մատակարարել ընտրողների առջև հաշվետվություններով հանդես գալու համար։

Անհրաժեշտ է բոլոր քաղաքային, շրջանային, ավանային և գյուղական Սովետներում, գործկոմներում, ակումբներում, տնային կառավարչություններում ու ձեռնարկություններում կազմակերպել «դեպուտատի սենյակներ», որտեղ դեպուտատները կարողանային ընդունել իրենց ընտրողներին, հանդիպումներ ունենալ նրանց հետ։

Սովետների պրակտիկ աշխատանքում դեպուտատների մասնակցությունը ապահովելու, պետության կառավարման գործում աշխատավոր մասսաներին ներգրավելու հիմնական ձևերից մեկը Սովետների մշտական հանձնաժողովներն են:

Մշտական հանձնաժողովների խնդիրն է՝ Սովետի հանձնարարությամբ, ինչպես նաև իր սեփական նախաձեռնությամբ ստուգել տեղական Սովետին ենթակա հիմնարկների, ձեռնարկությունների ու կազմակերպությունների աշխատանքը, պարզել բնակչության կարիքներն ու պահանջները, նպաստել Սովետների և նրանց գործադիր կոմիտեների որոշումների կենսագործմանը:

Մշտական հանձնաժողովներին ճիշտ ղեկավարելու դեպքում նրանք կհանդիսանան Սովետի գործկոմի լուրջ հենարանը: Այդ տեսակետից ուշադրության արժանի է Ստեփանավանի, Նոր Բայազետի, Ապարանի, Ալավերդու շրջանների, Երևանի, Լենինականի և մի քանի այլ քաղաքային, շրջանային ու գյուղական Սովետների մշտական հանձնաժողովների աշխատանքը: Նրանք Սովետի և նրա գործկոմի քննարկմանն են ներկայացնում իրենց առաջարկությունները, եզրակացություններ են տալիս քննարկվող հարցերի վերաբերյալ և անհրաժեշտության դեպքում այդ հարցերի շուրջը զեկուցումներով հանդես են գալիս Սովետի նիստերում: Օրինակ. Աշխատավորների դեպուտատների Ստեփանավանի շրջանային Սովետի գյուղատնտեսության հանձնաժողովը նախապատրաստել և շրջսովետի գործկոմի սեսիայի քննարկմանն էր ներկայացրել շրջանի կոլտնտեսությունների աշխատանքի կազմակերպման, անասունների ձմեռման նախապատրաստման, անտառների պահպանման, նրանց ավելի ռացիոնալ շահագործման և մի քանի այլ հարցեր:

Նոր Բայազետի շրջսովետին կից առողջապահության հանձնաժողովը յուրաքանչյուր երեք ամսվա համար կազմում էր իր աշխատանքի կոնկրետ ու գործնական պլանը: Մեկ տարվա ընթացքում այդ հանձնաժողովը մանրամասնորեն ուսումնասիրեց աշխատավորության սանիտարական սպասարկման և առողջապահության վիճակը շրջանում՝ այդ հարցերը ներկայացնելով շրջսովետի գործկոմի քննարկմանը:

Ժողովրդական տնտեսության զարգացման ու շինարարության հարցերից բացի, գործկոմների նիստերում քննարկվում են նաև բազմապիսի այլ հարցեր, ինչպիսիք են՝ հանրային սննդի բարելավման, աշխատանքային օրենսդրության պահպանման, ավտոմոբիլային տնտեսության ճիշտ շահագործման, ընտրողների առջև ժողովրդական դատարանների տալիք հաշվետվությունների, ժողովրդական ատենակալների հետ նրանց կատարած աշխատանքի հարցերը և այլն:

Սակայն պետք է նշել, որ շատ տեղական Սովետներում թերագնահատվում է մշտական հանձնաժողովների դերն ու նշանակությունը: Բավական է ասել, որ, օրինակ, Ղափանի շրջսովետի բոլոր 7 մշտական հանձնաժողովներն էլ չունեն աշխատանքի պլան: Դեռ ավելին, անցած 14 ամսվա ընթացքում գյուղատնտեսության, առողջապահության, սոցիալական ապահովագրության, ճանապարհային շինարարության ու բարեկարգման, տեղական արդյունաբերության ու առևտրի հանձնաժողովները ոչ մի նիստ չեն ունեցել, ոչ մի հարց չեն նախապատրաստել գործկոմի նիստերում կամ սեսիաներում քննարկելու համար:

Կրասնոսելսկի շրջանում գյուղատնտեսության և բյուջետային հանձնա-



ժողովներից բացի շրջանային և գյուղական Սովետների գործկոմների մնացած մշտական հանձնաժողովները ոչ մի գործ չեն անում: Վեդու շրջանի մի շարք գյուղական Սովետների գործկոմներ թերագնահատում են մշտական հանձնաժողովների դերն ու աշխատանքը և ձևական վերաբերմունք են ցուցաբերում նրանց նկատմամբ: Այդ ապացուցվում է թեկուզ այն բանով, որ Ղարախաչի, Սովետաշենի գյուղական և Արարատի ավանային Սովետներում թեպետև զեկուցումներ են լսվել մշտական հանձնաժողովների աշխատանքի մասին, բայց և այնպես ոչ մի բարելավում չի նկատվել նրանց աշխատանքում:

Տեղական Սովետների հիմնական խնդիրներից մեկը մշտական հանձնաժողովների աշխատանքի ըստ ամենայնի բարելավումն է, ակտիվի ընդլայնումը, մասսաների նախաձեռնության ու եռանդի զարգացումը:

Սովետի մշտական հանձնաժողովներ կազմակերպելիս պետք է ձգտել, որ ամեն մի դեպուտատ աշխատի հանձնաժողովներից մեկում իր մասնագիտության կամ տնտեսության այս կամ այն ճյուղի ասպարեզում իր ունեցած գիտելիքներին համեմատ, որ Սովետի ամեն մի անդամ պարտադիր կերպով կատարի պետության կառավարման մի որևէ աշխատանք:

Տեղական Սովետներում ընտրվել են աճած և հասարակական-քաղաքական կյանքին հաղորդակից եղած բազմաթիվ նոր մարդիկ: Նրանք լի են ցանկությամբ առաջիկայում է՛լ ավելի բարելավելու Սովետների աշխատանքը: Սովետների ղեկավարները և պարտիական կազմակերպությունները պետք է հմտորեն օգտագործեն այդ ուժերը, ճիշտ ղեկավարեն նրանց: Անհրաժեշտ է յուրաքանչյուր մշտական հանձնաժողովի ղեկավար նշանակել ձեռներեց, փորձված մարդու, որը հանձնաժողովի աշխատանքում լայնորեն ներգրավի սովետական, արհմիութենական և կոմերիտական ակտիվին:

Տեղական Սովետների ուշադրության կենտրոնում պետք է լինի նաև սովետական օրգանների աշխատանքի այն թերությունների վերացման հարցը, որպիսիք նշել են ընտրողները նախընտրական ժողովներում, դեպուտատության թեկնածուների հետ ունեցած հանդիպումների ժամանակ:

Ընտրողների բացահայտած թերությունների արագ վերացումն ու նրանց մատցրած առաջարկությունների իրականացումը կբարձրացնի Սովետների հեղինակությունը ժողովրդի աչքում, է՛լ ավելի կընդլայնի ու կամրապնդի նրա կապերը մասսաների հետ: Հանդուրժելի բա՞ն է արդյոք, երբ Արտաշատի շրջանի Այգեստանի գյուղական Սովետի գործկոմում ստացված դիմումների հաշվառում չի տարվում և դիմումները միայն 2—3 ամսից հետո են նայվում: Աշխատավորների դիմումների նկատմամբ անհոգ վերաբերմունք են ցուցաբերում նաև Ապարանի շրջսովետի գործկոմում: 1958 թվականի 6 ամսվա ընթացքում շրջգործկոմում ստացված դիմումների ընդհանուր թվից 199-ը ուղարկվել էին այլ կազմակերպություններ ու ձեռնարկություններ: Շրջսովետի գործկոմին ոչինչ հայտնի չէ այդ դիմումների ընթացքի մասին և այդ հանգամանքն ամենևին չի անհանգստացնում շրջգործկոմին:

Նման երևույթներ լինում են նաև մյուս տեղական Սովետների գործկոմներում: Պետք է նկատի ունենալ, որ աշխատավորների նամակների նկատմամբ ցուցաբերած այդպիսի բյուրոկրատիկ վերաբերմունքը թուլացնում է Սովետի կապերը մասսաների հետ: Գործադիր կոմիտեների նախագահները պարտավոր են իրենք անձամբ զբաղվել աշխատավորների գանգատների ու առաջարկությունների քննումով: Պետք է մշտական վերահսկողություն սահ-

մանել, որ բաժինները ժամանակին պատասխանեն նամակներին, արագորեն
արձագանքեն ձեռնարկությունների, հիմնարկների ու կոլտնտեսությունների
աշխատանքի թերությունների վերաբերյալ եղած ազդանշաններին։

Տեղական-Սովետի գործկոմի աշխատանքի մասին կարելի է դատել նաև
այն բանով, թե ինչպես է կազմակերպված այցելուների ընդունելությունը։
Արդյոք բանվորը կամ կոլտնտեսականը հեշտությա՞մբ է կարողանում ընկնել
նախագահի, նրա տեղակալի կամ բաժնի վարիչի մոտ, արդյոք չե՞ն խախտ-
վում ընդունելության սահմանված ժամերը,— այս ամենը բնութագրում է
գործկոմի աշխատանքի ոճը, նրա ապարատի կազմակերպվածության ու կուլ-
տուրայի մակարդակը։

Գործադիր կոմիտեների աշխատանքի գլխավոր մոմենտը Սովետի և վե-
րադաս սովետական օրգանների որոշումների կատարման ճիշտ կազմակեր-
պումն է։

Երնջատափի, Վարդենուտի, Լուսագյուղի և Ապարանի գյուղական Սո-
վետների գործադիր կոմիտեները բազմիցս որոշումներ են ընդունել ճանա-
պարհները վերանորոգելու ու լայնացնելու մասին։ Որոշումների կատարման
ստուգումը բացակայելու պատճառով գործնականում ոչինչ չի արվել ճանա-
պարհների վիճակը բարելավելու ուղղությամբ։ Պետք է նշել, որ այդ հարցում
վատ օրինակ է տալիս ինքը՝ Ապարանի շրջսովետը, որը բոլորովին չի ստու-
գել ճանապարհների վերանորոգման ամիս անցկացնելու վերաբերյալ շրջսո-
վետի սեսիայի որոշման կատարումը։

Կրասնոսելսկի շրջանի Ջիլ գյուղի Սովետի սեսիայում գյուղսովետի
գործկոմի հաշվետվության առթիվ ընդունվել էր ընդարձակ մի որոշում՝ բաղ-
կացած 18 կետից, այդ թվում մշտական հանձնաժողովների աշխատանքի
բարելավումը, ընտրողների և դեպուտատների հանդիպումների կամ վերջին-
ներիս հաշվետվությունների կազմակերպումը, ջրմուղի կառուցումը և այլն,
սակայն այդ որոշման և ոչ մի կետն էլ չի իրականացվել։

Աշխատավորների դեպուտատների Վեդու շրջսովետի գործկոմը բազմիցս
լավ որոշումներ է ընդունել շրջանի համար այնքան կարևոր հարցերի շուրջը,
ինչպիսիք են՝ խմելու ջրի ռացիոնալ օգտագործման, ճանապարհների խնամ-
քի բարելավման հարցերը։ Սակայն այդ բոլոր հարցերն էլ թերավարտ են
մնացել։

Սովետների գործունեության հիմքում դրված է դեմոկրատական ցենտրա-
լիզմը։ Դա նշանակում է, որ տեղական Սովետներն իրենց աշխատանքում
պետք է խստորեն պահպանեն օրենքները, բոլոր վերադաս օրգանների որո-
շումները, կարգադրությունները, անվերապահորեն ենթարկվեն կենտրոնի
բոլոր դիրեկտիվներին, առաջնորդվեն միասնական պետական ժողովրդա-
տնտեսական պլանով և միաժամանակ ամեն դեպքում նախաձեռնություն
ցուցաբերեն ներքևից, հաշվի առնեն բոլոր տեղական առանձնահատկություն-
ներն ու կարիքները, զարգացնեն տեղական տնտեսությունը, զարկ տան ու
խրախուսեն մասսաների ինքնագործունեությունն ու ակտիվությունը։ Սովետ-
ների գործկոմները այդ բանին կհասնեն որոշումների կատարման ստուգումը
լավ հիմքերի վրա դնելու միջոցով։

Տեղական Սովետների աշխատանքի մակարդակը, նրանց ղեկավար կադ-
րերի մարտունակությունը մեծ մասամբ կախված է այն բանից, թե պար-
տիական կազմակերպությունները տեղերում որքան ուշադրություն են դարձ-



նում սովետական աշխատանքին։ Պարտիան իր տեղական օրգաններից պա-
հանջում է բարձրացնել Սովետների ակտիվությունը, ուղղություն տալ ու վե-
րահսկել սովետական օրգանների գործունեությանը, օգնություն ցույց տալ
Սովետներին կադրերի ընտրության ու դասավորակման գործում։

Սակայն դեռևս կան առանձին պարտիական կազմակերպություններ,
որոնք իրենց պրակտիկ գործունեության մեջ առաջվա պես շատ քիչ բան են
անում, որպեսզի ամեն օր բարձրացնեն տեղական Սովետների և նրանց
գործադիր օրգանների դերն ու հեղինակությունը, բարձրացնեն նրանց՝ որպես
Սովետական իշխանության օրգանների պատասխանատվությունը իրենց ան-
միջական պարտականությունների կատարման գործում։

Տեղական Սովետների նկատմամբ պարտիական կազմակերպությունների
ցույց տված ղեկավարության վիճակի մասին կարելի է դատել թեկուզ նրա-
նից, որ ընտրություններից հետո ոչ բոլոր տեղական Սովետներում են պար-
տիական խմբեր կազմակերպվել այդ Սովետների աշխատանքին ամենօրյա
ղեկավարություն ցույց տալու համար։

Ախտայի, Կրասնոսելսկի, Ապարանի և մի քանի այլ շրջաններում քիչ չէ
այն պարտիական կազմակերպությունների թիվը, որոնք տեղական Սովետ-
ների ընտրությունից հետո գրեթե չեն հետաքրքրվել նրանց գործունեությամբ,
լավ չեն օգնել տեղական Սովետների գործկոմներին՝ նրանց առջև դրված
խնդիրների իրականացման գործում։ Թեպետև տեղական Սովետների դեպու-
տատների թվում քիչ կոմունիստներ չկան, որոնց մեծ մասն էլ ընդգրկված է
մշտական հանձնաժողովներում, այնուամենայնիվ նրանցից ոմանք վատ են
աշխատում, իսկ պարտիական կազմակերպություններն էլ լիբերալ վերաբեր-
մունք են ցուցաբերում այդպիսի կոմունիստների նկատմամբ, նրանցից չեն
պահանջում ակտիվորեն մասնակցել Սովետների աշխատանքին։

Այդ տեսակետից լավ նախաձեռնություն է դրսևորել պարտիայի Կիրո-
վականի շրջանային կոմիտեն, որն իր բյուրոյի նիստերում քննարկում է այն
հարցը, թե կոմունիստ դեպուտատներն ինչպես են կատարում իրենց դեպու-
տատական պարտականությունները։

ՍՄԿՊ Կենտկոմը դատապարտել է այն պրակտիկան, երբ պարտիական
օրգաններն իրենց վրա են վերցնում բոլոր ընթացիկ, նույնիսկ մանր տնտե-
սական հարցերի լուծումը, շրջանցելով շրջգործկոմին, փոխարինելով նրան,
դիմազրկելով սովետական օրգաններին, թուլացնելով նրանց պատասխանա-
տվությունը, նրանց ղեկավարությունը։ Նրանք մոռանում են պարտիայի այն
ցուցումը, որ ոչ մի դեպքում չպետք է իրար խառնել պարտիական կոմիտե-
ների և Սովետների ֆունկցիաները, որ պարտիան իր որոշումները պետք է
իրականացնի սովետական օրգանների միջոցով, պարտիան պետք է ղեկավա-
րի Սովետների աշխատանքը, բայց չփոխարինի նրանց։

Անհրաժեշտ է վերջ տալ սովետական օրգանների նկատմամբ ավելորդ
խնամակալություն դրսևորելու սխալ պրակտիկային և, ամրապնդելով պետա-
կան կարգապահությունը՝ բարձրացնել սովետական ու տնտեսական աշխա-
տողների պատասխանատվությունը իրենց հանձնարարված գործի համար։

Բարձրացնելով Սովետների դերը, պարտիական կազմակերպությունները
պետք է հատուկ ուշադրություն դարձնեն Սովետների կազմակերպական-
մասսայական աշխատանքի կազմակերպման վրա։ Պարտիական կոմիտեները
չպետք է անտարբեր մնան այն հարցում, թե ինչպես է աշխատում գործադիր

կոմիտեի ապարատը, թե արդյոք նա լրիվ պահպանո՞ւմ է Կոնստիտուցիայի պահանջները, ինչպե՞ս է գործկոմը աշխատում դեպուտատների և ակտիվի հետ։

Եվ այժմ, երբ պետության առջև մեծ խնդիրներ են կանգնած ժողովրդական տնտեսության զարգացման պլանների կատարման, գյուղատնտեսության շեշտակի վերելքի համար մղվող պայքարում, անհրաժեշտ է է՛լ ավելի բարձրացնել տեղական Սովետների ամբողջ կազմակերպական-մասսայական աշխատանքի մակարդակը։

Սովետներին ցույց տրվող ղեկավարությունն անհրաժեշտ է բարելավել ամենից առաջ կադրերի ավելի կատարյալ ընտրության ու պատրաստության միջոցով։ Նկատի ունենալով այն, որ բնակչության կուլտուրական մակարդակն այժմ անհամեմատ աճել է, իսկ տնտեսության ղեկավարումը՝ բարձրացել, պետք է որ կադրերի կուլտուրական հորիզոնը շատ ավելի լայն լինի, քան առաջներում էր։

Ներկայումս սովետական շինարարության գլխավոր խնդիրներից մեկը Սովետների գործունեությանը ակտիվ մարտական բովանդակություն հաղորդելն է։ Պետության առջև կանգնած խնդիրների իրականացումը պահանջում է է՛լ ավելի բարձրացնել տեղական Սովետների ամբողջ աշխատանքի մակարդակը։ Այդ հանգամանքը մեծ պարտականություններ է դնում նաև պարտիական կազմակերպությունների վրա։ Նրանք պետք է Սովետներին օգնեն նրանց գործունեությունն աշխուժացնելու, մասսաների հետ ավելի սերտ կապեր հաստատելու գործում։

Վերջին ժամանակներս պարտիայի քաղաքային ու շրջանային կոմիտեների պլենումները, քննելով «Աշխատավորների դեպուտատների Սովետների գործունեությունը բարելավելու և մասսաների հետ նրանց կապերն ուժեղացնելու հարցը» ՍՄԿՊ Կենտկոմի որոշման կատարման տեսանկյունով, ամփոփեցին այդ ասպարեզում կատարած աշխատանքի արդյունքները։

Պլենումների որոշումներում լայն միջոցառումներ են նշված աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ամբողջ գործունեությունը բարելավելու ուղղությամբ։ Պարտիական կազմակերպությունների մարտական խնդիրը պետք է լինի պլենումների ընդունած որոշումների հետևողական ու հաստատակամ իրականացումը։

Պարտիայի քաղկոմներն ու շրջկոմներն այնպես պետք է կառուցեն Սովետներին ցույց տրվող ղեկավարությունը, որ յուրաքանչյուր դեպուտատ և մանավանդ ղեկավար աշխատող մշտապես պատասխանատվություն զգա իրեն հանձնարարված գործի համար, անհաշտ վերաբերմունք դրսևորի սովետական ապարատի աշխատանքում եղած թերությունների նկատմամբ և ամրապնդի պետական կարգապահությունը։

Աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների նկատմամբ Կոմունիստական պարտիայի ունեցած ղեկավար ու կազմակերպիչ դերը Սովետական իշխանության տեղական օրգանների աշխատանքի հետագա բարելավման, Սովետական պետության հզորության է՛լ ավելի ամրապնդման հուսալի երաշխիքն է։

---

# ՀԱՋՈՂ ՍԿԻԶԲԸ

## Գ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

Վերջին տարիներին Ապարանի շրջանում զգալի առաջխաղացում է տեղի ունեցել անասնաբուծության բնագավառում։

Եթե խոսենք անասնաբուծության նախկին վիճակի մասին, ապա պետք է առաջին հերթին նշենք, որ տարիներ շարունակ ցածր էր անասունների մթերատվությունը, անասնաբուծության զարգացման պլանները կոլտնտեսությունների զգալի մասում կատարվում էին ոչ թե սեփական հոտի վերարտադրության, այլ գնման հաշվին, ընդ որում այդ նպատակի համար օգտագործվում էր կոլտնտեսականների աշխօրերին բաշխվող եկամուտների զգալի մասը։

Անասնաբուծության այս վիճակը չէր կարող լուրջ անհանգստություն չպատճառել շրջանի պարտիական և սովետական կազմակերպություններին։ Եվ երբ շրջանի պարտիական և սովետական օրգանները ՍՄԿՊ Կենտկոմի 1953 թվականի Սեպտեմբերյան պլենումի որոշումից հետո խորապես ուսումնասիրեցին անասնաբուծության վիճակը, ավելի պարզորոշ կերպով բացահայտեցին այդ բնագավառում տեղ գտած թերությունները և նրանց պատճառները։ Երկար ժամանակ շրջանի պարտիական, սովետական և տնտեսական աշխատողների մոտ ստեղծվել էր ոչ ճիշտ կարծիք՝ իբրև թե Ապարանի պայմաններում տեղական անասունների բարձր մթերատվության հասնել հնարավոր չէ։ Կյանքը ցույց տվեց բոլորովին այլ բան. ընդհակառակը, անասնաբուծության զարգացման համար Ապարանն ունի շատ բարենպաստ պայմաններ։ Անհրաժեշտ էր միայն գործնական քայլերի դիմել։

Պարտիայի շրջանային կոմիտեն իր ուշադրությունը կենտրոնացրեց պարտիական կազմակերպությունների պատասխանատվությունը անասնաբուծության նկատմամբ բարձրացնելու հարցի վրա։ Այդ նպատակով շրջանային պարտիական ակտիվի ժողովներում, շրջկոմի պլենումներում և բյուրոյի նիստերում քննության առնվեցին անասնաբուծության հիմնական հարցերը։ Շրջկոմն ամենից առաջ զբաղվեց կերի կայուն բազա ստեղծելու և հանրային անասունները բարեկարգ գոմերով ապահովելու հարցերով։

Անասունները կերով ապահովելու համար կիրառվող ցանքաշրջանառության հիման վրա յուրաքանչյուր տարի կոլտնտեսություններում 1300—1500 հեկտար բազմամյա խոտաբույսերի ցանք է կատարվում, ամեն տարի կազմակերպվում է ցանովի բազմամյա խոտաբույսերի և բնական խոտհարքային տարածությունների փոցխում և հանքային ու տեղական պարարտանյութերով պարարտացում։ Խոտի որակը բարելավելու նպատակով 1955—1956 թվականներին մի շարք կոլտնտեսություններում (Զովունիի, Քասախի, Քուչակի) բնական խոտատարածությունների վրա լրացուցիչ կարգով ցանվեց բազմամյա

խոտաբույսերի սերմացու և փոցխվեց։ Կերի բազան ավելացնելու նպատակով ձեռք բերվեց վիկայի սերմացու և այժմ շրջանի Հովիտ, Հարթավան, Վարդաբլուր, Զովունի, Ձորագլուխ, Մռավյան, Ծաղկահովիտ, Շենավան և այլ գյուղերի կոլտնտեսություններում արմատավորվել է վիկայի ցանքը, որից զգալի չափով անասնակեր է ստացվում։ Խոտի լրացուցիչ պաշար ստանալու նպատակով արոտներից՝ 1500—2000 հեկտար վաղ գարնանը առանձնացվում է, խնամվում և հնձվում։ Այս գործում աչքի ընկնող աշխատանք են կատարել Հարթավան, Ծաղկահովիտ, Հովիտ, Ապարան, Մռավյան, Ձորագլուխ, Լուսագյուղ և այլ գյուղերի կոլտնտեսությունները։

Այն կոլտնտեսություններում, որտեղ բնական մարգագետինները ջրովի են (Վարդենուտ, Արագած, Ծաղկաշեն, Քուչակ, Քասախ, Զովունի և այլն), արդեն 3 տարի է, որ խոտհունձն ավարտելուց հետո այդ մարգագետինների մի մասը պաշտպանվում է արածեցումից, մշակվում է և երկրորդ անգամ հնձվում և հնձված կանաչ մասսան օգտագործվում սիլոսի համար, իսկ մյուս մասն աշնան ամիսներին (սեպտեմբերին և հոկտեմբերին) օգտագործվում է կովերի արածեցման համար, որը զգալիորեն նպաստում է կաթնատվության բարձրացմանը։

Բացի այդ, մի շարք կոլտնտեսությունների յայլաղներում (ամառանոցներում) պատրաստվում է սիլոս, որը օգոստոս և սեպտեմբեր ամիսներին, երբ արդեն կանաչը չորանում է, տալիս են կովերին։ Ամառանոցներում կոլտնտեսությունների մեծ մասում կազմակերպվում է արոտների հերթական արածեցում։

Շրջանի ցածրադիր կոլտնտեսություններում սիլոսի համար ցանվում է եգիպտացորեն, իսկ բարձրադիր գյուղերում՝ տարեկան։

1957 թվականին շրջանի պարտիական կազմակերպություններն աշխատավորության շրջանում ծավալելով քաղաքական մասսայական աշխատանք, մոբիլիզացրին նրանց ուժերը և ժամանակին ավարտեցին խոտհնձի աշխատանքները, հնձվեց շուրջ 9947 հեկտար տարածություն, որից միայն 6700 հեկտար մարգագետին, կուտակվեց 19678 տոննա խոտ՝ պլանով նախատեսված 19600 տոննայի դիմաց, 1956 թվականի համեմատությամբ ավելի կուտակվեց 4891 տոննա, յուրաքանչյուր հեկտար խոտհարքի միջին բերքը կազմեց 20—27 ցենտներ, հավաքվեց և կուտակվեց 13837 տոննա ծղոտ, պատրաստվեց 10473 տոննա սիլոս, 4108 տոննայով ավելի, քան 1956 թվականին։ Զգալի թվով կոլտնտեսություններ խոտհնձի աշխատանքներին ակտիվ կերպով մասնակցած կոլտնտեսականներին տվեցին խոտի լրացուցիչ վարձատրություն։ Կուտակված կերի պաշարը հնարավորություն տվեց ավելի կազմակերպված ու անկորուստ անցկացնել անասունների ձմեռային խնամքը և անցյալ տարվա համեմատությամբ այս տարի զգալիորեն ավելացնել անասնաբուծական մթերքների արտադրությունը։

1958 թվականի գարնանը 1334 հեկտար բազմամյա, 166 հեկտար միամյա խոտաբույսի, 366 հեկտար սիլոսային կուլտուրաների ցանքս կատարվեց։ Այս տարի նախատեսված է կուտակել 19890 տոննա խոտ, 11300 տոննա սիլոս, 15200 տոննա ծղոտ։

Անասնաբուծության զարգացման և նրա մթերատվության բարձրացման գործում խոշոր նշանակություն ունի հանրային անասունները տաք, լուսավոր գոմերով ապահովելը, որից ընդհանրապես զուրկ էին մեր շրջանի գրեթե բոլոր



կոլտնտեսությունները։ Պատահական չէր, որ գոմաշինարարության հարցը մի քանի անգամ քննության առնվեց շրջկոմի բյուրոյի, շրջսովետի գործկոմի նիստերում և պարտկազմակերպությունների ժողովներում և ձեռնարկվեցին միջոցառումներ, որոնք խոշոր չափով նպաստեցին գոմաշինարարության աշխատանքների լայն ծավալմանը։ Այսպես, օրինակ, 1953 թվականից հետո կոլեկտիվ տնտեսություններում կառուցվել և շահագործման է հանձնվել 148 անասնապահական օբյեկտ, որից՝ 64 կովանոց, 33 ոչխարանոց, 19 խոզանոց, 14 հորթանոց և այլն։ Շրջանի գրեթե բոլոր կոլտնտեսություններում կաթնապրանքային ֆերմաների անասունները և խոզերը տեղավորված են նորակառույց գոմերում։

Պարտիայի շրջանային կոմիտեն և սկզբնական կազմակերպությունները լուրջ ուշադրություն հատկացրին նաև անասնապահության բնագավառում աշխատող կադրերի ընտրության և դաստիարակության հարցին։ Կոլտնտեսությունների անասնապահական ֆերմաների 85 վարիչներից շատերը աշխատանքի են առաջ քաշվել անասնաբուծության զարգացման ու նրա մթերատվության բարձրացման վերաբերյալ ՍՄԿՊ Կենտկոմի պլենումների որոշումներից հետո։ Նրանք բոլորն էլ ունեն աշխատանքի երկարամյա փորձ և իրենց լավագույն աշխատանքով ապահովում են անասնաբուծության մթերատվության բարձրացման ուղղությամբ ստանձնած պարտավորությունների կատարումը։

Անասնապահությունը դժվար բնագավառ է, ամեն մարդ չի կարող այդ բնագավառում աշխատել։ Ուստի պետք է այնտեղ ուղարկել այնպիսի աշխատողների, որոնք կարող են զբաղվել անասնապահությամբ, այլապես անասնապահությունից ցանկալի արդյունքներ չի կարելի ստանալ։ 1956 թվականին Ջարջառիսի կոլտնտեսությունում ոչխարաբուծական ֆերմայի վարիչ էր աշխատում Ցարեյանը. ֆերմայում ընկած էր աշխատանքային կարգապահությունը, մեծ չափերի էին հասնում անասունների անկումները, ցածր էր ոչխարների բրդատվությունը։ Որքան էլ որ պարտիական կազմակերպությունը ձգտում էր բարձրացնել ֆերմայի աշխատանքները, որոշումներ էր ընդունում, միջոցառումներ ձեռնարկում, բայց գործը տեղից չէր շարժվում, որովհետև ֆերմայի վարիչը չէր ապրում իր գործով, անփույթ էր դեպի աշխատանքը։ Երբ ֆերմայի վարիչ նշանակվեց անասնապահության գործը լավ հասկացող, Տ. Խոդոյանը, ֆերմայի աշխատանքը գնալով բարելավվեց, խիստ կրճատվեցին անասունների անկումները, բարձրացավ 100 մայրից ստացվող մատղաշի գլխաքանակը, մեկ ոչխարի բրդատվությունը 1957 թվականին հասավ 2,8 կիլոգրամի՝ 1956 թվականի 1,6 կիլոգրամի դիմաց։

Տարիներ շարունակ Վարդենիսի պարտիական կազմակերպությունը և կոլտնտեսության վարչությունը քննադատվում էին այն բանի համար, որ նրանց մոտ ցածր է կովերի կաթնատվությունը։ Այդ հարցը հաճախ քննության էր առնվում պարտիական կազմակերպության ժողովում։ Բայց դրությունը մնում էր անփոփոխ. երբ 1957 թ. կեսերին աշխատանքից ազատվեց ֆերմայի վարիչ Հարությունյանը և նրա փոխարեն ֆերմայի վարիչ նշանակվեց Ջ. Ասատրյանը, փոխվեց կթվոր անասնապահների կազմը, ֆերմայում աշխատանքի ուղարկվեցին բարեխիղճ կոլտնտեսականներ, դրանից հետո զգալի չափով լավացավ ֆերմայի աշխատանքը, բարելավվեց անասունների խնամքը, ավելացավ կաթի համախառն արտադրանքը։ 1958 թվականի օգոստոսի 1-ի

դրությամբ, 1957 թվականի նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, ամեն մի կովի միջին կաթնատվությունը ավելացավ մոտ 473 կիլոգրամով, իսկ կաթի համախառն արտադրությունը՝ 505 ցենտներով։ Ընկ. Ասատրյանը իր լավագույն աշխատանքով վայելում է կոլտնտեսականների համակրանքը։

Վատ էր նաև Ափնայի կոլտնտեսության անասնապահական ֆերմայի աշխատանքը։ Շրջկոմը 1956 թվականին մանրամասն ուսումնասիրեց այդ ֆերմայի աշխատանքները, պարզվեց, որ այնտեղ ընկած էր աշխատանքային կարգապահությունը, կովերին շատ քիչ հյութալի և խտացրած կեր էր տրվում, վատ էր անասունների խնամքը, պարտիական կազմակերպությունն անբավարար էր զբաղվում անասնապահների շրջանում տարվող քաղաքական մասսայական աշխատանքի կազմակերպման, գործարար սոցիալիստական մրցման ծավալման հարցերով։

Շրջկոմի բյուրոյում քննության առնվեց պարտիական կազմակերպության քարտուղար Մ. Սեդրակյանի հաշվետվությունը։ Շրջկոմի բյուրոն պարտիական կազմակերպության և կոլտնտեսության վարչության ուշադրությունը հրավիրեց անասնաբուծության բնագավառում եղած թերությունների վերացման վրա և ընդունեց համապատասխան որոշում, որը քննության առնվեց պարտիական կազմակերպության ժողովում և անասնապահների արտադրական խորհրդակցությունում։ Պարտիական կազմակերպությունը և կոլտնտեսության վարչությունը կոնկրետ միջոցառումներ ձեռնարկեցին բյուրոյի որոշումը կենսագործելու համար։ Վերանայվեց կթվոր անասնապահների կազմը, մի շարք կթվոր անասնապահներ, որոնք չէին արդարացնում իրենց, ազատվեցին աշխատանքից և նրանց փոխարեն աշխատանքի ուղարկվեցին ավելի բարեխիղճ, անասնաբուծության գործից հասկացող կոլտնտեսականներ։ 1957 թվականին պատրաստվեց 230 տոննա սիլոս (մեծ մասը եգիպտացորեն), 1956 թ. 120 տոննայի դիմաց։

Ձմեռվա սեզոնին կթվոր անասնապահները անձամբ իրենց վրա վերցրեցին կովերի խնամքը, գոմերում սահմանելով 24-ժամյա հերթապահություն, նրանք իրենք են ստանում կովերին բաց թողնվող կերը և իրենց ձեռքով կերակրում կովերին։ Նրանց լավագույն աշխատանքի շնորհիվ 1957 թվականին ամեն մի կովի միջին կաթնատվությունը 1956 թվականի համեմատությամբ ավելացավ 475 կիլոգրամով։

Ոչ միայն շրջկոմը, այլև սկզբնական պարտիական կազմակերպությունները սիստեմատիկաբար զբաղվում են անասնաբուծության զարգացման և նրա մթերատվության բարձրացման հարցերով։ Հիշատակության արժանի է Վարդենուտ գյուղի կոլտնտեսության պարտիական կազմակերպության աշխատանքը։

Անասնաբուծական ֆերմաներում աշխատող կոլտնտեսականների շրջանում քաղաքական-դաստիարակչական աշխատանք տանելու, սոցիալիստական մրցությունը կազմակերպելու, առաջավորների փորձը մասսայականացնելու համար առանձնացված են 4 ագիտատոր։ Սիստեմատիկաբար լույս են ընծայվում խլլիչովկաներ, անասնապահական ֆերմաներում աշխատող կոլտնտեսականներից 53 հոգի մտել են սոցիալիստական մրցության մեջ։ Այստեղ յուրաքանչյուր 10 օրը մեկ անգամ ստուգվում է ստանձնած պարտավորությունների կատարման ընթացքը և այն քննվում արտադրական խորհրդակցություններում։ Կոլտնտեսությունում սահմանված է փոխանցիկ դրոշ։ Յուրա-



քանչյուր ամսվա վերջում կոլտնտեսության վարչության նիստում քննության է առնվում ստանձնած պարտավորությունների և տվյալ ամսվա կաթի արտադրության պլանների կատարման ընթացքը։ Այն կթվորուհին, որը տվյալ ամսվա կաթի արտադրության պլանը կատարել է և ունի ամենաբարձր ցուցանիշ, շահում է փոխանցիկ դրոշը և ստանում դրամական պարգև։ 1958 թվականի անցած 5 ամիսներին փոխանցիկ դրոշը շահել են կթվորուհիներ Ս. Ղազարյանը, Ա. Հովհաննիսյանը, Ռ. Գևորգյանը և Զ. Գևորգյանը։

Պարտիական կազմակերպությունը հետևում է, որպեսզի կոլտնտեսությունում ճիշտ կենսագործվի լրացուցիչ վարձատրության սկզբունքը։ 1957 թվականին անասնապահ կոլտնտեսականները որպես լրացուցիչ վարձատրություն ստացան՝ 25 ցենտներ կաթ, 6 գլուխ հորթ, ինչպես նաև միս, բուրդ, գառ, խոճկոր և այլն։ Կթվորուհի Ս. Ղազարյանը որպես լրացուցիչ վարձատրություն ստացել է 341 կիլոգրամ կաթ և մեկ հորթ։ Եթե Վարդենուտում տարիներ շարունակ չէր լուծվում անասնապահական շենքերի կառուցման գործը և հանրային անասունները պահվում էին խարխուլ գոմերում, պարտիական կազմակերպության նախաձեռնությամբ ստեղծվեց շինարարության մշտական բրիգադա, որը կարճ ժամանակում կարողացավ անասունների համար կառուցել 8 գոմ, սիլոսային մի քանի խրամատ։ Անասնակերի բազան ընդլայնելու համար կոլտնտեսությունում արմատավորվեց առվույտի ցանքը, որի սերմացուից կոլտնտեսությունը տարեկան ստանում է 150—200 հազար ռուբլի լրացուցիչ դրամական եկամուտ։ Այս բոլորի շնորհիվ կոլտնտեսությունը դարձավ շրջանի առաջավոր կոլտնտեսություններից մեկը, տարեցտարի ավելացնում է կոլտնտեսության անասունների գլխաքանակը և մթերատվությունը։ Արդեն 1957 թվականին 100 հեկտար հողատարածության դիմաց կոլտնտեսությունն ուներ 42 գլուխ խոշոր և 187 գլուխ մանր եղջերավոր անասուն, որը կոլտնտեսությանը հնարավորություն տվեց 1958 թվականի անասնապահական մթերքների պետական պարտավորությունները կատարելու ժամանակից մի քանի ամիս շուտ։

Կարելի է նշել նաև Ջիլոնի կոլտնտեսության հաջողությունները։ Եթե այս կոլտնտեսությունում 1950 թվականին մեկ կովի միջին կաթնատվությունը եղել է 221 կիլոգրամ, իսկ համախառն արտադրանքը՝ 199 ցենտներ, ապա 1957 թվականին մեկ կովի միջին կաթնատվությունը հասավ մոտ 2000 կիլոգրամի, իսկ համախառն արտադրանքը՝ 1529 ցենտների. 100 հեկտար հողատարածության դիմաց արտադրվեց 250 ցենտներ կաթ։ Այս հաջողությունն առաջին հերթին պայմանավորվում է նրանով, որ պարտիական կազմակերպությունը և կոլտնտեսության վարչությունը միասին համարձակորեն քննում և լուծում են անասնաբուծության զարգացման հարցերը. Նրանք պայքարում են անասունների ցեղը բարելավելու, կերի կայուն բազա ստեղծելու համար։

Կոլտնտեսությունը տարեկան ցանում է 20 հեկտար եգիպտացորեն, կերի արմատապտուղ և այլն, լավագույն մշակման հետևանքով ստանում է բարձր բերք։ 1957 թվականին կերի ճակնդեղի հեկտարից ստացվեց 150—180 ցենտներ բերք, եգիպտացորենից՝ 250—300 ցենտներ բերք, իսկ առանձին հեկտարներից՝ նույնիսկ 400 ցենտներ կանաչ մասսայի բերք։ Նման փաստեր կարելի է բերել նաև մյուս կոլտնտեսություններից։

Ապարանի շրջանում ձմեռը երկար է տևում, անասունների մսուրային խնամքը տևում է 5—6 ամիս։ Ուստի ձմեռացումը հաջող և անկորուստ անց-

կացնելու, անասունների խնամքը լավ կազմակերպելու համար ձմեռային սեզոնում անասնապահական ֆերմաներում լրացուցիչ աշխատանքի են ուղարկվում զգալի թվով կոլտնտեսականներ, որոնց մեծ մասը կոմունիստներ և կոմերիտականներ են։ Անասնապահության բնագավառում աշխատող կոմունիստներից իրենց լավ են արդարացնում Վարդենուտից՝ հովիվ Հ. Վարդանյանը, Մռավյանից՝ կթվորուհի Ա Գևորգյանը, Վարդենիսից՝ հովիվ Ս. Սարգըսյանը, Քուչակից՝ հովիվ Ե. Կիրակոսյանը և շատ ուրիշներ։

Շրջկոմն անասնապահների հետ տարվող աշխատանքում ներգրավում է շրջանի ղեկավարներին, շրջկոմի բյուրոյի անդամներին, որոնք սիստեմատիկաբար լինում են անասնապահական ֆերմաներում, ուսումնասիրում նրանց աշխատանքի վիճակը, հրավիրում անասնապահական ֆերմաներում աշխատող կոլտնտեսականների խորհրդակցություններ, զեկուցումներ, զրույցներ են կազմակերպում նրանց հետ պարտիայի ու կառավարության որոշումների մասին, տվյալ ֆերմայի աշխատանքի և անասնապահների խնդիրների մասին։ Այս բոլորը բարձրացնում են անասնապահների աշխատանքային խանդավառությունը և նպաստում առաջադրված խնդիրների կատարմանը։ 1957 թվականին կոլտնտեսություններում աշխատող 325 կթվոր անասնապահներից շուրջ 200 հոգին կատարեցին ու գերակատարեցին ստանձնած պարտավորությունները, 270 հովվից 172-ը կատարեցին ու գերակատարեցին մեկ ոչխարից ստացվելիք բրդի արտադրության պլանը։ Ավելի աչքի ընկնող ցուցանիշների հասան Զովունիից՝ կթվորուհիներ Ս. Սիմոնյանը և Ա. Մեսրոպյանը, որոնք յուրաքանչյուր կովից ստացան 2200—2800 կիլոգրամ կաթ, պլանով նախատեսված 1700 կիլոգրամի փոխարեն։ Բարձր ցուցանիշների հասան նաև Զ. Գևորգյանը և Ա. Ղազարյանը՝ Վարդենուտից, հովիվ Ռաֆայել Մկրտչյանը՝ Քասախից, Վ. Հակոբյանը՝ Հարթավանից, Մ. Դավթյանը՝ Չքնաղից, Ա. Մելքոնյանը՝ Իթուջրից, Ս. Վիրաբյանը՝ Երնջատափից և շատ ուրիշներ։

Այսպիսով, անասնապահների քրտնաջան աշխատանքի շնորհիվ շրջանում կենսագործվեցին շատ կարևոր միջոցառումներ, որոնք նկատելիորեն խթանեցին անասնապահության զարգացումը։ Այդ մասին է խոսում շրջանի կոլտնտեսություններում անասունների գլխաքանակի աճը ըստ տարիների։

| Անասունները ըստ տեսակների | 1950 թ. առ 1-ը հունվարի | 1954 թ. առ 1-ը հոկտեմբ. | 1957 թ. առ 1-ը հոկտեմբ. | 1958 թ. առ 1-ը հունիսի |
|---|---|---|---|---|
| Ընդամենը խոշոր եղջերավոր անասուններ | 10446 | 10926 | 11154 | 13137 |
| Այդ թվում կովեր | 1430 | 1955 | 2776 | 3002 |
| Մանր եղջերավոր անասուններ | 41120 | — | 45432 | 63654 |
| Խոզեր | 971 | 945 | 1154 | 1379 |

Բերված աղյուսակից երևում է, որ 1950 թվականի համեմատությամբ 1957 թվականին շրջանի կոլեկտիվ տնտեսություններում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը ավելացել է 708 գլխով, որից կովերինը՝ 1346 գլխով, մանր եղջերավորներինը՝ 4312 գլխով, իսկ 1958 թվականի անցած 5 ամիսներին անասունների գլխաքանակը, 1957 թվականի համեմատությամբ, ավելացել է խոշորինը՝ 2691, կովերինը՝ 1572, մանրինը՝ 22534, խոզերինը՝ 408 գլխով։

Զգալի չափով կրճատվել է անասունների անկումը, ավելացել է 100



մայրից ստացվող մատղաշի քանակը, որը հնարավորություն է տվել անասունների գլխաքանակի աճեցման պլանը կատարել սեփական հոտի վերարտադրության հաշվին։ Եթե 1950 թվականին խոշոր եղջերավոր անասունների անկումը հասնում էր 9 տոկոսի և մանր եղջերավոր անասուններինը՝ 11,5 տոկոսի, ապա 1957 թվականին խոշոր եղջերավոր անասունների անկումը կրճատվեց և հասավ 3,7 տոկոսի, մանրինը՝ 4,4 տոկոսի։ 1950 թվականին յուրաքանչյուր 100 կովից ստացվել է 68 հորթ և 100 մայր ոչխարից՝ 64 գառ, 1957 թվականին 100 կովից ստացվել է 75 հորթ և 100 մայր ոչխարից՝ 80 գառ։ Զգալի չափով ավելացել է անասնաբուծական մթերքների արտադրությունը։ Եթե 1950 թվականին կովի միջին կաթնատվությունը եղել է 420 կիլոգրամ և համախառն կաթի արտադրությունը կազմել է 6164 ցենտներ, ապա 1957 թվականին մեկ ֆուրաժային կովի կաթնատվությունը հասավ 1340 կիլոգրամի, իսկ կաթի համախառն արտադրությունը՝ 36130 ցենտների։

Զգալի չափով ավելացել է ոչխարների բրդատվությունը։ 1957 թվականին յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց արտադրվեց 2,91 ցենտներ բուրդ, պլանով նախատեսված 2,5 ցենտների դիմաց, 35 կոլեկտիվ տնտեսություններից 29-ը կատարեցին և գերակատարեցին յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց բրդի արտադրության պլանը։ Անցյալ տարի մեկ ոչխարի միջին բրդատվությունը հասավ 2,9 կիլոգրամի, համախառն բուրդը կազմեց 1156 ցենտներ, 1950 թվականի 357 ցենտների դիմաց։ Ավելի բարձր ցուցանիշներ ունեն Ապարանի, Երնջատափի, Զովունիի, Թթուջրի, Լուսագյուղի, Հարթավանի, Ջորագյուղի, Շենավանի, Չքնաղի, Վարդենուտի, Քասախի. Քուչակի, Հովիտի և Մելիքգյուղի կոլտնտեսությունները։

Ապարանի կոլտնտեսությունում ամեն մի ոչխարի միջին բրդատվությունը հասավ 3 կիլոգրամի, համախառն բուրդը՝ 52 ցենտների, 1950 թվականի 1,2 կիլոգրամի և 16 ցենտների դիմաց։

Շրջանի կոլտնտեսություններում զգալի չափով ավելացել է նաև մսի արտադրությունը. 1957 թվականին մսի պետական մթերումների և գնումների պլանը կատարվեց 103 տոկոսով, կաթինը՝ 101 տոկոսով, բրդինը՝ 123 տոկոսով։ 1958 թվականին կոլտնտեսությունները պետությանը վաճառելու են 3 անգամ ավելի կաթ, քան նրանք արտադրել են 1950 թվականին։

Կոլտնտեսություններում անասնապահական մթերքների արտադրության ավելացման շնորհիվ բարձրացել են դրամական եկամուտները և անբաժանելի ֆոնդին հատկացվող գումարները։ 1957 թվականին կոլտնտեսությունների դրամական եկամուտը, 1950 թվականի համեմատությամբ, ավելացել է մոտ 4 անգամ, իսկ 1953 թվականի համեմատությամբ՝ 2 անգամ։ Օրինակ, Հովիտի կոլտնտեսության դրամական եկամուտը 1950 թ. եղել է 152569 ռուբլի, որից անասնաբուծությունից՝ 93459 ռուբլի, իսկ 1957 թվականին դրամական եկամուտը հասավ 751070 ռուբլու, որից անասնաբուծությունից՝ 730990 ռուբլի։ Զգալիորեն ավելացել է նաև Վարդենուտի, Զովունու, Շենավանի, Քասախի և ուրիշ կոլտնտեսությունների դրամական եկամուտները։

Անասնապահների 1958 թվականի հավաքը պարտավորվեց ընթացիկ տարում կովերի միջին կաթնատվությունը հասցնել 1515 կիլոգրամի, կաթի համախառն արտադրությունը՝ 58000 ցենտների, որից կովի կաթ՝ 44.500 ցենտներ, մսինը՝ 14.000 ցենտների, բրդինը՝ 1120 ցենտների, ոչխարի միջին բրդատվությունը հասցնել 3 կիլոգրամի։ 100 հեկտար հողատարածության դի-

*մաց արտադրել՝ 140 ցենտներ կաթ, 35 ցենտներ միս, 2,9 ցենտներ բուրդ, պետությանը հանձնել բացառապես միջակ և միջակից բարձր գիրությամբ անասուններ, հանձնվող անասունների կենդանի քաշը հասցնել խոշորինը՝ 250—280 կիլոգրամի, ոչխարինը՝ 45—50 կիլոգրամի, խոզինը՝ 70—80 կիլոգրամի։*

*Շրջանի մի շարք առաջավոր կոլտնտեսություններ ստանձնել են ավելի բարձր պարտավորություններ։ Յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց Զովունիի կոլտնտեսությունը պարտավորվել է արտադրել 5,4 ցենտներ բուրդ, 280 ցենտներ կաթ, 80 ցենտներ միս, որից խոզի միս՝ 23 ցենտներ. Վարդենուտի կոլտնտեսությունը՝ 250 ցենտներ կաթ, 70 ցենտներ միս, 5,5 ցենտներ բուրդ. Արայիի կոլտնտեսությունը՝ 215 ցենտներ կաթ, 60 ցենտներ միս. Չքնաղի կոլտնտեսությունը՝ 185 ցենտներ կաթ, 65 ցենտներ միս։ Բարձր պարտավորություններ են վերցրել նաև Քասախի, Ծաղկահովիտի, Հովիտի և մի շարք այլ կոլտնտեսություններ։ Անցած 7 ամիսների արդյունքները ցույց են տալիս, որ կոլտնտեսությունների և անասնապահական ֆերմաների աշխատողների զգալի մասը պատվով են կատարում ստանձնած պարտավորությունները։*

*Շրջանում օգոստոսի 1-ի դրությամբ կովերի միջին կաթնատվությունը հասել է 1147 կիլոգրամի, կամ անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ ավելացել է 133 կիլոգրամով, իսկ համախառն կաթը՝ 5869 ցենտներով։ Գրեթե բոլոր կոլտնտեսություններում կազմակերպվել է պետությանը հանձնվող անասունների գիրացումը և առաջին կիսամյակում պետությանը հանձնվել են միջակ և միջակից բարձր գիրությամբ անասուններ։*

*Օգոստոսի 1-ի դրությամբ պետությանն է հանձնված 17945 ցենտներ կաթ, որը անցյալ տարվա համեմատությամբ ավելի է 2634 ցենտներով, և կաթի մթերման տարեկան պլանը կատարվել է 100 տոկոսով, մսի հանձնման կիսամյա պլանը՝ 105 տոկոսով։*

*Սակայն շրջանի ոչ բոլոր պարտիական կազմակերպություններն են, որ վճռական միջոցառումներ են ձեռնարկում եղած հնարավորությունները լրիվ չափով օգտագործելու և այն ի սպաս դնելու անասնապահական մթերքների արտադրության շեշտակի ավելացմանը։*

*Ալագյազի և Ղոնդաղսազի կոլտնտեսություններն իրար հարևան են։ Ղոնդաղսազի կոլտնտեսությունը ունի արոտային և կերի կուտակման ավելի շատ լավ հնարավորություններ, քան Ալագյազի կոլտնտեսությունը։ Սակայն օգոստոսի 1-ի դրությամբ Ալագյազի կոլտնտեսությունը մեկ կովից ստացել է 1729 կիլոգրամ կաթ, իսկ Ղոնդաղսազի կոլտնտեսությունը՝ 1096 կիլոգրամ։ Մելիքգյուղի կոլտնտեսությունը ունի արոտի, կերի կուտակման և ջրի ավելի լավ պայմաններ, քան Ջամշլուի կոլտնտեսությունը. սակայն Ջամշլուի կոլտնտեսությունում ամեն մի կովից կթվել է 1285 կիլոգրամ կաթ, իսկ Մելիքգյուղի կոլտնտեսությունում՝ 981 կիլոգրամ։ Բանն այն է, որ Ղոնդաղսազի պարտիական կազմակերպության քարտուղար Կ. Կոտիկյանը և կոլտնտեսության վարչության նախագահ Զաքարյանը չեն թափանցում անասնապահական ֆերմաների աշխատանքների մեջ, ֆերմաներում աշխատող կոլտնտեսականների մոտ դեռևս ցածր է պատասխանատվության զգացումը։*

*Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնապահական մթերքների արտադրության ավելացման շնորհիվ զգալի չափով ավելացել են կոլտնտեսականների եկամուտները, բարձրացել է նրանց կուլտուրական մակարդակը։ Շատ կոլտնտեսականներ իրենց սեփական միջոցներով կառուցել են նոր, գեղեցիկ բնակարաններ։ Վերջին մի քանի տարվա ընթացքում շրջանի գյուղերում կառուցվել է շուրջ 1500—2000 բնակարան։ Կոլտնտեսությունների միջոցներով կառուցվել է 23 ակումբ-գրադարանների շենք։ Լայն աշխատանք է կատարվել գյուղերը էլեկտրիֆիկացման ենթարկելու ուղղությամբ։ Շրջանի 36 գյուղերից 35-ը էլեկտրիֆիկացման են ենթարկված, շատ կոլտնտեսություններում էլեկտրականությունը օգտագործվում է արտադրության մեջ։ Բացի այդ, վերջին երեք-չորս տարիների ընթացքում շրջանի 17 գյուղեր ապահովվեցին խմելու ջրով։*



*Անասնաբուծության զարգացման համար ավելի մեծ հեռանկարներ են բացվում ապագայում։ 1958—1965 թթ. պլանով նախատեսված է զգալի չափով ավելացնել ինչպես անասունների գլխաքանակը, այնպես էլ անասնաբուծության մթերքների արտադրությունը։ Կաթի և մսի արտադրությունը 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, ավելանալու է 2 անգամ, յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց արտադրվելու է 55,3 ցենտներ միս, 1957 թվականի 25,5 ցենտների դիմաց, իսկ կաթի արտադրությունը հասցվելու է 234 ցենտների, 1957 թվականին արտադրված 117 ցենտների դիմաց։ Զգալի չափով ավելանալու է նաև բրդի և ձվի արտադրությունը։*

*Ապարանի շրջանն անասնաբուծության զարգացման համար ունի լայն հեռանկարներ։ Սակայն այդ բնագավառում գոյություն ունեն մի շարք թերություններ և չլուծված հարցեր, որոնց վրա պետք է բևեռեն իրենց ուշադրությունը շրջանի պարտիական և սովետական կազմակերպությունները։*

*Ամենից առաջ պետք է խոստովանել, որ քիչ ուշադրություն է դարձվում անասունների ցեղի բարելավմանը, դրությունը առանձնապես վատ է խոշոր եղջերավոր անասունների ցեղայնության բարելավման գործում։ Առաջիկա մի քանի տարում պետք է բեկում ստեղծել այս կարևոր գործում։*

*Անասնաբուծության հետագա զարգացման համար պահանջվում է ավելի շատ կեր կուտակել, սակայն շրջանում եղած մարգագետինները շատ քիչ են, իսկ ցանքաշրջանառության հիման վրա կատարված բազմամյա խոտաբույսերի ցանքատարածությունները քիչ են և անջրդի լինելու պատճառով ցածր բերք են տալիս, որի հետևանքով էլ, հատկապես անբարենպաստ տարիներին, բավարար քանակությամբ կոշտ կեր չի կուտակվում։ Մեր կարծիքով ՀՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրությունը և ռեսպուբլիկայի գյուղատնտեսության բնագավառի գիտնականները շրջանի կազմակերպություններին պետք է օգնեն յուրաքանչյուր կոլտնտեսության բնակլիմայական պայմաններին համապատասխան մշակելու այնպիսի ցանքաշրջանառություն, որ խոշոր չափով նպաստի կերի բազայի զարգացմանը։*

*Շրջանի կոլտնտեսություններում բազմամյա խոտաբույսերի ցանքատարածությունները մեծ մասամբ անջրդի են, որի պատճառով էլ ցածր բերք է ստացվում։ Ինչպես հացահատիկային կուլտուրաների, այնպես էլ խոտաբույսերի ցանքատարածություններից բարձր բերք ստանալու համար անհրաժեշտ է ընդարձակել ոռոգվող հողերի տարածությունը։ Դրա համար պետք է օգտագործել Քասախ գետի ջուրը, որը ոռոգման նպատակներով մինչև օրս գրեթե չի օգտագործվում։*

Հնարավոր է Ապարանի մոտից սկսած 30 կիլոմետր երկարությամբ ըն-
րանցք կառուցել և Քասախ գետի ջուրը հասցնել մինչև Ափնագյուղ, իսկ Երըն-
ջատափ, Մռավյան, Վարդենիս, Թթուջուր, Ջրվռնի գյուղերի մոտերքում կա-
ռուցել ջրհան կայաններ և ոռոգման տակ դնել 5000—6000 հեկտար հող։

Մեր կարծիքով անհրաժեշտ է արագացնել Քասախ գետի ջուրը ոռոգման
նպատակներով օգտագործելու հարցի լուծումը։

Մեծ հնարավորություններ կան օգտագործելու նաև անձրևաջրերը, որի
համար պահանջվում է կառուցել ամբարտակներ, անձրևաջրերը կուտակել և
ամառվա ամիսներին օգտագործել ոռոգման համար, որով և հնարավոր կլինի
զգալիորեն պակասեցնել Սևանա լճից վերցվող ջրի քանակը։

Անասնաբուծության զարգացման համար նշանակություն ունի նաև Արա-
գածի լանջերում եղած արոտավայրերը խմելու ջրով ապահովելու հարցը։

Մինչդեռ ռացիոնալ կերպով չեն օգտագործվում առանձնապես Ծաղկա-
հովիտ, Վարդաբլուր, Հովիտ, Ապարան, Մուլքի, Քուչակ, Վարդենուտ, Արա-
յի, Շենավան, Արագած գյուղերի ամառային արոտավայրերը։ Իսկ եթե Արա-
գածի լանջերում եղած լճի ջրերը օգտագործվեն անասունները ջրելու և արոտ-
ները ոռոգելու նպատակով, ապա մեծ հնարավորություններ կստացվեն անասա-
նաբուծության հետագա զարգացման և անասնաբուծական մթերքների ար-
տադրության ավելացման համար։ Անասնաբուծության զարգացման և նրա
մթերատվության բարձրացման մասին պարտիայի և կառավարության որո-
շումները, ինչպես նաև մթերումների նոր կարգի մասին ՍՄԿՊ Կենտկոմի
Հունիսյան պլենումի որոշումները հրամայողաբար պահանջում են, որպեսզի
ռացիոնալ կերպով օգտագործվեն կոլտնտեսությունների հողային տարածու-
թյունները։ Ապարանի շրջանում կան այնպիսի կոլտնտեսություններ, որոնք
ունեն արոտային լայն հնարավորություններ, սակայն լինելով փոքր, չեն կա-
րող շատ անասուն պահել և լրիվ չափով օգտագործել եղած արոտները։ Կան
նաև այնպիսի գյուղեր, որոնք կարող են ավելացնել անասունների գլխաքա-
նակը և մթերատվությունը, սակայն չունեն արոտի հնարավորություններ։ Ժա-
մանակն է, .որպեսզի վերանայվի այդ հարցը և արոտները բաշխվեն այն-
պես, որ նպաստեն անասնաբուծության զարգացմանը։

---



# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՄԱՍՍԱՆԵՐԻ Ն ՊԱՐՏԻԱՆԵՐԻ ԴԵՐԸ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԿՅԱՆՔՈՒՄ

## Հ. ԽՏՐՅԱՆ

Մինչմարքսյան բոլոր սոցիոլոգներն էլ չէին տալիս պատմության մեջ
ժողովրդական մասսաների, դասակարգերի, պարտիաների ու առանձին ան-
հատների ունեցած դերի ճիշտ մեկնաբանությունը։ Հիմնականում այդ հար-
ցը բացատրվում էր կամ սուբյեկտիվ իդեալիստական, վոլյունտարիստական,
կամ ֆատալիստական տեսանկյունից։ Պատմության մեջ ժողովրդական մաս-
սաների, դասակարգերի, պարտիաների ու նրանց ղեկավարների ունեցած
իսկական դերն ու նշանակությունը, դրանց բացահայտումն ու գիտական
մեկնաբանությունը հնարավոր եղավ միայն Մարքսի ու Էնգելսի այն խոշոր
հայտնագործությունից հետո, ըստ որի՝ հասարակության զարգացման հիմ-
նական և որոշիչ ուժը մարդկանց կյանքի նյութական բարիքների արտադրա-
եղանակն է։

Ժամանակակից բուրժուական սոցիոլոգների մեծ մասի մոտ շարունա-
կում է մնալ և նույնիսկ խորանալ այդ հարցի սխալ ըմբռնումն իր երկու
ծայրահեղություններով՝ սուբյեկտիվ իդեալիստական, վոլյունտարիստական և
ֆատալիստական։ Ժամանակակից պրագմատիստները, ինստրումենտալիստ-
ները, պերսոնալիստները, ֆենոմենոլոգիայի, սեմանտիկայի և այլ ուղղու-
թյունների ներկայացուցիչները մասամբ չեն ուզում, մասամբ էլ չեն կարո-
ղանում այդ հարցը ճիշտ լուսաբանել։ Դրանցից են՝ Ջոն Դյուին, Բերտրան
Ռասսելը, Սիդնեյ Հուկը, Բոլդուինը, Մակկորմիկը, Ռոբինսոնը, Շիլլերը,
Բրայտմենը, Հենրի Բամֆորդ Պարկսը և ուրիշներ։

Բուրժուական գաղափարախոսներն ամեն կերպ ջանում են ժողովրդա-
կան մասսաներին ներկայացնել որպես «կույր ամբոխ», գորշ ու հնազանդ
մի մասսա, որն ունի միայն մութ բնազդներ։ Նրանց կարծիքով ժողովրդա-
կան մասսաները ընդունակ են միայն կործանելու, բայց ոչ ստեղծագործելու,
ուստի և չեն կարող կառավարվել առանց իշխող դասակարգերի, համաշխար-
հային ոգու «վստահված անձերի», «ընտրյալների», «քննադատաբար մտա-
ծողների», «ականավոր անհատների», «ամենազոր» ու «ամենակարող» հե-
րոսների և այլն։ Ժողովրդական մասսաների, դասակարգերի, պարտիաների
ու առանձին անհատների պատմության մեջ ունեցած դերի սխալ մեկնաբա-
նությունները ու հայացքները չի կարելի դիտել որպես պատահական, իսկ
երբեմն էլ աննպատակ երևույթ։ Ինչպես անցյալում, այնպես էլ այժմ այդ
հարցի վերաբերյալ բոլոր իդեալիստական տեսակետները ունեցել են և
ունեն մի կողմից՝ իմացաբանական, իսկ մյուս կողմից էլ սոցիալական, դա-
սակարգային արմատներ։

Մարքսիզմը սովորեցնում է, որ հասարակության պատմությունն ամենից
առաջ իրար հաջորդող արտադրաեղանակների պատմություն է, նյութական
բարիքներ արտադրողների, աշխատավոր մասսաների պատմություն, դասա-
կարգային պայքարի, պարտիաների քաղաքական պայքարի պատմություն։
Աշխատավոր մասսաները հանդիսանում են արտադրության, դասակարգային
պայքարի և ռևոլյուցիաների վճռական գործոնը, հասարակական կյանքի
առաջընթացի հիմնական ուժը։ Ժողովուրդը սուվերեն է և ոչնչով չի սահմա-
նափակված, բացի հասարակության զարգացման օբյեկտիվ օրինաչափու-
թյուններից։ Ժողովրդի աշխատանքային գործունեությունը, նրա սուբյեկտիվ
ձգտումներն ու մղած պայքարը վերջին հաշվով համընկնում են պատմության
օբյեկտիվ առաջընթացին, սոցիալական պրոգրեսին։ Ժողովրդական մասսա-
ներն են արտադրում ու ստեղծում մարդկանց գոյության համար անհրաժեշտ
բոլոր նյութական բարիքները։ Ժողովուրդն է, որ իր անսպառ կարողություն-
ների շնորհիվ ի վիճակի է հաղթահարելու բազմաթիվ դժվարություններ՝
պատերազմ, ավերածություն, բարբարոսություն, կոտորած, սով, համաճա-
րակ և ունենալով կամքի հսկայական ուժ ու պայքարելու հաստատակամու-
թյուն՝ միշտ հաղթել, մնալ կանգուն ու անսասան։ Ժողովրդական մասսա-
ների խոշոր դերն արտահայտվում է նաև հոգևոր կուլտուրայի բոլոր բնա-
գավառներում։ Ժողովրդական մասսաների դերը հասարակական կյանքում
անչափ մեծանում է ռևոլյուցիաների ժամանակ, երբ նրանց ստեղծագործա-
կան նախաձեռնությունը խոշոր մասշտաբների է հասնում, իր բովանդակու-
թյամբ դառնում է ավելի գիտակցված, համարձակ ու գունեղ։

Պատմության մեջ ժողովրդական մասսաների ունեցած դերն ու նշանա-
կությունը արմատապես փոխվում, բարձրանում է նոր որակական աստի-
ճանի սոցիալիզմի պայմաններում։ Սոցիալիզմը վերացնում է այն անդուն-
դը, որ կապիտալիզմի պայմաններում գոյություն ունի աշխատավոր մաս-
սաների ստեղծագործական ուժերի և նրանց գործնական կիրառման միջև։
Սոցիալիզմը ստեղծում է այն բոլոր պայմանները, որոնք անհրաժեշտ են
ժողովրդի աշխատանքային, գիտակցական ու ստեղծագործական նախաձեռ-
նությունը ծավալելու համար։ Մարքսիզմը հերքում է պատմության մեջ ան-
հատի ունեցած դերի ինչպես սուբյեկտիվ իդեալիստական, այնպես էլ մանր-
բուրժուական, անարխիստական տեսակետները։ Որոշակի հասարակական
խնդիրներ լուծելու անհրաժեշտությունն է, որ ստեղծում է պատմական այս
կամ այն անհատի հանդես գալու պահանջը։ Առանձին անհատներ, որոնց
ստեղծում և առաջ է քաշում ինքը՝ ժողովուրդը, իրենց առանձնահատկու-
թյունների շնորհիվ կարող են հանդես գալ որպես խոշոր կազմակերպիչներ,
առաջնորդներ, ավելի խոր ընկալել հասարակական երևույթները, ավելի
շրջահայաց լինել և խոշոր դեր խաղալ պատմության մեջ։ Առաջնորդների,
ղեկավարների դրությունը, հեղինակությունը, հասարակական դերն ու նշա-
նակությունը կախված է նրանից, թե ինչպես են կապված նրանք ժողովրդի
հետ, ինչ դասակարգի, պարտիայի շահերից են ելնում, ինչպես են հասկա-
նում և իրագործում իրենց առջև դրված խնդիրները։ Որքան ղեկավար գոր-
ծիչն ամուր է կապված իր ժողովրդի, դասակարգի, պարտիայի հետ, այն-
քան ավելի ուժեղ է նրա ներգործությունը պատմական իրադարձությունների
վրա, այնքան ավելի մեծ է նրա հասարակական դերը։

Ականավոր անհատները չեն կարող որոշել պատմության պրոցեսի ուղ-



ղությունը։ Նրանք լինելով այդ ուղղության ծնունդ, կարող են արագացնել
կամ դանդաղեցնել պատմության առաջընթացը։ Անհատը նպաստում է պատ-
մական պրոցեսի արագացմանը, եթե ճիշտ է հասկանում հասարակության
կենսական պահանջմունքները, հասունացած խնդիրները, եթե նրա սուբյեկ-
տիվ ձգտումները համընկնում են պատմության օբյեկտիվ ընթացքին, եթե
նա պայքարում է տվյալ հասարակության ռեակցիոն ուժերի դեմ։ Երբ ան-
հատը արհամարհում է հասարակական պահանջմունքները, փորձում է ետ
դարձնել պատմության անիվը, իր սուբյեկտիվ ձգտումներով հակադրվել հա-
սարակական կյանքի օբյեկտիվ առաջընթացին, պայքարում է ռևոլյուցիոն
ուժերի դեմ, կանխապես դատապարտված է կործանման, թեև կարող է որոշ
չափով դանդաղեցնել պատմության առաջընթացը, բայց ոչ կասեցնել։

Պատմության մեջ դեռևս ոչ մի ժողովուրդ, դասակարգ կամ պարտիա չի
հաղթել ու հասել տիրապետության, առանց իր քաղաքական առաջնորդներն
ունենալու, որոնք կանգնել են շարժման գլուխ և ղեկավարել այն։ Առանձ-
նապես մեծ է այն դերն ու նշանակությունը, որ ունեցել են միջազգային
պրոլետարիատի խոշորագույն առաջնորդները, բանվոր դասակարգի պատ-
մական ասպարեզ գալուց հետո։ Հասարակական բոլոր ուսմունքներից և ոչ
մեկն այնպիսի արմատական ազդեցություն չի ունեցել հասարակական կյան-
քի վրա այն արագացնելու իմաստով, ինչպես Մարքսի-Լենինի ուսմունքը։

Ամեն մի ժողովուրդ, դասակարգ, պարտիա ոչ միայն առաջ է քաշում իր
առաջնորդներին, այլև ձևավորում է նրանց իր սոցիալական բնույթին հա-
մապատասխան, օժտում նրանց գործնական հատկանիշներով ու քաղաքա-
կան կերպարով։ Այդ իսկ պատճառով էլ ամեն մի առաջնորդի, ղեկավարի
կերպարն այս կամ այն չափով արտացոլում է իր դասակարգի, պարտիայի
սոցիալական բնույթը, զարգացման աստիճանը, ինչպես նաև այն պատմա-
կան իրադրությունը, որի մեջ ինքը գործում է։

Պրոլետարիատի դասակարգային պայքարի բնույթը, յուրահատկությունը
պայմանավորում են տաղանդավոր և խոշոր կազմակերպչական ընդունակու-
թյուններով օժտված, մեծ նախաձեռնություն ունեցող ղեկավարների հանդես
գալը։ Բոլոր նախորդ առաջնորդներից ու կազմակերպիչներից որակապես
նոր տիպ են ներկայացնում մարքսիստական-լենինյան թեորիայի վրա հեն-
վող գործիչները։ Նրանք իրենց մեջ մարմնավորելով առաջավոր դասակարգի,
պարտիայի կոլեկտիվ իմաստությունը, զինված լինելով ռևոլյուցիոն թեո-
րիայով, գիտական կանխատեսումների միջոցով ավելի հեռուն են տեսնում,
ավելի շրջահայաց են, ավելի խորն են ընկալում ժողովրդի իղձերը, ավելի լավ
են հասկանում հասարակության կենսական խնդիրները և նրանց լուծման
պատմական ուղիները։

Գոյություն ունի որոշակի օրինաչափություն. որքան լայն է ու խոր ժո-
ղովրդական մասսաների շարժումը, որքան արմատական և ծավալով մեծ են
նրանց առջև դրված խնդիրները, որքան ակտիվ է աշխատավորների գոր-
ծունեությունը, այնքան ավելի մեծ է փորձված ղեկավարների, խոշոր ընդու-
նակություններով օժտված կազմակերպիչների ու առաջնորդների պահանջը։

Ժողովրդական մասսաների, դասակարգերի, պարտիայի և առանձին
նշանավոր անհատների միջև գոյություն ունեցող ոչ ճիշտ փոխհարաբերու-
թյան արտահայտություններից է անհատի պաշտամունքի երևույթը։ Անհատի
պաշտամունքը ժողովրդական մասսաների, դասակարգերի, պարտիայի պատ-

մության մեջ ունեցած դերի թերագնահատման և առանձին անհատի միա-
կողմանի գերագնահատման արտահայտությունն է, որն օրգանապես խորթ է
մարքսիզմ-լենինիզմի ոգուն։ Պրոլետարիատի մեծագույն առաջնորդներն
իրենց ամբողջ կյանքում անողոք պայքար են մղել անհատի պաշտամունքի
ամեն տեսակի դրսևորումների դեմ։

Հավատարիմ լենինիզմի ոգուն, ՍՄԿՊ XX համագումարը միահամուռ
դատապարտեց անհատի պաշտամունքը։ Հաղթահարելով այդ պաշտամունքի
բացասական հետևանքները, պարտիան լիովին վերականգնեց ղեկավարու-
թյան լենինյան ոճը, մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական զարգացման
փայլուն օրինակներ տվեց։

Կոլեկտիվ ղեկավարության լենինյան սկզբունքը բացառում է անհատի
պաշտամունքը, ժողովրդական մասսաների, դասակարգերի, պարտիայի հա-
սարակության մեջ ունեցած դերի թերագնահատման երևույթը, արգելում է
ներպարտիական դեմոկրատիայի խախտումը։ Այն չի հանդուրժում գործու-
նեության մերկ վարչարարական մեթոդը։ Նրա աշխատանքի մեթոդը համո-
զումն է, որը նպաստում է ինքնաքննադատության և քննադատության ծա-
վալմանը, աշխատավոր զանգվածների ակտիվությանն ու ստեղծագործական
ձեռներեցությանը։ Կոլեկտիվ ղեկավարության լենինյան սկզբունքը հնարա-
վորություն է տալիս ժամանակին բացահայտել և պայքարել այնպիսի երև-
ույթների դեմ, ինչպիսիք են՝ թերությունների կոծկումը, իրականության գու-
նազարդումը, աչքակապությունը, ստորաքարշությունը, պատիճանապատվու-
թյունը, դոգմատիզմը, տիրացուականությունը և այլն։

Ամեն մի հասարակության մեջ գոյություն ունի որոշակի փոխհարաբե-
րություն ժողովրդական մասսաների, դասակարգերի, պարտիաների, նրանց
քաղաքական ղեկավարների միջև, որը պայմանավորված է օբյեկտիվ պատ-
ճառներով և հանդես է գալիս որպես պատմական օրինաչափություն։

Հասարակական կյանքի մարքսիստական մեկնաբանությունը միշտ ել-
նում է պատմության մեջ ինչպես ժողովրդական մասսաների, այնպես էլ դա-
սակարգերի, պարտիաների և առանձին քաղաքական առաջնորդների ունեցած
իրական դերից, նրանց փոխհարաբերությունից և միմյանց վրա ունեցած
փոխներգործությունից ու ազդեցությունից։ «Մարքսիզմը,—գրում է Լենինը,—
մյուս բոլոր սոցիալիստական թեորիաներից տարբերվում է նրանով, որ նա
իրերի օբյեկտիվ դրության և էվոլյուցիայի օբյեկտիվ ընթացքի վերլուծման
մեջ լիակատար գիտական լրջությունը երևելի կերպով միացնում է մասսա-
ների ռևոլյուցիոն եռանդի, ռևոլյուցիոն ստեղծագործության, ռևոլյուցիոն
ձեռներեցության նշանակության ամենավճռական ճանաչման հետ, ինչպես
նաև, իհարկե, այն առանձին անհատների, խմբերի, կազմակերպությունների,
պարտիաների նշանակության ճանաչման հետ, որոնք կարողանում են շոշա-
փել և իրացնել կապն այս կամ այն դասակարգի հետ» (Երկեր, հ. 13, էջ 29)։

Ժողովրդական մասսաների, դասակարգերի, պարտիաների և նրանց
առաջնորդների միջև եղած փոխհարաբերության բնույթը, նրանց գործողու-
թյունների բովանդակությունը, ձևերն ու մեթոդները պայմանավորվում են
տվյալ հասարակության արտադրողական ուժերի զարգացման աստիճանով,
արտադրական հարաբերությունների բնույթով, պատմական զարգացման
առանձնահատկություններով, դասակարգային պայքարի ձևերով ու սրու-
թյամբ։ Այդ իսկ պատճառով էլ ստրկատիրական, ֆեոդալական, կապիտա-



լիստական և սոցիալիստական հասարակարգերում նշված փոխհարաբերու-
թյունը ոչ միայն նույնը չէ, այլև արմատապես տարբեր է։

Անտագոնիստական դասակարգային հասարակարգերում, երբ հասա-
րակությունը պառակտված է թշնամի դասակարգերի և չկա բարոյաքաղա-
քական միասնություն հասարակության մասշտաբով, չի կարող ճիշտ և միա-
տեսակ նպաստավոր փոխհարաբերություն լինել ժողովրդական մասսաների,
դասակարգերի, պարտիաների և առանձին քաղաքական ղեկավարների միջև։

Իշխող, շահագործող դասակարգերը, որոնք կապիտալիստական երկրը-
ներում կազմում են ազգաբնակչության փոքրամասնությունը, իրենց ձեռքում
են կենտրոնացրել արտադրության ղեկավարությունը, պետական իշխանու-
թյունը այն ժամանակ, երբ ազգաբնակչության մեծամասնությունը՝ շա-
հագործվողները, զբաղվում են հիմնականում ծանր ֆիզիկական աշխատան-
քով։ Ժողովրդական մասսաների, դասակարգերի, պարտիաների և նրանց ղե-
կավարների միջև գոյություն ունեցող ներհակ փոխհարաբերությունն էլ ան-
տագոնիստական հասարակարգերում շատ անկայուն է և նույնիսկ նույն հա-
սարակության զարգացման տարբեր ժամանակաշրջաններում տարբեր բնույթ
է կրում և տարբեր ձևեր է ընդունում։ Ամեն անգամ, երբ նոր հասարակարգ
է առաջանում, պրոգրեսիվ դեր է խաղում այն դասակարգը, որը նոր արտա-
դրական հարաբերությունների կրողն է։ Բայց երբ այդ նույն արտադրական
հարաբերությունները հնանում են և իրենց դարն ապրում, և սկսում են արգե-
լակել արտադրողական ուժերի զարգացումը, փոխվում է նաև այդ դասա-
կարգի, պարտիայի դերը հասարակական կյանքում։ Այսպես, օրինակ, բուր-
ժուազիան որպես արտադրության միջոցների սեփականատեր, իշխող դասա-
կարգ իր զարգացման որոշակի շրջանում սկսում է հետադիմական տենդենց-
ներ դրսևորել, դառնում է ռեակցիոն դասակարգ։ Փոխվում է նաև ժողովրդա-
կան մասսաների, դասակարգերի, պարտիաների ու ղեկավարների նախկին
փոխհարաբերության ձևը, սակայն միաժամանակ չդադարելով ներհակ լինելուց։

Ժողովրդական մասսաների, դասակարգերի, պարտիաների և ղեկավար-
ների միջև եղած փոխհարաբերությունը մեծ նշանակություն ունի հասարա-
կական կյանքի ընդհանուր առաջընթացի համար։ Ամեն մի հասարակական
տնտեսական ֆորմացիա ունի իր հիմնական և ոչ հիմնական դասակարգերը,
իրենց որոշակի տեղով և դերով հասարակական արտադրության մեջ։

Մարքսի և Էնգելսի խոշոր հայտնագործություններից մեկն էլ պրոլե-
տարիատի համաշխարհային պատմական դերի ու նշանակության բացահայ-
տումն է։ Նրանք ցույց տվին, որ պրոլետարիատը զրկված լինելով արտա-
դրության միջոցներից, պայքարում ավելի համարձակ է ու հետևողական, նա
ամենառևոլյուցիոն դասակարգն է, որը ոչինչ չունի կորցնելու բացի իր շղ-
թաներից։ Կապիտալիզմի պայմաններում կան նաև մեծ քանակությամբ ոչ
պրոլետարական մասսաներ, գյուղացիներ, արհեստավորներ, որոնց միջև կա
որոշակի փոխհարաբերություն։ Չնայած պրոլետարիատն ամենառևոլյուցիոն
դասակարգն է, բայց նա չի կարող պայքարում անտեսել իր դաշնակիցներին։
Օրինակ, 1848 թվականին և 1871 թվականին պրոլետարիատի ռևոլյուցիոն
ելույթները Ֆրանսիայում հաջողություն չունեցան, որովհետև գյուղացիու-
թյունը ոչ միայն չպաշտպանեց պրոլետարիատին, այլև հանդես եկավ նրա
դեմ։ ԱՄՆ-ի Կոմպարտիայի մի շարք անդամներ որոշ ժամանակ այն կարծի-
քին էին, որ ԱՄՆ-ում գյուղացիական հարց չկա, քանի որ բոլոր ֆերմերներն

էլ փոքրիկ կապիտալիստներ են, ռեակցիոն էլեմենտներ։ Դրա հիման վրա էլ ֆերմերներին քիչ ուշադրություն էր դարձվում, նրանց շրջանում քաղաքական աշխատանք չէր տարվում։ Վերջին ժամանակներս ԱՄՆ-ի Կոմպարտիան դատապարտեց որոշ կոմունիստների նման հայացքները և ցույց տվեց, որ այդօրինակ վերաբերմունքը դեպի ֆերմերները սխալ է և վնասակար։

Դասակարգային պայքարը քաղաքական պարտիաների պայքարի ձև է ընդունում։ Քաղաքական պարտիաները միշտ արտահայտում են որոշ դասակարգի շահերը և ղեկավարում են նրանց պայքարը։ Պրոլետարիատի ռևոլյուցիոն պարտիան բոլորովին չի թաքցնում իր դասակարգային պատկանելությունը։ Ռեակցիոն պարտիաները, ընդհակառակն, խնամքով թաքցնում են իրենց դասակարգային էությունը։ Կապիտալիստական հասարակության մեջ բացի բացարձակ ռեակցիոն բուրժուական պարտիաներից կան նաև լիբերալ, քողարկված և նուրբ մեթոդներով գործող պարտիաներ, որոնց հիմնական նպատակն է մթագնել աշխատավոր մասսաների գիտակցությունը, շեղել նրանց ռևոլյուցիոն պայքարից և թուլացնել նրանց քաղաքական ակտիվությունը։ Այդպիսիներից են աջ սոցիալիստական պարտիաները, որոնք իմպերիալիզմի գլխավոր սոցիալական հենարանն են բանվորական շարժման մեջ։ Այդ իսկ պատճառով էլ ժողովրդական մասսաների, դասակարգերի, պարտիաների և ղեկավարների միջև եղած իրական փոխհարաբերությունը շատ դեպքերում արտահայտվում է խիստ քողարկված, խեղաթյուրված ձևով և միայն բացահայտվում ու դիմակազերծվում է փորձությունների ժամանակ։ Այդ առթիվ Վ. Ի. Լենինը գրել է. «Ամեն մի հասարակության բաժանումը քաղաքական պարտիաների՝ ամենից ավելի պարզորոշ երևան է գալիս ամբողջ երկիրը ցնցող խոր կրիզիսների ժամանակ։ Այն ժամանակ կառավարությունները ստիպված են լինում հենարան փնտրել հասարակության զանազան դասակարգերում. լուրջ պայքարը դեն է նետում ամեն տեսակ ֆրազները, այն ամենը, ինչ մանր է և խորթ. պարտիաները լարում են իրենց բոլոր ուժերը, դիմելով ժողովրդի մասսաներին, և մասսաները, առաջնորդվելով ճիշտ բնազդով, լուսավորված լինելով բացահայտ պայքարի փորձով, գնում են այն պարտիաների հետևից, որոնք արտահայտում են այս կամ այն դասակարգի շահերը» (Երկեր, հ. 18, էջ 39)։

Ժողովրդական մասսաների, դասակարգերի, պետության, պարտիաների և նրանց ղեկավարների փոխհարաբերությունը ժամանակակից կապիտալիստական երկրներում մի կողմից էլ պայմանավորված է կապիտալիզմի լագերում գտնվող երկրների իրար նկատմամբ ունեցած վերաբերմունքով։ Հակասությունները սրվում են ոչ միայն բուրժուազիայի ու բանվոր դասակարգի միջև, այլև մոնոպոլիստական բուրժուազիայի և ժողովրդի բոլոր խավերի միջև, մի կողմից ԱՄՆ-ի մոնոպոլիստական բուրժուազիայի և, մյուս կողմից, կապիտալիստական այլ երկրների ժողովուրդների ու նույնիսկ բուրժուազիայի միջև։ Անգլիայի, Ֆրանսիայի, Իտալիայի հակասալի հարաբերությունները միմյանց և ԱՄՆ-ի հետ, չեն կարող իրենց կնիքը չդնել այդ երկրների ներքին քաղաքականության և կյանքի վրա։ Ֆրանսիան, որը մի ժամանակ միջազգային հարաբերությունների բնագավառում հանդես էր գալիս որպես սուբյեկտ, ուներ իր ինքնուրույն ազգային քաղաքականությունը. երկրորդ համաշխարհային պատերազմից հետո գնալով նա ավելի շատ է կորցնում իր ազգային ինքնուրույնությունը, ենթարկվում ԱՄՆ-ի շահերին և



միջազգային հարաբերությունների բնագավառում հանդես է գալիս որպես օբյեկտ։ Մեր օրերում խրոնիկական բնույթ կրող կառավարական ճգնաժամերը Ֆրանսիայում և մյուս կապիտալիստական երկրներում հենց ժողովրդական մասսաների, դասակարգերի, պետության, պարտիաների և նրանց ղեկավարների հակասալի փոխհարաբերության արտահայտությունն են։

Սոցիալիստական հասարակարգում գոյություն ունի յուրահատուկ և ճիշտ փոխհարաբերություն ժողովրդական մասսաների, դասակարգերի, մարքսիստական տիպի պարտիայի և նրա քաղաքական ղեկավարների միջև։ Դա պայմանավորված է արտադրության սոցիալիստական եղանակով, անտագոնիստական դասակարգերի բացակայությամբ, շահագործումից ազատ սոցիալիստական արտադրական հարաբերություններով, հասարակության անդամների բարոյաքաղաքական միասնությամբ, հասարակական ու անձնական շահերի զուգակցման հնարավորությամբ, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի, քաղաքի և գյուղի միջև նախկինում եղած հակադրության լիկվիդացմամբ, հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժ հանդիսացող Կոմունիստական պարտիայի գոյությամբ։ Սոցիալիստական հասարակության մեջ կա շահերի ընդհանրություն ժողովրդական մասսաները ներկայացնող բանվոր դասակարգի, գյուղացիության, ինտելիգենցիայի, պետության, Կոմունիստական պարտիայի և նրանց ղեկավարների միջև։ Կոմունիստական պարտիան ժողովրդի գիտակից, ամենաառաջավոր և կազմակերպված ջոկատն է։ Սովետական պետությունը, Կոմունիստական պարտիան, նրա Կենտրոնական Կոմիտեն իրենց ամբողջ աշխատանքը կառուցում են հենվելով ժողովրդական մասսաների աշխատանքային ստեղծագործական նախաձեռնության և քաղաքական ակտիվության վրա, ղեկավարվելով կոլեկտիվ ղեկավարության լենինյան սկզբունքով։

Ժողովրդական մասսաների, դասակարգերի, պարտիաների և նրանց ղեկավարների նորմալ փոխհարաբերությունը սոցիալիզմի լագերի երկրներում պայմանավորված են նաև այդ երկրների սոցիալիստական մեծ համագործակցությամբ։ Այդ եղբայրական համագործակցության հիմքում ընկած է պետական և հասարակական կարգի սկզբունքների ընդհանրությունը, միասնական մարքսիստական գաղափարախոսությունը, պրոլետարական ինտերնացիոնալիզմը, սոցիալիստական շինարարության վեհ նպատակների միասնությունը, իրավահավասարությունն ու փոխօգնությունը, ազգային անկախության և ռևոլյուցիոն նվաճումների պաշտպանումը յուրաքանչյուր երկրում և սոցիալիզմի համաշխարհային բովանդակ սիստեմում, ժողովուրդների խաղաղության ու անվտանգության պաշտպանությունը։

Ժողովրդական մասսաների, դասակարգերի, պարտիաների և նրանց ղեկավարների ճիշտ փոխհարաբերությունը սոցիալիզմի լագերի երկրներում հիմնված է մի շարք ընդհանուր օրինաչափությունների վրա։ Դրանցից են՝ այս կամ այն ձևով պրոլետարական ռևոլյուցիայի իրականացման և այս կամ այն ձևով պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման գործում աշխատավոր զանգվածների ղեկավարումը բանվոր դասակարգի կողմից, որի առաջավոր և կազմակերպված ջոկատն է մարքս-լենինյան պարտիան. բանվոր դասակարգի դաշինքը գյուղացիության հիմնական զանգվածի և աշխատավորության մյուս խավերի հետ. արտադրության հիմնական միջոցների նկատմամբ կապիտալիստական սեփականության վերացումը և հանրային սեփականու-

*թյան հաստատումը. գյուղատնտեսության սատիճանական սոցիալիստական
վերափոխումը. ժողովրդական տնտեսության պլանաչափ զարգացումը, որն
ուղղված է սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման, աշխատավորների կեն-
սամակարդակի բարձրացման նպատակին. գաղափարախոսության ու կուլ-
տուրայի ասպարեզում սոցիալիստական ռևոլյուցիայի իրականացումը և սո-
ցիալիզմի գործին նվիրված նոր ինտելիգենցիայի ստեղծումը. ազգային
ճնշման վերացումը և ժողովուրդների միջև իրավահավասարության ու եղ-
բայրական բարեկամության հաստատումը. արտաքին ու ներքին թշնամիների
ոտնձգություններից սոցիալիզմի նվաճումների պաշտպանությունը. մյուս
երկրների բանվոր դասակարգի հետ տվյալ երկրի բանվոր դասակարգի հա-
մերաշխությունը՝ պրոլետարական ինտերնացիոնալիզմը։*

*Սոցիալիստական հասարակարգում ժողովրդական մասսաների, դասա-
կարգերի, պետության, պարտիայի և նրանց ղեկավարների միջև շահերի ներ-
դաշնակությունն ու նորմալ փոխհարաբերությունը նպաստավոր պայմաններ
են ստեղծում աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության աճի,
ժողովրդի մեջ եղած տաղանդների դրսևորման, ինչպես նաև Կոմունիստական
պարտիայի, Սովետական պետության ու նրանց ղեկավարների բեղմնավոր
գործունեության համար։ Այդ մասին են վկայում սոցիալիզմի լագերում գտ-
նվող երկրների ժողովուրդների աշխատանքային ակտիվությունն ու հերո-
սությունը, կոմունիստական և բանվորական պարտիաների ու նրանց ղեկա-
վարների բեղմնավոր ու արդյունավետ գործունեությունը կոմունիստական
շինարարության ասպարեզում։*

*Ժողովրդական մասսաների, դասակարգերի, Կոմունիստական պարտիայի
և նրա ղեկավարների միջև եղած ճիշտ և ներդաշնակ փոխհարաբերության
մասին է վկայում Սովետական Միությունում արդեն ստեղծված և սոցիալիզ-
մի լագերի մյուս երկրներում ստեղծվող բարոյա-քաղաքական միասնությու-
նը, որը հանդես է գալիս որպես նոր հասարակարգի հզոր շարժիչ ուժ։ Այդ
ճիշտ փոխհարաբերությունն իր կոնկրետ դրսևորումն է գտնում նաև ՍՍՌՄ
ժողովուրդների, ինչպես և ՍՍՌՄ ժողովուրդների և մյուս սոցիալիստական
երկրների ժողովուրդների բարեկամության մեջ, սովետական հայրենասիրու-
թյան մեջ, լայնորեն ծավալվող ու մասսաների մեջ արմատավորվող առողջ
ու գործարար ինքնաքննադատության ու քննադատության մեջ, սոցիալիստա-
կան մրցության մեջ, արտադրության և գիտության աշխատողների ստեղծա-
գործական համագործակցության մեջ։ Այդ ճիշտ փոխհարաբերությունը հան-
դիսանում է այն կարևոր պայմաններից մեկը, որ հնարավոր է դարձնում Կո-
մունիստական պարտիայի կողմից հասարակության զարգացման օբյեկտիվ
օրենքներն ու պատմական օրինաչափությունները գիտակցաբար օգտագործե-
լու, ժողովրդական տնտեսության, գիտության, կուլտուրայի ու քաղաքական
կյանքի բոլոր բնագավառներում առաջընթացը արագացնելու համար։ Այժմ,
երբ ԱՄՆ-ում գնալով ուժեղանում է ճգնաժամը, ուր օգտագործվում են ար-
տադրական կարողությունների 70 տոկոսը և կան 6 միլիոն լրիվ ու 3 միլիոն
մասնակի գործազուրկներ, սոցիալիստական երկրներում գործազրկությունը
վերացված է, արտադրությունն աճում է վերընթաց գծով։*

*Մարքսիզմ-լենինիզմը ուսուցանում է, իսկ Սովետական Միության, Չի-
նաստանի և սոցիալիզմի լագերի մյուս երկրների փորձը հաստատում է, որ
ժողովրդական մասսաները, դասակարգերը, պարտիաները և ղեկավարներն*



*իրենց միասնությամբ, միմյանց նկատմամբ ունեցած ճիշտ և նորմալ փոխ-
հարաբերություններով հսկայական հասարակական մի ուժ են, որը չտես-
նըված կերպով արագացնում է պատմության պրոգրեսիվ առաջընթացը։ Այդ
իսկ պատճառով էլ, երբ մարքսիստական-լենինյան տիպի պարտիան անց-
նում է իշխանության գլուխը, անհապաղ սկսում է հոգ տանել այն մասին,
որ ժողովրդական մասսաների, դասակարգերի, պարտիայի և ղեկավարների
միջև գոյություն ունենան ճիշտ և նորմալ փոխհարաբերություններ։ Այդ ճիշտ
փոխհարաբերությունների պահպանումն ու զարգացումը սոցիալիզմի լագերի
բոլոր երկրներում իրագործվում է մարքս-լենինյան տիպի պարտիաների
կողմից, որոնք այժմ իրենց շարքերում միավորում են միլիոնավոր կոմու-
նիստներ։*

*Մարքսիստական-լենինյան տիպի պարտիան իրագործում է իր ղեկավա-
րի, առաջնորդի դերը, որովհետև նա հանդիսանում է առաջավոր, ամենագի-
տակից, կազմակերպված ջոկատը, զինված հասարակության զարգացման
օրենքների գիտությամբ։ Նա ունի միասնական ծրագիր, ստրատեգիա, տակ-
տիկա, դիսցիպլինա, պահպանում է իր շարքերի միասնությունը։ Նա ամ-
րապնդում է կարգապահությունը պարտիայի շարքերում, անողոք պայքար է
մղում օպորտունիզմի դեմ, քննադատության և ինքնաքննադատության օգ-
նությամբ համարձակ կերպով բացահայտում և ուղղում է իր թերություններն
ու սխալները։ Մարքսիստական տիպի պարտիան միշտ հոգ է տանում, որ
անընդհատ ամրապնդի իր կապերը մասսաների հետ և իրագործի կոլեկտիվ
ղեկավարության լենինյան սկզբունքը։ Առանց մարքս-լենինյան պարտիայի
անհնարին է սոցիալիստական պետության գոյությունը, չի կարելի կազմա-
կերպել բանվոր դասակարգին որպես հասարակության ղեկավար ուժ, չի կա-
րելի ապահովել բանվոր դասակարգի և գյուղացիության անխախտ դաշինքը,
չի կարելի հաջողությամբ իրագործել կոմունիստական շինարարության խըն-
դիրները։*

*Ապացուցված է, որ աղանդավորությամբ տառապող և ժողովրդական
լայն զանգվածներից կտրված պարտիան ոչ մի դեպքում չի կարող հաղթա-
նակներ բերել բանվոր դասակարգի գործին։ Սովետական Միության Կոմու-
նիստական պարտիան չտեսնված հաջողություններ է ձեռք բերում, որովհետև
իր ղեկավար և ուղղություն տվող դերը իրագործելիս հենվում է ժողովրդի
ստեղծագործական ուժերի վրա, նրա անսպառ ստեղծարար հզորության վրա,
վայելում է ժողովրդական մասսաների անսահման սերը, վստահությունն ու
աջակցությունը։ Պարտիան միշտ ելնում է Վ. Ի. Լենինի հայտնի դրույթից.
«Միայն նա կհաղթի և իշխանությունն իր ձեռքում կպահի, ով հավատում է
ժողովրդին, ով սուզվում է ժողովրդական կենդանի ստեղծագործության աղ-
բյուրի մեջ»։ Սովետական ամբողջ ժողովրդի՝ Կոմունիստական պարտիայի
քաղաքականության միահամուռ պաշտպանությունը համոզիչ կերպով ցու-
ցադրվում է այն ջերմ հավանությամբ, որին արժանանում են Կոմունիստա-
կան պարտիայի և Սովետական կառավարության որոշումները։*

*Մարքսիզմի կլասիկները մշակեցին գիտական կոմունիզմի հիմունքները,
պարզաբանեցին և հիմնավորեցին բանվոր դասակարգի՝ որպես կոմունիս-
տական հասարակարգ կառուցողի համաշխարհային պատմական դերը և
դրանով իսկ հերքեցին բուրժուական, իդեալիստական այն սխալ տեսա-
կետները, թե պատմությունն իբր կերտում են ականավոր անհատները։ Մարք-*

սիզմ-լենինիզմը սովորեցնում է, որ ժողովուրդն է պատմության իսկական կերտողը, և որքան խոր ու լայնորեն են տեղի ունենում հասարակական վերափոխումները, այնքան մեծ թվով ժողովրդական մասսաներ են մասնակցում դրանց։ Սովետական Միության, Չինաստանի և սոցիալիստական մյուս երկրների փորձը ցույց է տալիս, որ ժողովրդական մասսաների, դասակարգերի, պարտիաների և նրանց ղեկավարների միջև գոյություն ունեցող ճիշտ փոխհարաբերությունը հասարակական կյանքի վերափոխումների և առաջընթացի հզոր գործոն է։

Վերջին տասնամյակների ընթացքում աշխարհում կատարված խոր և արմատական սոցիալական վերափոխությունները փայլուն կերպով վկայում են, պատմության մեջ ընդհանրապես, իսկ կոմունիստական հասարակության կառուցման գործում մասնավորապես, ժողովրդական մասսաների ունեցած վճռական դերի մասին։ Կոմունիստական և բանվորական պարտիաները կարողանում են հաջողությամբ լուծել իրենց առջև կանգնած համաշխարհային նշանակություն ունեցող ամենաբարդ խնդիրները, որովհետև հենվում են ժողովրդական մասսաների աշխատանքային ստեղծագործական ակտիվության և նախաձեռնության վրա ու ամեն կերպ աշխատում են ապահովել ճիշտ փոխհարաբերությունը ժողովրդական մասսաների, դասակարգերի, պարտիաների և նրանց ղեկավարների միջև։

---

# ՊԱՏԱՍԽԱՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ

## *ՀԱՐՑ*

*Երբ ՍՄԿՊ անդամը երաշխավորում է մի որևէ ընկերոջ պարտիայի շարքերը որպես թեկնածու կամ անդամ ընդունվելու համար, երաշխավորությունն առանց սկզբնական պարտիական կազմակերպության քարտուղարի ստորագրության օրինական չի համարվում։*

*Խնդրում ենք պատասխանել՝ սկզբնական կազմակերպության քարտուղարը երաշխավորող պարտանդամի ստորագրությո՞ւնն է հաստատում, թե՞ երաշխավորությունը։*

Հ. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ
Սիսիանի շրջսովետի գործկոմի սկզբնական
պարտիական կազմակերպության քարտուղար

## *ՊԱՏԱՍԽԱՆ*

*Համաձայն ՍՄԿՊ Կանոնադրության՝ պարտիայի մեջ ընդունվողները ներկայացնում են ոչ պակաս, քան երեք տարվա պարտիական ստաժ ունեցող և երաշխավորվողին ոչ պակաս, քան մեկ տարի համատեղ աշխատանքից ճանաչող պարտիայի երեք անդամի երաշխավորություն։ Կանոնադրության այս պահանջը նպատակ ունի ՍՄԿՊ մեջ ընդունելու իրոք առաջավոր, կոմունիզմի գործին նվիրված մարդկանց։*

*Երաշխավորողի ստորագրությունը հաստատում է պարտիական կազմակերպության քարտուղարը, որը պարտավոր է ստուգել, թե իրո՞ք երաշխավորողը պարտիայի մեջ ընդունվողին գիտի ոչ պակաս, քան մեկ տարվա համատեղ աշխատանքից, ունի՞ ՍՄԿՊ Կանոնադրությամբ սահմանված պարտստաժը, ճի՞շտ է նշված երաշխավորողի պարտտոմսի համարը։ Այլ կերպ ասած, պարտկազմակերպության քարտուղարը ստուգում է երաշխավորությունը, նրա համապատասխանությունը ՍՄԿՊ Կանոնադրության պահանջներին։ Այն դեպքում, երբ քարտուղարը գտնում է, որ երաշխավորությունը չի համապատասխանում կանոնադրական պահանջներին (օրինակ, եթե երաշխավորողը պարտիայի մեջ ընդունվողին չի ճանաչում համատեղ աշխատանքից կամ գիտի մի տարուց պակաս, չունի սահմանված պարտստաժ և այլն), նա չպետք է հաստատի նման երաշխավորությունը։ Իսկ երբ երաշխավորությունը տրված է կանոնադրության պահանջներին համապատասխան, պարտկազմակերպության քարտուղարը իրավունք չունի հրաժարվել երաշխավորողի ստորագրությունը հաստատելուց, եթե նույնիսկ կոմունիստի կողմից երաշխավորվողին տրված բնութագիրը չի համընկնում իր անձնական կարծիքին։ Քարտուղարը հնարավորություն ունի իր կարծիքն արտահայտելու բյուրոյում և ժողովում կամ հայտնելու այն կազմակերպությանը, որտեղ ներկայացվել է նրա հաստատած երաշխավորությունը։ Երաշխավորության համար պարտիական կազմակերպության առաջ պատասխանատու է ինքը՝ երաշխավորություն տվող կոմունիստը։*

*ՀԱՐՑ*

*Ալլինի շրջանի Շիրակավանի ջրանցքի աշխղեկը նշանակված է ՀՍՍՌ Ջրային տնտեսության մինիստրության Արթիկի հիդրոտեղամասի կողմից և աշխատավարձ է ստանում նրանցից։ Ընկերը բնակվում է Շիրակավան գյուղում, տեղի կոլտնտեսային ԼԿԵՄ կազմակերպության անդամ է։ ՀԼԿԵՄ Ալլինի շրջկոմը նրան երաշխավորել է ՍՄԿՊ անդամության թեկնածու ընդունվելու համար։ Գյուղում կան արտադրական և տերիտորիալ սկզբնական պարտիական կազմակերպություններ։ Խնդրում ենք պատասխանել, կարելի՞ է ընկերոջ դիմումը քննել և ո՞ր կազմակերպությունում։*

Գ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

Շիրակավան գյուղի տերիտորիալ սկզբնական
պարտիական կազմակերպության քարտուղար

*ՊԱՏԱՍԽԱՆ*

*Քանի որ Շիրակավանի ջրանցքի աշխղեկն իր աշխատանքով կապված է Արթիկի հիդրոտեղամասի հետ և նրանցից է աշխատավարձ ստանում և ոչ մի կապ չունի կոլտնտեսության հետ, ապա նրան ՍՄԿՊ շարքերն ընդունելու հարցը պետք է քննի Արթիկի հիդրոտեղամասի սկզբնական պարտիական կազմակերպությունը, որն ավելի լավ է ճանաչում նրան, քան մեկ ուրիշը։ Իսկ եթե Արթիկի հիդրոտեղամասում չկա սկզբնական պարտկազմակերպություն, ապա նպատակահարմար կլինի նրա հարցը քննել Շիրակավանի տերիտորիալ պարտիական կազմակերպությունում։*

*ՀԱՐՑ*

*Պարտիայի շարքերն ընդունվելու հարցը քննելու ի՞նչ կարգ գոյություն ունի այն սկզբնական պարտիական կազմակերպությունում, որտեղ կան պարտիական խմբեր բրիգադներում, ֆերմաներում և այլն։*

Ա. ԵՂԻԱԶԱՐՅԱՆ

Ախուրյանի շրջանի Հայկավան գյուղի կոլտնտեսության
սկզբնական պարտիական կազմակերպության քարտուղար

*ՊԱՏԱՍԽԱՆ*

*Համաձայն ՍՄԿՊ կանոնադրության, պարտիայի շարքերն ընդունվելու իրավունք ունեն միայն սկզբնական պարտիական կազմակերպությունները։ Եթե կոլտնտեսության պարտիական կազմակերպությունն ունի պարտիական խմբեր բրիգադներում և ֆերմաներում, այդ դեպքում ևս ընդունելության կարգը մնում է նույնը։ Պարտիական խումբն իրավունք չունի լուծելու պարտիայի մեջ ընդունելու, կոմունիստներին պարտիական տույժի ենթարկելու հարցերը։ Բայց նման հարցեր կարող է քննել և դրանց վերաբերյալ իր նկատառումները մտցնել բյուրո կամ ընդհանուր պարտիական ժողով։*

*ՀԱՐՑ*

*Խնդրում ենք պատասխանել. շրջսպառկոոպի պարտիական կազմակերպությունն ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ վերահսկողության իրավունք ունի՞, թե ոչ։*

Ս. ԵՂԻԱԶԱՐՅԱՆ

ՀԿՊ Ղուկասյանի շրջկոմի հրահանգիչ



*ՊԱՏԱՍԽԱՆ*

*ՍՄԿՊ Կանոնադրությունը առևտրական ձեռնարկությունների պարտիական կազմակերպություններին տալիս է ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկելու իրավունք։ Այդպիսի ձեռնարկությունների թվին են պատկանում՝ խանութները, ճաշարանները, ռեստորանները, թեյարանները, բուֆետները, առևտրական բազաները, արտադրական արհեստանոցները և այլն։ Այս ձեռնարկությունների պարտիական սկզբնական կազմակերպություններն իրավունք ունեն վերահսկելու ադմինիստրացիայի գործունեությունը։*

*Այլ բան է Շրջսպառկոոպի պարտիական կազմակերպությունը։ Շրջսպառկոոպը ոչ թե առևտրական ձեռնարկություն է, այլ հիմնարկ կամ կազմակերպություն, որը իրականացնում է ղեկավարությունն այն առևտրական ձեռնարկությունների ցանցի նկատմամբ, որոնք գտնվում են մի շրջանի կամ քաղաքի, իսկ երբեմն էլ մի քանի շրջանների տերիտորիայում։ Նրանց գործունեությանը վերահսկում և ուղղություն է տալիս պարտիայի համապատասխան շրջկոմը կամ քաղկոմը։ Ուստի նման պարտիական կազմակերպությունները ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկելու իրավունքից օգտվել չեն կարող։*

*ՀԱՐՑ*

*Խնդրում ենք պատասխանել. եթե դպրոցում չկա պարտիական կազմակերպություն, կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը կարո՞ղ է արդյոք դպրոցին վերաբերող այս կամ այն հարցը քննարկել բյուրոյի նիստերում կամ պարտիական ժողովներում։*

Ջ. ՆԱԶԱՐՅԱՆ

Եղեգնաձորի շրջանի Գետափ գյուղի սկզբնական
պարտիական կազմակերպության քարտուղար

*ՊԱՏԱՍԽԱՆ*

*Եթե գյուղի դպրոցում չկա պարտիական կազմակերպություն, ինքնըստինքյան հասկանալի է, որ կոլտնտեսային պարտիական կազմակերպությունը չի կարող անտարբեր լինել դպրոցական աշխատանքների նկատմամբ։*

*Կոլտնտեսային պարտիական կազմակերպությունը պետք է հատկապես զբաղվի պարտադիր ուսուցման կիրառման, ծնողական խորհրդի աշխատանքների բարելավման, դպրոցը վառելիքով, ուսուցիչներին բնակարաններով ապահովելու և այլ հարցերով, որոնք անհրաժեշտության դեպքում կարող են քննարկվել և լուծվել բյուրոյի նիստերում կամ պարտիական ժողովներում։ Իսկ ինչ վերաբերում է զուտ մանկավարժական հարցերին, ապա դրանք սովորաբար քննարկվում և լուծվում են մանկավարժական խորհրդի, առարկայական հանձնաժողովների նիստերում։ Սակայն դա չի նշանակում, որ կոլտնտեսային պարտիական կազմակերպությունը պետք է հեռու մնա այդ հարցերից։ Եթե դպրոցում կան այս առումով թերություններ և անհրաժեշտ է վերադաս օրգանների միջամտությունը, ապա պարտկազմակերպությունը պարտավոր է ժամանակին ահազանգելու պարտիայի շրջանային կոմիտե՝ համապատասխան միջոցառումներ ձեռնարկելու համար։*

# ԴԱՐՁՅԱԼ ԱՆՓՈՒԹՈՒԹՅՈՒՆ

Վերջերս Երևանի Պետհամալսարանի հրատարակչությունը լույս է ընծայել «Եգիպտոս» գրքույկը (հեղինակներ՝ Թ. Հ. Կարապետյան և Ե. Հ. Եղիազարյան, խմբագիր՝ Մ. Հ. Մկրտչյան), որի առթիվ ուզում ենք մի քանի խոսք ասել։

Անշուշտ, ողջունելի է հեղինակների նախաձեռնությունը՝ հայ ընթերցողին անհրաժեշտ համառոտ տեղեկություններ և գիտելիքներ հաղորդել Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայի Եգիպտական շրջանի աշխարհագրության, տնտեսության, պատմության և քաղաքական կյանքի իրադարձությունների մասին։ Բայց դժբախտաբար գրքույկն իր որակով չի բավարարում ընթերցողներին։ Նրանում տեղ են գտել բազմաթիվ սխալներ և անճշտություններ։ Ահա մի քանի փաստեր։

Քաղաքական տեսակետից անընդունելի և ճիշտ չէ հեղինակների այն պնդումը, թե Եգիպտոսը դարձել է «արաբական երկրների ժողովուրդների ազգային անկախության համար մղվող պայքարում տոն ու ղեկավարություն ցույց տվող երկիր», որ նա «այժմ Սիրիական ռեսպուբլիկայի հետ միասին վերածվել է մի կենտրոնական շտաբի, որը ղեկավարում է արաբական երկրների աշխատավոր ժողովուրդների պայքարը արևմտյան գաղութարարների դեմ» (էջ 24, ընդգծումները մերն են. Վ. Հ.)։

Մեր կարծիքով, այսպես դնելով հարցը, հեղինակները դժբախտաբար թույլ են տալիս քաղաքական սխալ։ Չէ որ արևմտյան պետությունների ղեկավարները նմանապես Միացյալ Արաբական Ռեսպուբլիկային մեղադրում էին արաբական մյուս երկրների նկատմամբ «անուղղակի ագրեսիայի», նրանց ներքին գործերին միջամտելու մեջ։

Պետք է ասել, որ գրքույկում անհաջող են լուսաբանված եգիպտական ժողովրդի հակաանգլիական, հակաիմպերիալիստական ազգային-ազատագրական պայքարի հիմնական էտապները։

Հեղինակներին չի հաջողվել պարզ և հստակ պատկերացում տալ 1952 թվականի հուլիսի 23-ի ռևոլյուցիոն հեղաշրջման և նրան հետևած իրադարձությունների ու Եգիպտոսի ռեսպուբլիկական կառավարության ձեռնարկած միջոցառումների էության մասին։ Գրքույկում պատահական են և չսիստեմավորված երկրի էկոնոմիկայի պետական-կապիտալիստական սեկտորի ստեղծման և ամրապնդման ուղղությամբ կառավարության ձեռնարկած քայլերի վերաբերյալ բերված փաստերը։

Գրքույկում չեն բացահայտված ագրարային ռեֆորմի յուրահատկությունները։ 1952 թվականի սեպտեմբերի 9-ի օրենքը ոչ թե «հողի և հողն արենդով տալու եղանակն արգելելու» մասին էր, ինչպես գրում են հեղինակները (էջ 28), այլ հողատիրության սահմանափակման և հողի վարձակալման հարաբերությունները կարգավորելու մասին։

29-րդ էջի վերևում մենք կարդում ենք այն մասին, որ «պետությունը սիստեմատիկաբար վարկավորում է աշխատավոր գյուղացիներին, նրանց տալիս է գյուղատնտեսական գործիքներ, սերմացու, պարարտանյութ, լծկան անասուններ և այլն», իսկ մի քիչ ներքև՝ «Եգիպտոսի կառավարությունը որպես բուրժուական կառավարություն, պաշտպանում է ազգային բուրժուազիայի շահերը...»։ Պարզ է, որ ուսանողը, շարքային ընթերցողը չեն կարող հստակ պատկերացում կազմել աշխատավոր գյուղացու և ազգային բուրժուազիայի շահերի համակցման մասին հեղինակների գրածից։

Այնուհետև, 16-րդ էջում հեղինակների շարադրանքից ստացվում է, որ 1922 թվականին Անգլիան Եգիպտոսին իսկապես անկախություն ընձեռեց։ Նրանք չպետք է մոռանային, որ այդ անկախությունը ֆիկցիա էր և պետք է դա հատկապես ընդգծեին։

Հայտնի է, որ ընդհանուր առմամբ Սուեզի ջրանցքի կառուցման վրա ծախսվել է ընդամենը 400 միլիոն ֆրանկ, իսկ հեղինակներն այդ գումարը վերագրել են այլ բանի։ Այսպես, 41-րդ էջում սևով սպիտակի վրա տպված է. «Եգիպտական խեդիվ Իսմայիլ փաշայի պահանջով ու պատվերով կոմպոզիտոր Վերդին գրեց «Աիդա» օպերան, որը հայտնի է ամբողջ աշխարհին։ Այդ օպերան գրելու և ներկայում բեմադրելու բոլոր ծախսերը Եգիպտոսի վրա նստեց 400 միլիոն ֆրանկ, որի ծանրության տակ երկար տարիներ շարունակ տնքում էր Եգիպտոսի աշխատավորությունը»։ Սա կուրյոզ է։

Նույն էջում մենք կարդում ենք, որ «Եգիպտական կառավարությունը պարտավորվեց Սուեզի ջրանցքի կառուցման ընկերությանը վճարել 40 միլիոն ֆրանկ հողի՝անկայունության (?) համար»։ Բոլորովին անհասկանալի է, թե հողի ի՞նչ «անկայունության» մասին է խոսքը։ Բանն այն է, որ հեղինակները այդ միտքը աղավաղված ձևով ընթերցողին են հրամցրել Ի. Ա. Դեմենտևի «Սուեզի ջրանցք» գրքույկից, որտեղ ասված է, որ եգիպտական կառավարությունը Սուեզի ջրանցքի ընկերությանը պետք է «30 միլիոն ֆրանկ «տուժանք» վճարեր այն հողերի համար, որոնք ընկերությունը բռնագրավել էր և իբր վերադարձրել Եգիպտոսին» (էջ 11)։ Ռուսական «неустойка» տերմինը հեղինակները սխալմամբ թարգմանել են «անկայունություն» և խեղաթյուրել են ամբողջ իմաստը։

Գրքույկում կարդում ենք, որ Եգիպտոսը «արևմուտքից սահմանակից է Իտալիայի նախկին թագավորական գաղութ Լիբիային» (էջ 3)։ Մի՞թե մեր հարգելի աշխարհագրագետներին հայտնի չէ, որ Լիբիան դեռ 1951 թվականին դարձել է անկախ, 1955 թվականից հանդիսանում է ՄԱԿ-ի անդամ և սուվերեն երկիր է, կոնստիտուցիոն միապետություն։ Այս տեսակետից կարիք կա՞ խոսել հին փաստերի լեզվով։

Եգիպտոսի առափնյա գծի երկարությունը հավասար է 2700 կիլոմետրի։ Բայց այս թիվը գրքույկում վերագրված է ընդհանրապես երկրի սահմանագծի երկարությանը (էջ 3)։ Սուեզի ջրանցքի երկարությունը ոչ թե 166 կիլոմետր է (էջ 37), այլ 161 կիլոմետր։ Հեղինակների ֆանտազիայի արդյունք է նաև այն, որ իբր Սուեզի ջրանցքի կառուցման ընթացքում մահացել է ավելի քան 120 հազար մարդ (էջ 39), այնինչ պետք է լինի 20 հազար մարդ։ Ֆեդդանը հողի չափ է և ոչ թե միավոր, ինչպես գրված է 27-րդ էջում։ Գրքույկում աղավաղված են մի շարք աշխարհագրական անուններ, օրինակ, Ռոզետա-ն դարձել է Ռոզետ, Դամիետա-ն՝ Դամիետ, Մուտը՝ Միտ և այլն։

Այնուհետև, 22-րդ էջի շարադրանքից չի հասկացվում, որ Դուբբատ-ալ-Ախրարը կազմակերպություն է («ադ-Դուբբատ-ալ-ախրար»—«Ազատասեր սպաներ» կազմակերպության ղեկավարությամբ կատարվեց 1952 թվականի հուլիսի 23-ի հեղաշրջումը Եգիպտոսում), այլ նույնիսկ թվում է թե դա անձնավորություն է։ Զգիտես թե ինչո՞ւ Միավորված Ազգերի Կազմակերպության Անվտանգության խորհուրդը գրքույկում դարձել է Անվտանգության Կոմիտե (էջ 18—19)։ 23-րդ էջում գրված է. «Բրիտանական իմպերիայի նախկին շտաբի պետ Սելիմը(?)»... Պետք է լինի «Բրիտանական կայսրության զինված ուժերի շտաբի նախկին պետ...»։

Եգիպտական կոմպարտիան հիմնադրվել է ոչ թե 1920 թվականին, ինչպես գրված է գրքույկում (էջ 15), այլ 1921 թվականին։

Գրքույկում կան լեզվական ու ոճական շատ անհարթություններ և սխալներ։ Այսպես, օրինակ. «...արձակվեց անգլո-ֆրանսիական իմպերիալիստների ձեռքերը» (էջ 39), «...գյուղացիական ընտանիքներ դառնում էին նողային սարուկներ...» (էջ 27), «Հակաիմպերիալիստական պայքարի են դուրս գալիս եգիպտական ժողովուրդը» (էջ 16), «1798 թվականին Եգիպտոսը նվաճելու փորձ է կատարում Ֆրանսիան։ Այդ նպատակով նրանք...» (էջ 11), «նրանք ցանկացան հարկադրանքի և տնտեսական տեռորի միջոցով հասնել այն բանին, ինչին նրանք կարողացան հասնել պրովոկացիոն պատերազմի և ռմբակոծությունների միջոցով» (էջ 50) և այլն։

Նշված սխալներն ու անճշտությունները պատիվ չեն բերում ինչպես գրքույկի հեղինակներին, այնպես էլ Պետական համալսարանի խմբագրական-հրատարակչական խորհրդին, որի հրատարակած գիտա-հանրամատչելի գրքույկները պետք է ոչ միայն զերծ լինեն նման թերություններից, այլև օրինակ ծառայեն մյուս հրատարակչությունների համար։

Վ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

## ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔԸ ՇՐՋԱՆԱՅԻՆ ԹԵՐԹԵՐՈՒՄ

«Հարգելի ընկեր. պարտկազմակերպությունների անցած հաշվետու-ընտրական ժողովներում և շրջանային պարտկոնֆերանսում խմբագրության հասցեին արված քննադատական դիտողություններն ու առաջարկությունները կենսագործելու նպատակով թերթը իր էջերում լայն տեղ է տալու պարտիական կյանքի հարցերին։ Խնդրվում է հայտնել, թե ի՞նչ հարցեր են ձեզ առանձնապես հուզում, պարտիական շինարարության ո՞ր բնագավառի վերաբերյալ հատկապես կուզենայիք, որ պարբերաբար նյութեր զետեղվեին թերթում»։

Արթիկի շրջանի սկզբնական պարտկազմակերպությունների քարտուղարները և շարքային շատ կոմունիստներ ստանալով շրջանային «Լենինագործ» թերթի խմբագրության այս նամակը, իրենց պատասխաններում բազմաթիվ հետաքրքիր հարցեր առաջ քաշեցին, արժեքավոր շատ խորհուրդներ տվեցին խմբագրությանը։

Այստեղ պրակտիկա է դարձել, երբ պարտիական կյանքի այս կամ այն հարցը լուսաբանելու նպատակով խմբագրությունը պարբերաբար դիմում է պարտիական ակտիվի, կոմունիստների օգնությանը, կարծիք հարցնում նրանցից։ Բացի նամակագրական կապից, թերթի աշխատողները մշտապես շփման մեջ են սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարների, կոմունիստների և ակտիվի հետ, խորհրդակցում և ունկնդրում են նրանց ձայնին։ Այդ գործին մեծապես նպաստում են նաև բանգյուղթղթակցային շրջանային ու ենթաշրջանային խորհրդակցությունները։ Պարտիական շինարարության հարցերը թերթում ավելի լավ լուսաբանելու նպատակով վերջերս հրավիրվեց պարտշրջկոմի ապարատի և խմբագրության աշխատողների համատեղ խորհրդակցություն։

Այս և նման այլ միջոցառումներ խմբագրությանը հնարավորություն են տալիս սերտ կապ պահպանել պարտիական լայն մասսաների հետ և նրանց վրա հենվելով, խորհրդակցելով նրանց հետ, թերթի էջերում ավելի խոր ու բազմակողմանիորեն լուսաբանել շրջանի պարտկազմակերպությունների բեղուն կյանքը։

Վերջին շրջանում «Լենինագործ»-ում ավելի հաճախ է երևում «Պարտիական կյանք» վերտառությամբ, ընդլայնվել է պարտիական շինարարության տարբեր բնագավառներին վերաբերող հարցերի շրջանակը։ Թերթում կարելի է պարբերաբար հանդիպել պարտիական ղեկավար աշխատողների, շարքային կոմունիստների հոդվածների ու թղթակցությունների, որոնցում նրանք պատմում են պարտիայի և կառավարության կողմից կոլտնտեսային գյուղի առջև դրված խնդիրների կենսագործման ընթացքի մասին, հաղորդում են պարտիական աշխատանքի դրական փորձը, մտքեր փոխանակում՝ գործը լավ կազմակերպելու, թերությունները արագորեն վերացնելու համար։ Առանձնապես լայն տեղ է տրվում տնտեսության պարտիական ղեկավարման հարցերին, հարցեր, որոնք բխում են ներկա էտապում արդյունաբերության և գյուղատնտեսության ղեկավարման ձևերն ու մեթոդները կատարելագործելու, այն ավելի կենդանի, գործիմաց և օպերատիվ դարձնելու մասին պարտիայի դիրեկտիվներից։

Հայտնի է, որ Արթիկի շրջանի համար կենսական նշանակություն ունի մեքենահարմար տարածությունների ընդարձակումը։ Պարտիայի շրջանային կոմիտեի պլենումի որոշմամբ շրջանի կոլտնտեսությունները, սկզբնական պարտիական կազմակերպություններն այդ գործին ձեռնամուխ եղան դեռևս անցյալ տարվա աշնանից՝ նպատակ ունենալով մինչև 1960 թվականը մեքենահարմար դարձնել ավելի քան 13 հազար հեկտար տարածություն։ Այդ գործին ակտիվ մասնակցություն է ցուցաբերում նաև շրջանային թերթը։ Նա իր էջերում սիստեմատիկաբար անդրադառնում է այդ հարցին, ցույց է տալիս, թե գյուղական սկզբնական պարտիական կազմակերպությունները ինչպես են գործի վերածում պլենումի որոշումը, կազմակերպում ու գլխավորում աշխատավորների ուժերը՝ ընդարձակելու մեքենահարմար հողային տարածությունները։ Եթե կարճ ժամկետում Արթիկի շրջանի կոլտնտեսականները արդեն 4432 հեկտար մշակելի հողատարածություն մաքրել են քարերից, վերացրել միջնակները, ապա դրանում անվիճելիորեն իր լուման ունի նաև թերթը։

Թերթում ընթերցողը նյութեր կգտնի տնտեսության պարտիական ղեկավարման հարցերի մասին։ Օրինակ, վատ չէ «Ուժեղացնել տնտեսության նկատմամբ պարտիական ղեկավարությունը» վերնագրով հոդվածը, ուր վերլուծության է ենթարկված Սպանդարյան գյուղի կոլտնտեսության սկզբնական պարտկազմակերպության գործունեությունը։ Աշխատավորության շրջանում տարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքի, կոմունիստների քաղաքական ուսուցման, դասախոսական պրոպագանդայի հարցերի լուսաբանման հետ մեկտեղ թերթը մեծ ուշադրություն է դարձնում պարտիական շինարարության մյուս հարցերին։ Ուշագրավ է ՀԿՊ Արթիկի շրջկոմի քարտուղար Հ. Իկիլիկյանի «Կոմունիստներին դաստիարակել բարձր սկզբունքայնության ոգով» հոդվածը։ «Լենինագործ»-ում տպագրվել են թեմատիկ առումով մի շարք հետաքրքիր նյութեր, ինչպիսիք են՝ «Պարտբյուրոյի քարտուղարը», «Կոմունիստի անձնական օրինակը», «Գլխավորը կատարման ստուգումն է», «Երբ խնամքով է նախապատրաստվում պարտիական ժողովը», «Դպրոցական պարտկազմակերպությունը», «Ագիտացիոն աշխատանքի պլանը գործողության մեջ», «Ճիշտ վարել պարտիական տնտեսությունը» և այլն։ Հոդվածներ են տպագրված լավագույն կոմունիստների աշխատանքային գործունեության, պարտիական շարքերի աճման հարցերի մասին։

Արթիկի շրջանային թերթի գործունեության դրվատումը երբեք էլ չի նշանակում, որ այստեղ ամեն ինչ բարեհաջող է, լավ։ Ամենաէական թերությունը՝ դա պարտիական կյանքին վերաբերող որոշ նյութերի մակերեսայնությունն է, պարտիական աշխատանքի մեթոդների ու եղանակների դեռևս անբավարար ցուցադրումը։

Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները բեղմնավոր աշխատանք են կատարում ՍՄԿՊ XX համագումարի որոշումների կենսագործման համար։ Եվ այդ գործում նրանց մշտական օգնություն պետք է ցույց տա մամուլը։ Թերթը քաղաքական օրգան է, նրանում պետք է մշտապես զգացվի հասարակական-քաղաքական կյանքի զարկերակը։ Եվ քանի որ մեր պարտիան կառավարող պարտիա է, ուստի հասարակական կյանքում էլ պարտկազմակերպությունների գործունեությունը ամենալայն տեղն է գրավում։ Պարտկազմակերպությունների այդ գործունեությունը վառ, հետաքրքիր, լայնորեն լուսաբանելը թերթերի առաջնահերթ պարտականությունն է։

Դժբախտաբար, քաղաքային ու շրջանային որոշ թերթերում պարտիական կյանքին պատշաճ տեղ չի տրվում, իսկ տպագրվող նյութերն էլ հաճախ խիստ գորշ են, նրանցում ուսանելի քիչ բան կա։

Հայտնի է, որ ներկա էտապում գյուղական պարտկազմակերպությունների առջև դրված գլխավոր խնդիրներից մեկը՝ անասնաբուծական մթերքների արտադրության վճռական ավելացումն է։ Մեզ մոտ առանձնակի սրությամբ է դրվում նաև այգեգործությունն ամեն կերպ զարգացնելու, նրա եկամտաբերությունը ավելացնելու հարցը։ Պարտիական կազմակերպությունների ջանքերը ներկայումս ուղղված են այդ հրատապ խնդիրների լուծման համար աշխատավորների ուժերը մոբիլիզացնելու նպատակին։

Ինչպե՞ս է լուսաբանում ՀԿՊ Մեղրու շրջկոմի և շրջսովետի գործկոմի օրգան «Կոլտնտեսային գյուղ» թերթը շրջանի պարտկազմակերպությունների գործունեության այդ կողմը, ինչպե՞ս է նա օգնում նրանց՝ կատարելագործելու տնտեսության պարտիական ղեկավարման ձևերն ու մեթոդները, ապահովելու իրենց առջև դրված խնդիրների հաջող իրագործումը։

Եթե նկատի չունենանք ՀԿՊ շրջկոմի քարտուղար Ա. Սարգսյանի «Անթերի կատարենք սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները» հոդվածը, ապա «Կոլտնտեսային գյուղ»-ի անցած ամիսների համարներում չենք հանդիպում պարտկազմակերպությունների կողմից տնտեսության ղեկավարման ձևերն ու մեթոդները լուսաբանող, փաստերի վերլուծման և փորձի ընդհանրացման վրա կառուցված որևէ այլ հոդվածի։ Անցած ժամանակամիջոցում թերթը ոչ մի նյութ չի զետեղել պարտիական աշխատանքի փորձի վերաբերյալ։ Իսկ շրջանում այս տեսակետից դրական փորձ ունեցող քիչ պարտկազմակերպություններ չկան։ Բավական է վկայակոչել հենց իրեն՝ թերթին, որի համարներից մեկում զետեղվել էր մի ինֆորմացիա սկզբնական պարտկազմակերպությունների քարտուղարների հերթական սեմինար պարապմունքի մասին։ Դրանից իմանում ենք, որ սեմինարում «Ինչպես ենք ապահովում վերահսկողության ֆունկցիան կոլտնտեսության վարչության գործունեության նկատմամբ» թեմայով հանդես է եկել Ստալինի անվան կոլտնտեսության պարտկազմակերպության բյուրոյի քարտուղարը. կատարման ստուգման և կոմունիստների քննադատական դիտողությունների ու առաջարկությունների իրագործման իրենց փորձի մասին սեմինար պարապմունքում պատմել է Կարճևանի կոլտնտեսության պարտկազմակերպության քարտուղարը. Ագարակի կոմբինատի պարտկազմակերպության քարտուղարը հաղորդել է սոցիալիստական մրցության կազմակերպման ու ղեկավարման իրենց փորձը, իսկ Շվանիձորի կոլտնտեսության սկզբնական պարտկազմակերպության քարտուղարը զեկուցել է կոլտնտեսականների շրջանում կատարվող քաղաքական-մասսայական աշխատանքի մասին։

Բայց չէ՞ որ խմբագրությունը կարող էր այդ կազմակերպությունների աշխատանքը հանգա-

մանորեն լուսաբանել թերթում, և դա շատ օգտակար կլիներ։ Իհարկե, սեմինար պարապմունքի մասին ինֆորմացիա գրելը շատ ավելի հեշտ է, քան մի պարտկազմակերպության փորձը վերարտադրող հոդվածի նախապատրաստումը։ Ցավն էլ նրանումն է, որ խմբագրությունը հենց այդ հեշտ ճանապարհով է գնում։

Թերթը հաճախ բավարարվում է միայն պարտիական աշխատանքը բարելավելու մասին կոչ անելով, վաղուց հանրահայտ ձևակերպումները շարադրելով, առանց հաշվի առնելու, որ այդ ընդհանուր խոսքերից պարտիական կազմակերպությունները շատ քիչ բան կարող են ընկալել իրենց ամենօրյա գործունեության համար։ Այդպիսի ընդհանուր բնույթ ունի, օրինակ, Ս. Թևանյանի «Բարձրացնել սկզբնական պարտկազմակերպությունների մարտունակությունը» վերնագրով հոդվածը։ Այստեղ հեղինակը վերարտադրում է այն հանրահայտ ճշմարտությունը, որ պարտկազմակերպությունները կարող են իրենց առջև դրված խնդիրները հաջողությամբ լուծել, եթե «կատարելագործեն իրենց աշխատանքի մեթոդները, ուժեղացնեն պարտիական քաղաքական ու կազմակերպական աշխատանքը մասսաների մեջ, անընդհատ բարձրացնեն կոմունիստների ակտիվությունն ու ձեռներեցությունը և նրանց մարտունակությունը»։

Այդ դիրեկտիվ թեզին ծանոթ են և՛ պարտկազմակերպությունների քարտուղարները, և՛ կոմունիստները։ Նրանք հոդվածից սպասում էին ոչ միայն այդ թեզի կրկնությունը, այլ դրա վերլուծությունը, պրակտիկայում դրա կենսագործման մեթոդների և ուղիների շարադրումը։ Այդ ընդարձակ հոդվածը, որը, ի դեպ գրավում է թերթի երեք սյունակը, պատասխան չի տալիս մեր ակտիվին այդքան հուզող հարցերին։

«Կոլտնտեսային գյուղի» էջերում ընդհանրապես քիչ ենք հանդիպում պարտկազմակերպությունների քաղաքական-մասսայական աշխատանքը լուսաբանող նյութերի։ Երևում է, որ թերթն էլ, որոշ պարտկազմակերպությունների նման, քաղաքական ագիտացիան դիտում է իբրև կամպանիոն բնույթի միջոցառում։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների նախապատրաստման օրերին թերթը հաճախ է տպագրել ագիտատորների զրույցներ, նյութեր լավագույն ագիտատորների մասին, քննադատել է այն պարտկազմակերպություններին ու ագիտատորներին, որոնք թերանում են այդ աշխատանքում։ Բայց ընտրություններից հետո թերթը ընդամենը մեկ-երկու անգամ է անդրադարձել պարտիական աշխատանքի այդ կարևոր բնագավառին։

«Էջմիածնի կոլտնտեսական» թերթը իր էջերում սիստեմատիկաբար ու հետևողականորեն է անդրադառնում բնակչության շրջանում տարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքի, հակակրոնական պրոպագանդայի, կոմունիստների քաղաքական ուսուցման հարցերին։ Սակայն այդ բանը չի կարելի ասել տնտեսության պարտիական ղեկավարման ու ներպարտիական կյանքի շատ հարցերի լուսաբանման մասին։

Հայտնի է, որ նոր խնդիրների համապատասխան վերակազմվել են որոշ ՄՏ կայաններ, կառուցվածքային որոշ փոփոխումների են ենթարկվել պարտիայի գյուղական շրջկոմները։ Նոր պայմանները պարտկազմակերպությունների առջև նոր խնդիրներ են դնում, որոնք պետք է իրենց արտացոլումը գտնեն թերթում։ Ճիշտ է, թերթի էջերում պատեհ առ պատեհ հանդիպում ենք «պարտիական կյանք» վերտառությանը, որի տակ, պետք է ասել, երբեմն հաջողված նյութեր են զետեղվում։ Այդպիսիք են, օրինակ, Լենինի անվան կոլտնտեսության կազմակերպության քարտուղար Ն. Փոթեյանի «Պարտիական խմբերը և արտադրության հարցերը», պարտիական ժողովների մասին պարտշրջկոմի հրահանգիչ Ա. Առաքելյանի հոդվածները և այլն։ Թերթը անդրադարձել է կոլտնտեսություն եկած մեխանիզատորների հետ կատարվող պարտիական աշխատանքին։ Բայց միշտ չէ, որ հաջող ընտրված թեմաները ամբողջ խորությամբ են բարձրացվում, դրա հետևանքով էլ լրագրային նյութը կորցնում է նպատակասլացությունն ու ներգործունությունը։

Շատ նյութերում պարտկազմակերպությունների կենդանի աշխատանքը ինչպես հարկն է չի բացահայտվում, չի տրվում պարտիական աշխատանքի դրական փորձը։ Երբ խոսքը վերաբերում է փորձին, ապա կարևոր է ամենից առաջ բացահայտել բուն աշխատանքի բովանդակությունը, համոզիչ օրինակներով ցույց տալ, թե աշխատանքի կոնկրետ ինչպիսի ձևեր ու մեթոդներ է կիրառում պարտկազմակերպությունն իր ընդունած որոշումը, մշակած միջոցառումները իրագործելու համար։ Թղթակցությունը կամ հոդվածը ընթերցողին պետք է համոզեն, թե պարտկազմակերպությունը ինչո՞ւ տվյալ դեպքում անհրաժեշտ գտավ իրագործելու այսպիսի, իսկ մեկ ուրիշ դեպքում՝ այնպիսի միջոցառումներ, ի՞նչ նկատառումներից ելնելով է, որ կոմունիստները ընդունեցին տվյալ որոշումը։ Ցավոք սրտի թերթն այդպես չի վարվում։ Նա մեծ մասամբ բավարարվում է միայն ձեռք բերած արդյունքների թվարկմամբ, ցույց չի տալիս թե դրանք ինչ ճանապարհով են ձեռք բերվել, որը շատ կարևոր է, ուսանելի։

Ահա մեկ օրինակ։ Թերթը տպագրել է Արևաշատ գյուղի կոլտնտեսության պարտկազմակերպության քարտուղար Վ. Ղազարյանի՝ «Մեխանիզատորների արդյունավետ աշխատանքի համար» վերնագրով հոդվածը։ Ինչ խոսք, որ



բարձրացված հարցը հրատապ է, կարևոր։ Սակայն հոդվածը խիստ ընդհանուր է, կրում է ինֆորմացիոն բնույթ, բերված օրինակը քիչ համոզեցուցիչ է։ Այսպես, օրինակ, հեղինակը գրում է, որ բամբակի ցանքի նախօրյակին պարտկազմակերպության բյուրոն լսեց տրակտորիստ Ա. Արզումանյանի հաշվետվությունը այն մասին, թե ինչպես է պատրաստել իր մեքենան առաջիկա աշխատանքներին։ «Ինչպես նա,— գրում է Վ. Ղազարյանը,— այնպես էլ բյուրոյի անդամները նկարագրեցին գործերի վիճակը, վեր հանեցին եղած թերությունները, հանդես եկան իրենց դիտողություններով և առաջարկներով։ Բյուրոն ընդունեց որոշում, որը կենսագործելու համար կոմունիստները լայն պայքար ծավալեցին»։

Հետաքրքիր էր, օրինակ, ցույց տալ, թե կոմունիստները ինչի՞ մասին խոսեցին, ինչ դիտողություններ ու առաջարկություններ արեցին, բյուրոն ի՞նչ որոշում ընդունեց, նրանում կոնկրետ ինչ միջոցառումներ են նշված։ Եվ, վերջապես, կարևոր էր կոնկրետացնել, առարկայացնել ընդհանուր դրույթները, տվյալ դեպքում՝ պարզաբանել, թե կոմունիստները ինչպես կենսագործեցին պարտբյուրոյի որոշումը։ Սրանք հարցեր են, որոնք պետք է խորապես պարզաբանվեին հոդվածում։ Բայց հեղինակը շրջանցում է դրանք և շտապում է հայտնել, որ «այդ բոլորը տվեց իր դրական արդյունքները»։

Հեղինակը խուսափում է մանրակրկիտ նկարագրությունից, աշխատանքի դետալները տալուց, մինչդեռ հենց այդ միջոցով է, որ հնարավոր է բացահայտել պարտիական աշխատանքի փորձը։ Այս և մի շարք այլ հոդվածներում պարտիական աշխատանքը նկարագրվում է մոտավորապես այսպես. պարտիական ժողովը կամ պարտբյուրոն այս կամ այն հարցի վերաբերյալ ընդունում է որոշում, մշակում է միջոցառումներ, և դա բավական է, որ ասես մոգական գավազանի ուժով, միանգամից փոխվի դրությունը։

Բայց չէ՞ որ կյանքում ամեն ինչ հարթ ու խաղաղ չի ընթանում, չէ՞ որ պրակտիկ աշխատանքում կոմունիստները, կոլտնտեսականներն ու մեխանիզատորները մեծ ու փոքր շատ դժվարությունների են հանդիպում։ Այդ մարդկանցից յուրաքանչյուրը իրեն բնորոշ ձևով է գնահատում իրադրությունը, տարբեր կերպ է մոտենում թերությանը և ուրույն ձևով է այն հաղթահարում։ Եվ եթե ասում ենք, որ պարտիական աշխատանքը ամենից առաջ աշխատանք է մարդկանց հետ, ապա դա նշանակում է, որ պարտիական կազմակերպությունը ներգործում է մարդկանց վրա, ոմանց պաշտպանում, մյուսներին քննադատում, մարդկանց սովորեցնում ու դաստիարակում։

Էջմիածնի շրջանում կան մի քանի սովետական տնտեսություններ, արտադրական մի շարք ձեռնարկություններ և գիտա-հետազոտական հիմնարկներ։ Սակայն այդ պարտիական կազմակերպությունների աշխատանքը, կոմունիստների գործունեությունը չի երևում թերթի էջերում։ Խմբագրությունը թերթի էջերում պետք է արտացոլի շրջանի էկոնոմիկայի և կուլտուրական կյանքի բոլոր բնագավառների պարտկազմակերպությունների գործունեությունը, ուսումնասիրի և ընդհանրացնի նրանց դրական աշխատանքը, քննադատի թերությունները, օգնի պարտիական աշխատանքի մակարդակը բարձրացնելու համար։

Թերթը առհասարակ քիչ է քննադատական նյութեր տպագրում, առավել սակավ են պարտկազմակերպությունների գործունեության թերությունները բացահայտող հոդվածներն ու թղթակցությունները։ Բայց տպագրված քննադատական նյութերի մեծ մասն էլ մնում է անհետևանք, խմբագրությունը չի հետևում դրանց բախտին, չի ապահովում իր ելույթների ներգործությունը։ Օրինակ, տպագրվել է «Պահանջկոտության բացակայության հետևանքով» թղթակցությունը։ «Արշալույս գյուղի կոլտնտեսության վիճակը նորից սկսել է հուզել մարդկանց»,— ազդարարում է թերթը. այստեղ դանդաղում են գարնան դաշտային աշխատանքները, ֆերմայում անցյալ տարվա համեմատությամբ իջել է կովերի կաթնատվությունը, կոլտնտեսության վարչության նախագահ Ն. Դանիելյանը անբավարար է աշխատում, իսկ պարտկազմակերպությունն էլ պահանջկոտ չէ։ Ընթերցողը բնականաբար ուզում է իմանալ, թե ի՞նչ հետևանք ունեցավ հիշյալ թղթակցությունը, որքանո՞վ նա օգնեց գործին։ Բայց թերթը հետագայում այդ մասին ոչինչ չի հաղորդում։ Նույն բախտին է արժանացել Արբաթի կոլտնտեսության պարտկազմակերպության վերաբերյալ տպագրված «Աշխուժացնել ագիտատորների գործունեությունը» թղթակցությունը և այլն։

Թերթը պետք է հետևի իր ելույթներին, հասնի այն բանին, որ դրանք համապատասխան կազմակերպությունների կողմից անհետևանք չթողնվեն, այլ գործնական միջոցառումներ մշակվեն թերթի բարձրացրած հարցերը լուծելու, նշած թերությունները վերացնելու համար։ Դրանում է մեր մամուլի ուժը։

Շրջանային շատ թերթերում պարտիական կազմակերպությունների բազմաբովանդակ կյանքը սովորաբար լուսաբանվում է հոդվածների, թղթակցությունների և ինֆորմացիաների միջոցով։ Կարելի է և անհրաժեշտ է օգտագոր-

ծել նաև ակնարկը, պատմվածքը, զրույցը և այլն: Լրագրային ժանրերի բազմազանությունը թերթի պարտիական կյանք բաժինը կդարձնի հետաքրքիր, աշխույժ գրավիչ ու ընթեռնելի:

Դեռևս խիստ նեղ է թերթերի հեղինակային ակտիվը: Լրագրային էջերում քիչ են հանդես գալիս պարտշրջկոմի քարտուղարները, բաժինների վարիչները, հրահանգիչները, պարտիական ակտիվը: Մինչդեռ նրանց ելույթները ընթերցողին հնարավորություն են տալիս ավելի խոր կերպով, ավելի հստակորեն պատկերացնելու այն խնդիրները, որ դրված են շրջանի, տվյալ հիմնարկի, կոլտնտեսության և ձեռնարկության առջև, օգնում են՝ ըմբռնելու տվյալ տեղամասում իր կատարած աշխատանքի համապետական նշանակությունը:

Խմբագրությունները կարող են թերթերի էջերում պարբերաբար ունենալ «Պատասխանում ենք կոմունիստների հարցերին», «Նամակներ սկզբնական պարտկազմակերպություններից», «Պարտիական աշխատանքի փորձից», «Կոմունիստի տրիբունա», «Կոմունիստների քննադատական դիտողությունների հետքերով» և ուրիշ վերտառություններ, բայց առայժմ ձեռնպահ են մնում: Ինչո՞ւ: Որովհետև առանձին խմբագրությունները թույլ են կապված սկզբնական պարտկազմակերպությունների, պարտիական ակտիվի, շարքային կոմունիստների հետ, չեն կարողանում նրանց ակտիվորեն ներգրավել թերթի ստեղծման աշխատանքում:

Խիստ մակերեսային են պարտիական թեմաներով թերթերում տպագրված առաջնորդողները: ՌԿԿ(բ) Կենտկոմի «Տեղական թերթերի պլանի մասին» 1922 թվականի նամակում ասված է. «Առաջնորդողը և ենթաառաջնորդողը ոչ թե խոսակցություններ և դատողություններ են, այլ քաղաքական ցուցմունք, դիրեկտիվ»: Թերթի առաջնորդողի այդ բնորոշումը պարտիական ու սովետական մամուլի բազմամյա փորձի, հարուստ պրակտիկայի ընդհանրացումն է և մեր օրերում չի կորցրել իր նշանակությունը: Այնինչ շրջանային շատ թերթերում պարտիական թեմաներով տպագրված առաջնորդողների զգալի մասը չի բավարարում այդ պահանջը:

Շրջանային ու քաղաքային թերթերի կողմից պարտիական կյանքի լուսաբանումը նրանց առաջնահերթ պարտականությունն է: Դա կօգնի պարտկազմակերպություններին բարելավելու իրենց աշխատանքը, ապահովելու պարտիայի ու կառավարության առջև դրված խնդիրների հաջող լուծումը:

Ա. ԳԱՍՊԱՐՅԱՆ

---

Խմբագրության հասցեն՝
Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք
Հեռ. 2—03—18, 2—56—92, 2—04—66.
Адрес редакции: Ереван, здание
ЦК КП Армении. тел. 2—03—18,
2—56—92, 2—04—66.



ՎՖ 06652 Պատվեր 2107 Տիրաժ 6500

Տպ. 8 մամուլ, մամուլում 63.840 նիշ: Ստորագրված է տպագրության 21/VIII 1958 թ.:

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Գլխհրատի № 6 տպարան, Երևան, Լենինի պող. № 51: